ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

11

ՆՈՅԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ • 1964

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

11 ՆՈՅԵՄԲԵՐ · 1964
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 43-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«Ленинян угиов» теоретический и политический журнал ЦК КП Армении**

## Բովանդակություն

Содержание





# ԱՇԽԱՐՀԱՇԵՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Կոմունիզմի դարավոր գաղափարները, որոնք իրենց իրականացումը գտան Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի բոցերում, այժմ թևածում են ամբողջ աշխարհում, անհաղթահարելի ուժով տոգորում աշխատավոր մարդկանց սրտերը: Կոմունիզմի՝ որպես գաղափարախոսության, անպարտելի ուժը հարկադրված խոստովանում են ժամանակակից կապիտալիզմի շատ ականավոր գաղափարախոսները:

Ինչպես ամեն բան աշխարհում, նույնպես և գաղափարների կենսունակությունն ապացուցվում և հաստատվում է կյանքի անաչառ քննությամբ: Պատմության ընթացքում ծնվել և անէացել են բազմաթիվ թեորիաներ ու գաղափարներ, առաջացել են գաղափարական նոր հոսանքներ, որոնք, սակայն, երկարատև կյանք չեն ունեցել կամ եղել են շատ վաղանցուկ: Պատմության քառուղիներում շատ տեսաբանների մտահղացումները մնացել են որպես փոշեծածկ իմաստություններ, որովհետև դրանք չեն արտահայտել մարդկության կենսատեղծ մեծամասնության՝ աշխատավորության խոհերն ու ցանկությունները, չեն նպատակամղվել նրա գերագույն շահերին:

Սակայն բոլոր գաղափարախոսություններից, որ երբևիցե իմացել է մարդկությունը, միայն մարքսիզմ-լենինիզմն է, որ ճշտորեն արտացոլում է աշխատանքի մարդկանց ձգտումներն ու երազանքները. նրանց խոհերն ու տենչերը: Ահա թե ինչու այն կապրի այնքան ժամանակ, որքան կապրի մարդկությունը, որովհետև այն խորապես մարդկային է, ճշմարիտ և արդարացի: Ամբողջ աշխարհի աշխատավոր մասսաների գաղափարական դրոշն է այն: Դրա մեջ է նրա ուժը, նրա անմահությունը:

Քառասունյոթ տարիներ են անցել Հոկտեմբերյան օրերից: Ընդամենը 47 տարի առաջ Վ. Ի. Լենինն ի լուր ամբողջ աշխարհի ազդարարեց սոցիալիստական հասարակարգի սկիզբը, հասարակարգ, որին վիճակված է դառնալու համընդհանուր, համամարդկային սոցիալական ֆորմացիա:

Հիրավի, ո՞վ չի հիշում սոցիալիզմի հակառակորդների «մարգարեական» կոնչոցները սովետական իշխանության մոտալուտ կործանման մասին դեռևս ռևոլյուցիայի առաջին տարիներին: Ինչե՞ր չարին ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերը՝ կապիտալիստական աշխարհի օգնությամբ, երիտասարդ սովետական ռեսպուբլիկան տապալելու համար: Ջո՞ւր ջանքեր: Միջազգային իմպերիալիզմի, ներքին հակառևոլյուցիայի, տնտեսական քայքայման և անարխիայի դեմ մղվող երկարամյա մարտերում անդառնալիորեն հաղթանակեց սովետական կարգը:

Կարճ ժամանակամիջոցում մեր երկրում կառուցվեց նոր հասարակարգ, որը բռնեց իր լրջագույն քննությունը Հայրենական պատերազմի ահեղ տարիներին, պարտության մատնելով ֆաշիզմին: Միջազգային այդ պատմական հաղթանակի

շնորհիվ ստեղծվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, որն արմատապես վերափոխեց երկրագնդի սոցիալական, քաղաքական և տնտեսական քարտեզը, դարձավ մեր դարաշրջանի բնույթը որոշող հիմնական գործոնը:

ՍՍՌՄ-ի և սոցիալիստական համագործակցության մյուս երկրների տնտեսական ու ռազմական հզորության աճը չէին կարող բախտորոշ փոփոխություններ չմտցնել իմպերիալիզմի և գաղութային երկրների ժողովուրդների փոխհարաբերություններում: Եվ ահա 10—15 տարիների ընթացքում ճարճատյունով փլուզվեց գաղութատիրության ամենաանարդարացի, ամենառճրագործ սիստեմը: Փշրվեցին ստրկության շղթաները, որոնք կքել և կապկպել էին Ասիայի ու Աֆրիկայի բազմաթիվ ժողովուրդներին:

Սոցիալիստական ռևոլյուցիան մեր երկրում բոլորում է ոչ լրիվ կես դար: Պատմության համար կարճ ժամանակ է դա. բայց քաղաքական իրադարձություններով այնքա՜ն հարուստ, պատմական նշանակությամբ այնքա՜ն խոստումնալի մարդկային տարեգրության ծիածանող մի ամբողջ դարաշրջան է դա:

Յուրաքանչյուր սոցիալ-քաղաքական սիստեմի կենսունակության հիմնական ցուցանիշը տնտեսության զարգացման թափն է, նրա տեմպերը: Կենսունակը, պրոգրեսիվը և հարատևողն այն սիստեմն է, որն ունակ է կարճ ժամանակամիջոցում հասարակության համար ավելի շատ բարիքներ և հարստություններ ստեղծելու, ապահովելու ժողովրդի նյութական ու հոգևոր ուժերի մաքսիմալ ծաղկումը:

Լինելով ակտիվ քաղաքական գործողության մեծ ստրատեգ, քաղաքականությունը դիտելով որպես էկոնոմիկայի խտացված արտահայտություն, Վ. Ի. Լենինը նոր հասարակարգի հաղթանակի գրավականը համարում էր տնտեսական բնույթի խնդիրների հաջող լուծումը: Նա հիշեցնում էր, որ իմպերիալիզմին չի կարելի վախեցնել, առավել ևս կործանել բարձրագոչ «ռևոլյուցիոն» ֆրազներով: Այստեղ պետք են պրակտիկ արդյունքներ, առաջին հերթին՝ էկոնոմիկայի բնագավառում: Իսկ այդպիսի արդյունքների հասնելն անհնար է առանց աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման, աշխատանքային պրոցեսի կազմակերպման անընդհատ կատարելագործման և ամբողջ հասարակական կյանքի գիտական ղեկավարման:

Մեր պարտիան, սովետական կառավարությունը, իրենց ուշադրությունը կենտրոնացնելով կոմունիստական շինարարության տնտեսական խնդիրների լուծման վրա, ելնում են այն բանից, որ կոմունիստական հարաբերությունների, սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի զարգացման, նոր մարդու ձևավորման, ժողովրդի բարեկեցության աճման համար անհրաժեշտ է արտադրողական ուժերի բուռն վերելք:

Մեր երկրի տնտեսական ու կուլտուրական առաջադիմությունը, ժողովրդի բարեկեցության աճը, մի կողմից՝ բազմապատկում են սոցիալիզմի օրինակի ուժը, նոր հարյուր-միլիոնավոր մարդկանց համոզում, որ ապագայի առաջընթացի, զարգացման միակ ճիշտ ուղին մարքսիզմ-լենինիզմի նշածն է, մյուս կողմից՝ ավելի են ամրապնդում իմպերիալիստական, ագրեսիվ ուժերի սանձահարման և ամբողջ աշխարհում կայուն խաղաղության պահպանման ռեալ հիմքը՝ սոցիալիստական պետությունների պաշտպանական հզորությունը:

Այսպիսին է տնտեսական ֆակտորների դերի գնահատման մեր պարտիայի ու կառավարության լենինյան դիրքորոշումը, որն արժանանում է սովետական



ժողովրդի ամենաջերմ հավանությանն ու աջակցությանը: Այն իր վառ արտահայտությունն է գտնում սովետական ժողովրդի աշխատանքային մաքառումների, սոցիալիստական մրցության հարաճուն վերելքի, կոմունիստական աշխատանքի շարժման մեջ:

Մեր փառապանծ բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունն ու աշխատավոր ինտելիգենցիան ամե՛ն օր, ամե՛ն ժամ ձգտում են նոր հայրենասիրական գործերով բազմապատկել սովետական հայրենիքի հարստությունը, նրա փառքն ու հզորությունը: Սովետական մարդկանց աշխատանքային սխրանքների մասին բերկրալի լուրեր ստացվեցին Մեծ Հոկտեմբերի 47-րդ տարեդարձին նախորդած օրերին: Արդյունաբերության աշխատողները, պայքարելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 47-րդ տարեդարձը արժանավայել դիմավորելու համար, գերակատարել են 1964 թվականի երրորդ եռամսյակի և ինն ամսվա պլանները: Ինն ամսում, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքն աճել է ավելի քան 7 տոկոսով: Սա նշանակում է, որ սովետական միլիոնավոր մարդիկ մեծ ավյունով իրագործում են ՍՄԿՊ ծրագրի հոյակապ կանխագծումները:

Նախահոկտեմբերյան օրերին մեր անծայրածիր երկրում ոգևորության նոր ալիք առաջացրին ՍՄԿՊ Կենտկոմի կոչերը Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 47-րդ տարեդարձի առթիվ: Պարտիան մեկ անգամ ևս սովետական մարդկանց նպատակամղում է հաստատակամորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, պայքարել արտադրանքի որակի բարձրացման և ինքնարժեքի իջեցման, նյութական ռեսուրսների խնայողության համար: Արդյունաբերության, շինարարության ու տրանսպորտի աշխատողների խնդիրն է արդյունավետ իրագործել կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, ավելի համարձակ արմատավորել գիտության, տեխնիկայի նվաճումներն ու առաջավոր փորձը, ավելի ռացիոնալ օգտագործել արտադրական կարողությունները:

Մեր երկրի շատ շրջաններում գյուղի աշխատավորներն այս տարի լավ բերք աճեցրին և պատվով կատարեցին սոցիալիստական պարտավորությունները: Սակայն դրանով չպետք է գոհանալ: Դիմելով կոլտնտեսությունների և սովխոզների աշխատողներին՝ պարտիան կոչ է անում ավելի հետևողականորեն պայքարել գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման, ինքնարժեքի իջեցման, հողի յուրաքանչյուր հեկտարից առավելագույն չափով մթերքներ ստանալու համար: Ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ՝ այս են պահանջում մեր երկրի կենսական շահերը:

Բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության հետ ձեռք-ձեռքի տված, կոմունիզմի կառուցման գործում պատվավոր ավանդ են ներդնում նաև մեր ինտելիգենցիան, կուլտուրայի ու գիտության գործիչները: Վերջերս ողջ մարդկությունն ականատես եղավ մեր գիտական մտքի ու տեխնիկական առաջադիմության մի նոր, փայլուն հաղթանակին: Սովետական նոր հզոր հրթիռը աշխարհում առաջին անգամ տիեզերք դուրս բերեց բազմատեղ նավ, որի մեջ գործում էր սովետական մարդկանց մի համերաշխ կոլեկտիվ:

— Փա՜ռք հիանալի տիեզերանավեր ստեղծած սովետական գիտնականներին, կոնստրուկտորներին, ինժեներներին, տեխնիկներին ու բանվորներին:

— Փա՜ռք սովետական քաջարի տիեզերագնացներին:

Մեր նվաճումները տիեզերքում և երկրի վրա ցայտուն վկայությունն են այն

բանի, թե ինչի է ընդունակ սոցիալական ստրկության շղթաներից ազատագրված նոր մարդը, կոմունիզմ կառուցող մարդը:

Դեռևս 47 տարի առաջ, Վ. Ի. Լենինը կանխատեսում էր, որ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի վառած սոցիալիզմի ջահը ապագան լուսավորող անմար փարոս կդառնա աշխարհի բոլոր ժողովուրդների համար, իսկ միջազգային բանվոր դասակարգի կապիտալիզմի դեմ մղվող ճակատամարտերում նորանոր հաղթանակներ կտանի: Այսօր արդեն ոչ թե բուրժուազիան, այլ միջազգային բանվոր դասակարգը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմն են որոշում արդի դարաշրջանի պատմական զարգացման գլխավոր ուղղությունը:

ՍՄԿՊ-ն և սովետական ժողովուրդն իրենց առաջնակարգ խնդիրն են համարում էլ ավելի ընդլայնել ու ամրապնդել սոցիալիզմի և կոմունիզմի ուղիով ընթացող իրավահավասար և սուվերեն երկրների մեծ համագործակցությունը՝ միջազգային բանվոր դասակարգի գլխավոր նվաճումը:

Ինչպես միշտ, Սովետական Միությունն իր ինտերնացիոնալ պարտքն է համարում պաշտպանել ժողովուրդների արդարացի պայքարն ընդդեմ իմպերիալիզմի, գաղութատիրության և նեոգաղութատիրության, հանուն սոցիալական ու ազգային լիակատար ազատագրության: Ահա թե ինչու Սովետական Միությունն այսուհետև ևս կամրապնդի բարեկամությունն ու համագործակցությունը Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի սուվերեն երկրների հետ:

Արտաքին քաղաքականության հիմքում դնելով սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը, մեր պարտիան իր պարտքն է համարում անհրաժեշտ ամեն բան անել՝ ապահովելու ժողովրդի խաղաղ աշխատանքը, կանխելու համաշխարհային ջերմամիջուկային պատերազմը, վարելու միջազգային վիճելի հարցերը բանակցությունների միջոցով լուծելու կուրս, բարելավելու և զարգացնելու հարաբերությունները բոլոր երկրների հետ, ամրապնդելու միջազգային համագործակցությունն էկոնոմիկայի, գիտության և տեխնիկայի բնագավառներում:

Կոմունիստական շարժման անխորտակելի ուժը նրա շարքերի կուռ միասնության մեջ է: Սովետական Միության կոմունիստական պարտիան ամենայն հաստատակամությամբ պայքարում է՝ ամրապնդելու միջազգային կոմունիստական և բանվորական շարժման միասնությունն ու համախմբվածությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի, մարքս-լենինյան սկզբունքների, Մոսկվայի խորհրդակցությունների դեկլարացիայի և հայտարարության հիման վրա:

Մեր սոցիալիստական հասարակարգի աշխարհաշեն հաղթանակները, արտաքին ու ներքին նվաճումները սովետական ժողովրդի հերոսական աշխատանքի, ռևոլյուցիոն տեսությամբ ու հասարակական օրենքների իմացությամբ զինված պարտիայի վիթխարի գործունեության արգասիքն են:

Սովետական ժողովուրդն ազավինում է հարազատ պարտիայի իմաստությանը, պարտիան խորապես հավատում է ժողովրդի ստեղծագործական հզոր ուժերին, արտահայտում նրա արմատական շահերը և նրան ծառայելը համարում է իր նպատակը: Պարտիան հզոր է մարքսիզմ-լենինիզմի նկատմամբ անսասան հավատով, մասսաների հետ անխորտակելի կապերով և իր շարքերի միաձույլ համախմբվածությամբ: Ահա թե ինչու ՍՄԿՊ-ն անհաշտորեն ու հետևողականորեն հանդես է եկել ու հանդես է գալիս մարքսիզմ-լենինիզմին, մեր սոցիալիստական հասարակարգի էությանը խորթ՝ անհատի պաշտամունքի գաղափարախոսության ու պրակտիկայի դեմ: Միայն ղեկավարության կոլեկտիվության, բազում տասնամյակների փորձով ստուգված ու հարստացած պարտիական ու պետական ղեկավարման լենինյան սկզբունքներով կարելի է զարգացնել պարտիայի ու ամբողջ ժողովրդի ստեղծագործական աճող նախաձեռնությունը:



Հոկտեմբերի ամենամեծ նվաճումներից մեկը սովետական բազմազգ ժողովուրդների անխախտ եղբայրության դարբնումն է: Տարբեր լեզուների, սոցիալական զարգացման տարբեր աստիճանների վրա գտնվող բազմացեղ ազգերն ու ազգությունները, Սովետական Միության կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության իրականացման շնորհիվ, միավորվեցին միաձույլ, համերաշխ մի ընտանիքում, որի նշանաբանն է՝ եղբայրություն և փոխադարձ օգնություն: Ռուսն ու հայը, ուկրաինացին ու ուզբեկը, վրացին ու ղազախը, ադրբեջանցին ու բելոռուսը, Սովետական Միության բոլոր ժողովուրդներն ապրում են միևնույն նպատակով ու գործերով, ոգեշնչված են միևնույն ամենահաղթ գաղափարներով: Այդ մեծ ընտանիքում հավասարապես ազատ ու երջանիկ են բոլորը:

Սովետական ժողովուրդների փայլուն համաստեղության մեջ, 1920 թվականի նոյեմբերի 29-ից իր արժանի տեղն է գրավել հայ ժողովուրդը: Պատմության մութ և ահավոր քառուղիներից նա Հոկտեմբերին հասավ իր գոյության օրհասական օրերին և սովետական իշխանության նվիրական դրոշի ներքո գտավ իր վերածնունդն ու երջանկությունը: Հետամնաց, ծայրահեղորեն քայքայված տնտեսությամբ, խավարի, աղքատության ու սովի, կոտորածների ու համաճարակների Հայաստանը պատմական կարճ ժամանակամիջոցում վերածվեց բարձր զարգացած, ժամանակակից արդյունաբերության, սոցիալիստական գյուղատնտեսության, առաջավոր գիտության ու կուլտուրայի, համատարած գրագիտության ռեսպուբլիկայի: Վեր խոյացան տուֆաշեն հոյակապ քաղաքները, ստորերկրյա հյուղակներից ելան ու հայկական բազմերանգ քարերի ներդաշնակ գույների աշխուժությամբ ժպտացին գյուղերը:

Իլյիչի լամպերը լուսավորեցին ամեն մի տուն, քաղաք ու գյուղ: Լեռնաշխարհը պատվեց դպրոցների, տեխնիկումների ու բուհերի ցանցով: Ասֆալտապատ ճանապարհներն արծաթափայլ գոտիների նման տարածվեցին քաղաքից քաղաք, գյուղից գյուղ: Երջանիկ մանուկների, խայտացող պատանեկության ծիծաղն ու երգը թնդաց հայոց կիրճերում ու լեռներում, դաշտավայրերում ու սարահարթերում:

Դեպի սովետական Հայաստան ձգվեցին տարագիր հայերի քարավանները:

Հայ ժողովուրդը մեր մեծ, սոցիալիստական հայրենիքի եղբայրական մյուս ժողովուրդների հետ ուս-ուսի կառուցում է նոր կյանք, որի դրոշին գրված է՝ **Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն ու Երջանկություն:**

Ինչպես յուրաքանչյուր պատմական տարելից, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի տարեդարձն ամենից առաջ անցած ուղու հանրագումարն է: Եվ այսօր, 47 տարիների բարձունքից սովետական ժողովուրդը հպարտությամբ է նայում անցած ճամփաներին: Նա նայում է իր անցած դժվարին ուղուն, որպես հաղթանակած զինվոր, որպես վաստակած աշխատավոր, որպես իր բարձրացրած շենքի մոտ կանգնած, իր իսկ ստեղծածով հափշտակված ճարտարապետ: Բայց գոհունակության ժպիտը, որ խաղում է նրա աչքերում, ինքնագոհ մարդու ժպիտ չէ, քանի որ պարտիան սովորեցնում է՝ ճիշտ վերլուծել

իրադրությունը, օբյեկտիվորեն, առանց գոռոզանալու գնահատել ձեռք բերած հաջողությունները, տեսնել թերությունները, ժամանակին վերացնել դրանք: Եվ ահա այսօր սովետական ժողովուրդը նվաճած բարձունքներից նայում է ապագային, իր հոգու, գործերի ու նպատակների կրակով գալիքը աշխարհի բոլոր մարդկանց համար արևաշող դարձնելու հաստատակամությամբ ու վճռականությամբ: Նա նայում է գալիքին հավատով ու լավատեսորեն, իր ուժերի վրա վստահ մարդու հավատով: Աշխարհում ոչ մի ուժ չի կարող սասանել մասսաների հավատն այն մեծ գործի նկատմամբ, որը վարում է ՍՄԿԿ-ն՝ իր առնական ձեռքում պահելով Հոկտեմբերի ալեծուփ ու հաղթական դրոշը:

Առաջին անգամը չէ, որ ՍՍՌՄ ժողովուրդներն առիթ են ունենում մարդկության առջև հանրագումարի բերելու իրենց պատմական վիթխարի նվաճումները, որոնք ամենից առաջ լենինիզմի մեծ գաղափարների մարմնացումն են, նրանց կենսունակության անհերքելի ապացույցը:

Ամբողջ աշխարհի առաջավոր մարդկությունը հիացմունքով է հետևում ՍՍՌՄ ժողովուրդների՝ դեպի կոմունիզմ ընթացող հաղթական երթին, մի երթ, որի ուղիները ճշգրտորեն մշակվեցին ու հաստատվեցին ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարների կողմից ընդունված որոշումներում և պարտիայի ծրագրում, ծրագիր, որի հաջող կենսագործումը պահանջում է մեր ամբողջ ժողովրդի անդուլ և ստեղծագործ աշխատանքը նոր տեխնիկայի և առաջավոր գիտության հիմքերի վրա: Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի հաջող կառուցումը մի անգամ ևս կապացուցի լենինիզմի վեհ գաղափարների աշխարհաշեն նշանակությունը:

Փա՜ռք մեծ Հոկտեմբերին, մարդկության պատմության մեջ նոր՝ կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաստատման դարագլուխ բացող ռևոլյուցիային:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ԿԵՆՍԱԿԱՆ ՀԱՐՑԵՐ

*Սոցիալիստական արտադրության առաջացումից դեռ շատ առաջ մարքսիզմի կլասիկները կապիտալիզմի տնտեսական օրենքների բազմակողմանի ուսումնասիրությունից հանգել էին այն եզրակացության, թե անխուսափելի է անցումը կապիտալիզմից սոցիալիզմին ու կանխատեսել արտադրության նպատակը սոցիալիզմի ժամանակ: Նրանք նշել էին, որ սոցիալիզմի ժամանակ մարդկանց արտադրական գործունեությունը ուղղված կլինի հասարակության բոլոր անդամների պահանջմունքների բավարարմանը:*

*Արտադրության միջոցների սոցիալիստական հանրայնացմամբ փոխվեց արտադրության նպատակը. կապիտալիստական շահույթի տեղը գրավեց սոցիալիստական արտադրության նպատակը՝ հասարակության բոլոր անդամների պահանջմունքների բավարարումը: Անհետացան ձեռնարկությունների ու ժողովրդական տնտեսության ճյուղերի միջև տարերային կապերը և նրանց միջև սահմանվեցին նոր, պլանային կապեր: Վերացավ կապիտալիզմին հատուկ արտադրության անարխիայի և կոնկուրենցիայի օրենքը և դրան հակակշիռ առաջացավ պլանաչափ, համամասնական զարգացման օրենքը, որի գիտակցական օգտագործումը սոցիալիստական հասարակությունում իր արտահայտությունն է գտնում ժողովրդական տնտեսության պետական պլանավորման մեջ:*

*Սոցիալիստական շինարարության փորձը ՍՍՌՄ-ում և սոցիալիզմի լագերի մյուս երկրներում ցույց է տալիս, որ պլանաչափ զարգացման օրենքը և պլանավորման ոլորտները գնալով ավելի ու ավելի են լայնանում, որ ժողովրդատնտեսական պլանները դառնում են խոշոր ուժ՝ արտացոլելով միլիոնավոր մարդկանց ակտիվ, ստեղծագործական մասնակցությունը տնտեսական շինարարության մեջ. պլաններն արտացոլում են միլիոնավոր աշխատավորների նպատակի և կամքի միասնությունը կոմունիզմի կառուցման մեծ գործում:*

*Սոցիալիստական տնտեսության զարգացման շահերը թելադրում են սահմանել այնպիսի պլանաչափ համամասնություններ, որոնց կիրառմամբ բավարարվեն հասարակության բոլոր անդամների պահանջմունքները: Արտադրամիջոցների հանրայնացմամբ հասարակությունը հնարավորություն ստացավ տնտեսական զարգացման օրենքները գիտակցաբար օգտագործելու հասարակության շահերի համար:*

*Որո՞նք են, սակայն, այդ օրենքի պահանջները:*

Պլանաչափ զարգացման օրենքը նախ պահանջում է, որ սիստեմատիկաբար ու անընդմեջ ուսումնասիրվեն հասարակության արտադրական և անձնական սպառման պահանջմունքները և անմիջական կապ ստեղծվի դրանց ու հասարակության արտադրածավալի միջև։ Այդ օրենքը պահանջում է, որ հասարակական արտադրության տարբեր ճյուղերի ու բնագավառների միջև պահպանվի պլանաչափություն։ Այդ օրենքը հնարավորություն տալով պլանավորելու ժողովրդական տնտեսությունը, ապահովում է նաև սոցիալիստական արտադրության անընդհատ և բարձր տեմպերով զարգացումը։

Ժողովրդական տնտեսությունը պլանավորելիս և նրա համամասնությունները սահմանելիս, սովետական պետությունն իր առջև խնդիր է դնում կազմել և իրականացնել այնպիսի պլան, որն հնարավորություն տա բավարարելու տնտեսական զարգացման հասունացած պահանջները։

Այսպիսով, յուրաքանչյուր պլան նախ և առաջ պետք է հետապնդի որոշակի նպատակ։ ՍՍՌՄ աշխատավորների վերջնանպատակը մարմնացած է մեր պարտիայի ծրագրում։ Ինչ վերաբերում է այս կամ այն ժամկետի համար մշակված պլանին, ապա նրանում կոնկրետացվում է ընդհանուր նպատակը որպես այդ պլանի քաղաքական ու տնտեսական դիրքորոշում։

Իր տնտեսական քաղաքականությունը մշակելիս, կոմունիստական պարտիան հաշվի է առնում ոչ միայն երկրի էկոնոմիկայի, այլև միջազգային իրավիճակը, առհասարակ գործի բազմակողմանի իմացությամբ սահմանում է տնտեսական զարգացման ընդհանուր ուղղությունը։ Սովետական պետությունն ի դեմս իր պլանային օրգանների, սահմանում է տնտեսության բոլոր ճյուղերի անհրաժեշտ համամասնությունները, որով և ապահովում պրոպորցիոնալ զարգացման օրենքի գործողությունը կյանքում։

Մեր ասածներից հետևում է, որ պլանավորումն այն կարևոր միջոցն է, որի օգնությամբ կենսագործվում են պլանաչափ զարգացման օրենքի պահանջները։

Նշանակո՞ւմ է արդյոք որ պլանաչափ զարգացման օրենքը և պլանավորումը նույնանում են, եթե ո՛չ, ապա ինչպիսի՞ փոխադարձ կապեր գոյություն ունեն պլանների, որպես միլիոնավոր մարդկանց կամքի, և պլանաչափ զարգացման օբյեկտիվ տնտեսական օրենքի միջև։ Անկասկած, պլանի ու պլանավորման միջև, մի կողմից, ու պլանաչափ զարգացման օրենքի միջև, մյուս կողմից, գոյություն ունի տարբերություն, թեկուզ այն հասարակ պատճառով, որ տնտեսական օրենքներն արտացոլում են տնտեսական զարգացման օբյեկտիվ պրոցեսները, որոնք անկախ են մարդկանց կամքից, մինչդեռ պլանավորումը դա մարդկանց գործունեությունն է, իսկ պլանը որպես պլանավորման արգասիք, արտացոլում է մարդկանց կամքն ու ցանկությունը։

Տնտեսական օրենքը և պլանավորումը նույնություն չլինելով հանդերձ, գտնվում են փոխադարձ կապի ու պայմանավորվածության մեջ։ Բանն այն է, որ մարդիկ իրենց պրակտիկ գործունեության ընթացքում չեն կարող հաշվի չառնել օբյեկտիվ տնտեսական օրենքները, առավել ևս տնտեսական զարգացման պլանները մշակելիս։ Չպետք է մոռանալ, որ մարդկային կամքը իրականությունից անկախ չէ և ոչ էլ «ազատ»։ Մարդիկ ազատ են այն դեպքում, երբ իրենց գործունեության ժամանակ հենվում են զարգացման օբյեկտիվ օրենքների վրա և գործում դրանց համապատասխան։ «Ազատությունը ոչ թե երևակայական անկախությունն է բնության օրենքներից, այլ այդ օրենքների իմացությունը և դրա վրա հիմնված հնարավորությունը պլանաչափ կերպով բնու-



թյան օրենքներին հարկադրելու, որ գործեն որոշ նպատակների համար։ Սա վերաբերում է ինչպես արտաքին բնության օրենքներին, այնպես էլ այն օրենքներին, որոնք կառավարում են իր իսկ՝ մարդու մարմնական ու հոգեկան կեցությունը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 14, էջ 243)։

Սոցիալիզմի տնտեսական օրենքների օգտագործումը դրանց հասարակ, ավտոմատ ու շաբլոն կիրառումը չէ. դա միլիոնավոր մարդկանց գիտակցական գործունեությունն է, որը ղեկավարում է կոմունիստական պարտիան։

Պլանավորումը կոչված է ապահովելու ընդլայնված վերարտադրության բարձր տեմպերի տնտեսական քաղաքականության կուրսը։ Էկոնոմիկայի աճման անհրաժեշտ ուղղությունը և ամբողջապես վերցրած ժողովրդական տնտեսության համամասնական զարգացումը։

Կոմունիստական պարտիայի տնտեսական քաղաքականության մեջ արտացոլվում է սոցիալիզմի տնտեսական օրենքների գիտակցաբար օգտագործումը։

Ժողովրդական տնտեսության պլանավորման համար անհրաժեշտ է նաև օգտագործել ոչ միայն սոցիալիզմին ներհատուկ տնտեսական օրենքներն ու կատեգորիաները, այլև այնպիսիք, որոնք ընդհանուր են հասարակական տարբեր ֆորմացիաներին։ Վերարտադրության մարքսյան թեորիայի մի քանի ընդհանուր դրույթները տեսական հիմք են ծառայում սոցիալիստական պլանավորման համար, դրույթներ, որոնք իրենց հետագա զարգացումն ու կոնկրետացումն են գտել Վ. Ի. Լենինի երկերում և մեր երկրի պլանավորման փորձում։

Այսպես կոչված, եկամուտների բուրժուական տեսության սնանկությունն ակնհայտ դարձավ այն բանից հետո, երբ Մարքսը շարադրեց վերարտադրության իր հանճարեղ թեորիան։ Ի հակադրություն բուրժուական տնտեսագետների, որոնց աչքում հասարակական արտադրությունը երևում էր լոկ որպես սպառման առարկաների արտադրություն, Մարքսը հասարակական արտադրությունը ներկայացրեց որպես արտադրության միջոցների և սպառման առարկաների արտադրության միասնություն, միաժամանակ մատնանշելով դրանց փոխադարձ կապերն ու պայմանավորվածությունը։ Դրանից հետևում է, որ հասարակական արտադրությունը քննելիս չի կարելի խոսել արդյունքների մասին ընդհանրապես, անկախ նրանց բնույթից, որովհետև ո՛չ բոլոր արդյունքներն են, որ որպես սպառողական արժեք կարող են օգտագործվել անձնական սպառման համար, ինչպես և ո՛չ բոլոր արդյունքներն են, որ կարելի կլինի օգտագործել արտադրական սպառման համար։ Հետևապես, որպեսզի հասարակական արտադրությունն անընդմեջ լինի, անհրաժեշտ է, որ հասարակական աշխատանքի մի մասը ներդրվի արտադրամիջոցների, իսկ մյուսը՝ սպառման միջոցների արտադրության մեջ։ Այդ ստորաբաժանումների միջև պետք է կատարվի աշխատանքի արդյունքների փոխանակում, առանց որի անհնար է վերարտադրության պրոցեսը։

Վերարտադրության մարքսյան տեսության բանիմաց օգտագործումը սոցիալիստական պլանավորման մեջ, հնարավորություն կտա ճիշտ պլանավորել արտադրությունը, հասարակական տարեկան արդյունքի ծավալն ըստ նրա երկու ստորաբաժանումների։

Վերարտադրության մարքսյան տեսությունից բխում է մեկ ուրիշ կարևոր հետևություն ևս, որ ընդլայնված վերարտադրության դեպքում պետք է ապահովվի արտադրամիջոցների արտադրության առավել աճ։ Արտադրության միջոցների արտադրության առավել աճի օրենքն արտացոլում է հասարական

աշխատանքի արտադրողականության մշտական աճի օբյեկտիվ անհրաժեշտությունն ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով։

Կենդանի աշխատանքի աճող արդյունավետությունը թույլ է տալիս աշխատաժամանակի միևնույն միավորի ընթացքում վերամշակել աշխատանքի առարկաների ավելի մեծ մասսա, հետևապես արտադրել ավելի շատ արդյունք։ Այսպիսով, աշխատանքի արտադրողականության աճի շնորհիվ փոխվում է այն հարաբերակցությունը, որ կար արտադրամիջոցների մասսայի և դրանք շարժման մեջ դնող կենդանի աշխատանքի քանակի միջև՝ հօգուտ առաջինի։

Ընդլայնված վերարտադրության ժամանակ արտադրամիջոցների արտադրության առավել աճը Վ. Ի. Լենինը համարեց տնտեսական օրենք, որի ծավալուն բնորոշումը տվեց իր «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում» հռչակավոր աշխատության մեջ։

Սոցիալիստական պլանավորման համար որպես մեթոդոլոգիայի հիմք կարևոր նշանակություն ունի Վ. Ի. Լենինի կողմից արտադրամիջոցներ արտադրող ստորաբաժանումը երկու մասի տրոհելը՝ արտադրամիջոցներ՝ սեփական վերարտադրման համար և արտադրամիջոցներ՝ սպառման առարկաներ արտադրելու համար։ Վերլուծելով և համեմատելով միմյանց հետ հասարակական արտադրության տարբեր մասերը, Վ. Ի. Լենինը բացահայտեց հետևյալ օրինաչափությունը։ Ամենից արագ աճում է արտադրամիջոցների արտադրությունը սեփական վերարտադրման համար և ապա՝ արտադրամիջոցների արտադրությունը սպառման առարկաների արտադրության համար և դրանից դանդաղ՝ սպառման առարկաների արտադրությունը։

Մարքսի և ապա Վ. Ի. Լենինի կողմից հայտնաբերած մեքենայական արտադրության պայմաններում իրականացվող ընդլայնված վերարտադրության օրինաչափությունների կիրառումը սոցիալիստական պլանավորման մեջ հնարավորություն են տալիս, որ հասարակական ամբողջական արդյունքի տարբեր բաղադրամասերի միջև պահպանվեն հետևյալ համամասնությունները։

1. Ամբողջ արտադրության ընդլայնված վերարտադրությունն ու աճը ապահովելու համար անհրաժեշտ է, որ առաջին ստորաբաժանման մեջ ստեղծված նոր արժեքն իր մեծությամբ անպայման գերազանցի երկրորդ ստորաբաժանման արտադրամիջոցների արժեքը։

2. Երկու ստորաբաժանումներում ստեղծված նոր արժեքը (ազգային եկամուտը) պետք է գերազանցի երկրորդ ստորաբաժանման ամբողջ արդյունքի արժեքը, ընդ որում այդ տարբերությունն իր բնաձևով պետք է լինի գերազանցապես արտադրության միջոցներ և մասամբ գոյամիջոցներ՝ ծածկելու համար աշխատավորների լրացուցիչ պահանջարկը։

3. Որպեսզի ընդլայնված վերարտադրությունն իրականանա բարձր տեխնիկայի բազայի վրա, անհրաժեշտ է, որ առաջին ստորաբաժանման տարեկան արտադրանքը նախ գերազանցի երկու ստորաբաժանումներում սպառված արտադրամիջոցների արժեքից և ապա՝ այդ տարբերությունը բնեղեն ձևով ներկայացնի ոչ միայն քանակական աճն այն արտադրամիջոցների, որոնք գործադրվել են տվյալ տարում, այլև որակապես լինի արտադրամիջոցների նոր նմուշահատեր, որպես տեխնիկական առաջադիմության արդյունք։ Բավական չէ, որ առաջին ստորաբաժանման տարեկան արտադրանքը գերազանցի երկու ստորաբաժանումներում կիրառված արտադրամիջոցների արժեքից, որ կնշանակի առաջին ստորաբաժանման առավել աճի ապահովում. խնդիրն այն է,



որ այդ աճն իրականանա մեքենաների նորագույն տիպերի ու տեսակների, նյութերի ու էներգիայի առավել նորագույն տեսակների գերազանց աճման բազայի վրա։ Այդ դեպքում միայն կստեղծվի ժողովրդական տնտեսության առաջադիմական կառուցվածք, որը կխթանի հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացմանն ու այդ հիման վրա՝ հասարակական հարստության հետագա աճին։ Այսպես, օրինակ, ՍՍՌՄ-ի էկոնոմիկան երկար տարիներ խարխլված էր վառելիքի ոչ ռացիոնալ ու ոչ արդիական բալանսի վրա, տրանսպորտում գերիշխող էր քարշի հետամնաց տեսակը, շինարարությունը զուրկ էր ինդուստրիալ բազայից և միայն պարտիայի XX համագումարից սկսած, մեր էկոնոմիկան արմատական շրջադարձ կատարեց դեպի ժողովրդական տնտեսության առավել հեռանկարային ճյուղերը։ Հնարավորություն ստեղծվեց արմատական փոփոխության ենթարկելու արդյունաբերության ճյուղային կառուցվածքը հօգուտ առաջադիմական ճյուղերի արագ զարգացման։ Էապես փոխվեց երկրի վառելիքի հաշվեկշիռը և նրանում կտրուկ կերպով բարձրացավ գազի և նավթի տեսակարար կշիռը, քիմիան թափանցեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, երկաթուղային տրանսպորտը հիմնականում փոխադրվեց էլեկտրական և ջերմային քարշի։ Այսպիսով, ժողովրդական տնտեսության պլանավորման մեջ մերժելով Ստալինի կողմից արմատավորված վոլյունտարիզմը, մեր պարտիան ստեղծագործաբար զարգացրեց վերարտադրության մարքսիստական դրույթները և դրանք կիրառեց ժողովրդական տնտեսության պլանավորման մեջ։ Դրանով միաժամանակ հաղթահարվեցին պլանավորման պրակտիկայում տեղ գտած Ստալինի տնտեսական դոգմաները։

Սոցիալիստական պլանավորումը չի կարող չապահովել երկու ստորաբաժանումների միջև այնպիսի հարաբերակցություն, որ առաջին ստորաբաժանումը իր արտադրանքով ապահովի արտադրության միջոցով ինչպես իր, այնպես էլ երկրորդ ստորաբաժանումը, իսկ վերջինս էլ կարողանա իր արտադրանքով բավարարել հասարակության բոլոր անդամների պահանջմունքները, հաշվի առնելով նաև ընդլայնված վերարտադրության շահերը։

Բացահայտելով արտադրամիջոցների արտադրության առավել աճի անհրաժեշտությունը, մարքսիզմի կլասիկները բնավ և ոչ մի դեպքում արտադրամիջոցների արտադրությունն սպառման առարկաներից անկախ չէին քննում։

Խոսելով արտադրամիջոցների արտադրության առավել աճի մասին, Վ. Ի. Լենինն իսկույն ավելացնում է. «Բայց այստեղից հասկանալի է, բնավ չի հետևում, թե արտադրության միջոցների պատրաստումը կարող է զարգանալ սպառման առարկաների պատրաստումից բոլորովին անկախ և առանց նրա հետ որևէ կապակցություն ունենալու... Այսպես, ուրեմն, վերջին հաշվով արտադրողական սպառումը (արտադրության միջոցների սպառումը) միշտ կապված է անձնական սպառման հետ, միշտ կախվածության մեջ է» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 4, էջ 63—64)։

Դժվար չէ նկատել, որ կապիտալիզմի պայմաններում եւ, ուր արտադրությունն ինքնանպատակ է, արտադրությունը վերջին հաշվով չի կարող զարգանալ սպառումից անկախ։ Չնայած դրան, Ստալինի անձի պաշտամունքի շրջանում, երբ պլանավորման մեջ խոր արմատներ էին գցել սուբյեկտիվիզմը, վոլյունտարիզմը, արտադրությունը դիտվում էր սպառումից փաստորեն անկախ։ 1930 թվականին Ստալինի կողմից առաջ քաշած ըստ էության սխալ,

հակագիտական այն թեզը, թե սոցիալիզմի ժամանակ վճարունակ պահանջարկը միշտ պետք է գերազանցի արտադրության աճին, ըստ էության նշանակում էր անձնական սպառման դերի լիակատար անտեսում և, ընդհակառակը, արտադրամիջոցների արտադրության աճի օրենքի ֆետիշացում։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ արտադրամիջոցների արտադրության առավել աճի օրենքը բնավ էլ չի պահանջում, որ այն հարկադրաբար հասարակական արտադրությունից դուրս մղի անձնական սպառման առարկաները։ Ծայրահեղությունների չդիմելով, Մարքսն իր սխեմաներով կապիտալիստական ընդլայնված վերարտադրության համար սահմանեց երկու ստորաբաժանումների միջև այսպիսի համամասնություն 2:1-ին։

Հասկանալի է, որ սոցիալիստական հասարակության համար հիշյալ հարաբերակցությունը և ոչ էլ որևէ այլ հարաբերակցություն պարտադիր չէ։ Սակայն ակնհայտ է, որ ժողովրդատնտեսական պլանավորումը չի կարող չսահմանել այդ երկու ստորաբաժանումների միջև նոր, սոցիալիզմին հատուկ համամասնություններ, ընդ որում սոցիալիստական շինարարության ընթացքում մշտապես փոփոխվող ու բարելավվող։

Սոցիալիստական պլանավորման համար որպես տեսական հիմք ծառայում են և պետք է ծառայեն հասարակական արդյունքն ըստ արժեքի մարքսյան բաժանումը և դրանցից յուրաքանչյուրի նախանշման մասին Մարքսի ուսմունքը։

«Կապիտալ»-ի երրորդ հատորում, որտեղ Մարքսը քննության է առնում հասարակական աշխատանքի և արդյունքի տարրերը, գալիս է այն եզրակացության, որ եթե վերանանք արտադրության և բաշխման կապիտալիստական հատուկ ձևերից, ապա նոր ստեղծված արժեքը և նրա բաղկացուցիչ մասերը այլ կերպարանք կունենան։ Նա ասում է. եթե աշխատավարձը հանգեցնենք նրա ընդհանուր հիմունքին, այսինքն՝ բանվորի սեփական աշխատանքի արդյունքի այն մասին, որ մտնում է նրա անհատական սպառման մեջ, եթե այդ բաժինը ազատենք կապիտալիստական սահմանափակումներից, եթե հավելյալ աշխատանքը և հավելյալ արդյունքը հանգեցնենք այն չափին, որը հասարակության տվյալ արտադրական պայմաններում անհրաժեշտ է վերարտադրությունն ընդլայնելու համար հասարակության պահանջներին համապատասխան, ապա դրանով մենք կվերացնենք միայն հասարակական արդյունքի տարբեր բաղադրամասերի կապիտալիստական գծերը։ «...եթե աշխատավարձից, ինչպես և հավելյալ արժեքից, անհրաժեշտ աշխատանքից, ինչպես և հավելյալ աշխատանքից վերցնենք նրանց սպեցիֆիկ կապիտալիստական բնույթը, ապա կմնան արդեն ոչ թե այն ձևերը, այլ նրանց սոսկ հիմքերը, որ ընդհանուր են արտադրության բոլոր հասարակական եղանակներին» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. III, մաս II, Երևան, 1949, էջ 417)։

Հասարակական արդյունքի արժեքի այդպիսի մասերի բաժանմամբ, իհարկե, Մարքսը ցույց տվեց այն հատուկ տարբերությունները, որոնք գոյություն ունեն այդ մասերի միջև կապիտալիզմի պայմաններում, կապիտալիստական վերարտադրության օրինաչափությունները։ Սակայն, դրա հետ միասին Մարքսը ցույց տվեց, որ ամեն մի հասարակության մեջ էլ տարեկան հասարակական արդյունքը պետք է իր մեջ պարունակի արտադրության ծախքերը և դրանց գերազանցող մի արժեք, որպես կուտակման նյութական աղբյուր։ Այլ կերպ ասած, ամեն մի հասարակության, այդ թվում նաև սոցիալիստական հասարակության տարեկան արդյունքն ըստ իր մեծության պետք է շատ լինի, քան անհրաժեշտ է արտադրության իրային տարրերի և կենդանի աշխատանքի վերարտադրության համար, այսինքն՝ այն պետք է պարունակի հավելյալ արդյունք։



Սոցիալիստական վերարտադրության նորմալ ընթացքի համար ամենատարրական պահանջն այն է, որ հասարակությունը պետք է փոխհատուցի արտադրության պրոցեսում ծախսված արտադրամիջոցները։ «Ոչ մի հասարակություն չի կարող անընդհատ արտադրել, այսինքն՝ վերարտադրել առանց իր արդյունքի մի որոշ մասն անընդհատ նորից արտադրամիջոցներ կամ նոր արտադրության տարրեր դարձնելու» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. I, Երևան, 1954, էջ 593)։

Ընդլայնված վերարտադրության պայմաններում փոխհատուցման ֆոնդի է վերածվում առաջին ստորաբաժանման արդյունքի մեծ մասը, սակայն ոչ ամբողջը, քանի որ նրա որոշակի մասը նախանշվում է երկու ստորաբաժանումների հիմնական ու շրջանառու ֆոնդերի լայնացման և ռեզերվների ստեղծման համար։ Փոխհատուցման ֆոնդը որպես տնտեսական կատեգորիա հատուկ է ամեն մի հասարակության, որն ապահովում է վերարտադրությունը։ Ահա թե ինչու Վ. Ի. Լենինը նշում է, թե «իրացվող պրոդուկտի մի մասը եկամտի ձև երբեք չի ընդունում և չի կարող ընդունել։ Այդ հասարակական պրոդուկտի այն մասն է, որով փոխհատուցվում է հաստատուն կապիտալը... օրինակ, սերմացու հացահատիկը գյուղատնտեսության մեջ երբեք չի ընդունում եկամտի ձև, այն քարածուխը, որ գործադրվում է դարձյալ քարածխի հանույթի վրա, եկամտի ձև երբեք չի ընդունում և այլն, և այլն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 4, էջ 90)։

Փոխհատուցման ֆոնդի չափը յուրաքանչյուր դեպքում որոշվում է արտադրանքին փոխանցված արժեքի մեծությամբ։ Տեխնիկական առաջադիմության հետ միասին գնալով արտադրանքի յուրաքանչյուր միավորի վրա ծախսվում են ավելի քիչ արտադրամիջոցներ, կրճատվում են առարկայացած աշխատանքի ծախքերը, սակայն միևնույն ժամանակ ավելի շատ կրճատվում են կենդանի աշխատանքի ծախքերը։ «Աշխատանքը փոխանցում է արդյունքին իր սպառած արտադրության միջոցների արժեքը։ Մյուս կողմից, աշխատուժի տվյալ քանակով շարժման մեջ դրվող արտադրության միջոցների արժեքն ու մասսան աճում են այն հարաբերությամբ, որով բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. I, էջ 634)։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա գնալով փոփոխության են ենթարկվում քանակական այն հարաբերակցությունները, որոնք գոյություն ունեն հասարակական ամբողջական արդյունքի և նրա մասը կազմող ազգային եկամտի միջև։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա աճող ազգային եկամտի յուրաքանչյուր միավորին ավելի քիչ նյութական ծախսեր է հասնում։ Այսպես, օրինակ, ներկայումս հասարակական ամբողջական արդյունքի մեջ նյութական ծախսումների տեսակարար կշիռը կազմում է 50 տոկոս, որ նշանակում է, թե երկրում ստեղծվող ազգային եկամտի յուրաքանչյուր ռուբլու համար կատարվում են նույնքան նյութական ծախսումներ։

Ներկայումս, երբ մեր աչքի առջև կատարվում է տեխնիկական ռևոլյուցիա, նրա անմիջական ներգործությամբ վերարտադրության ընթացքի մեջ տեղի են ունենում նորանոր փոփոխություններ, որոնք ապահովվում են արտադրության

արդյունավետության հետագա բարձրացումը, որի գլխավոր պայմանը եղել և մնում է աշխատանքի արտադրողականության բարձրացումը, որն իր հերթին կախում ունի աշխատանքի ֆոնդազինվածությունից։ Դրա հետ միասին կարևոր խնդիր է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման աճը գերազանցի աշխատանքի ֆոնդազինվածությունից ու այդ հիման վրա արտադրական ֆոնդերի յուրաքանչյուր ռուբլու դիմաց ժողովրդական տնտեսությունն ստանա ավելի շատ արտադրանք, այլ կերպ ասած՝ բարձրանա ֆոնդատվությունը (фондоотдача)։

Այդ բանին մեծ չափով խթանում են էներգետիկայի, քիմիայի, մետալուրգիայի մեջ կատարվող տեխնիկական կատարելագործումները։ Այսպես, օրինակ, գնալով մեկ տոննա մետաղից հնարավոր է դառնում ունենալ ավելի շատ կարողություններ, մետաղի ձուլման արագությունը աճում է 2—3 անգամ և այլն։ Նույն տեխնիկական առաջադիմության շնորհիվ գնալով իջնում է արտադրամիջոցների արժեքը, տեղի է ունենում ֆոնդատարողության իջեցում, որը հանգեցնում է փոխհատուցման ֆոնդի հարաբերական պակասեցմանը։

Այն հանգամանքը, որ արտադրության պրոցեսում հիմնական և շրջանառու ֆոնդերը տարբեր ձևով են օգտագործվում, անհրաժեշտություն է հարուցել փոխհատուցման ֆոնդը բաժանելու երկու մասի՝ հիմնական ֆոնդերի փոխհատուցման ֆոնդ և շրջանառու ֆոնդերի փոխհատուցման ֆոնդ։

Շրջանառու ֆոնդերը բնեղեն ձևով արտադրության յուրաքանչյուր ավարտով լրիվին նորացվում են, առանց որի, իհարկե, անհնար է ապահովել անընդմեջ արտադրություն։

Հիմնական արտադրական ֆոնդերի փոխհատուցումը բնեղեն ձևով կատարվում է ոչ թե արտադրության յուրաքանչյուր ավարտից, այլ որոշ ժամկետից հետո, երբ արտադրամիջոցները մաշվելով այլևս դադարում են որպես հիմնական ֆոնդեր գործածվելուց։

Փոխհատուցման ֆոնդի հաշվին գոյանում են դրամական ռեսուրսներ և նյութական տարրեր սպառված արտադրամիջոցները վերականգնելու համար։ Մինչդեռ արտադրական ֆոնդի իրական փոխհատուցումը դա նյութական արտադրության պրոցեսն է, արտադրության նոր միջոցների ստեղծումը։

Ժողովրդական տնտեսության պլանավորման համար կարևոր տեսական նախադրյալ է հանդիսանում վերարտադրության մարքսյան թեորիայի այն դրույթը, ըստ որի յուրաքանչյուր հասարակության մեջ էլ տարեկան ամբողջական արդյունքի մեծությունը պետք է գերազանցի նրա վրա կատարած արտադրության ծախքերին։ Այլ կերպ ասած, հասարակական ամբողջական արդյունքն իր մեջ պետք է պարունակի հավելյալ արդյունք, որպես կուտակման աղբյուր, հետևապես և ընդլայնված վերարտադրության աղբյուր։ Վերարտադրության մարքսյան տեսության այս դրույթը բանալի է տալիս հասկանալու այն ճշմարտությունը, որ սոցիալիստական հասարակությունը չի կարող զարգանալ առանց կուտակման։ Հրաժարվել կուտակումից, դա նշանակում է հրաժարվել ընդլայնված վերարտադրության աղբյուրից և այն վերագրել միայն կապիտալիզմին։ Կուտակման անհրաժեշտությունը սոցիալիզմի ժամանակ թելադրվում է ամենից առաջ ընդլայնված վերարտադրության կողմից որպես հասարակության զարգացման անխախտ պայմանի։

Խոսելով կուտակման անհրաժեշտության մասին, որպես ընդլայնված վերարտադրության աղբյուրի, չի կարելի չնշել, որ կուտակումը դեռևս չի





կարող բնութագրել վերարտադրության ընդլայնման մասշտաբները։ Այդ մասշտաբները խոշոր չափով կախում կունենան այն բանից, թե կուտակված միջոցներն ինչպիսի՞ արդյունավետությամբ են օգտագործվում։ Քանի որ կուտակվող միջոցների վճռական մասը մսխվում է ժողովրդական տնտեսության հիմնական արտադրական ֆոնդերի ստեղծման վրա, ուստի կուտակման արդյունավետությունը կչափվի ամենից առաջ կապիտալ ներդրումների արդասաբերության աստիճանով։

Այդ արդյունավետությունն այնքան ավելի բարձր կլինի, որքան արտադրանքի յուրաքանչյուր միավորի աճման վրա քիչ կապիտալ ներդրումներ հասնեն, կամ այլ կերպ ասած, որքան ցածր լինեն տեսակարար կապիտալ ծախսումները։

Ժողովրդատնտեսական մեծ արդյունավետության հասնելու համար, պլաններում և, մասնավորապես, հեռանկարային պլաններում պետք է կարողանալ առանձնացնել գլխավոր օղակը, առանց որի հնարավոր չէ ապահովել ամբողջ ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացումը։ Սովետական իշխանության ներթական խնդիրներում Իլյիչը գրում էր. «Հարկավոր է կարողանալ յուրաքանչյուր տվյալ մոմենտում գտնել շղթայի այն հատուկ օղակը, որից պետք է ամբողջ ուժով բռնել՝ ամբողջ շղթան ձեռքին պահելու և հաջորդ օղակին անցնելը հաստատուն կերպով նախապատրաստելու համար...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 329—330)։

Վ. Ի. Լենինը զգուշացնում էր միաժամանակ, որ տնտեսական շինարարության մեջ գլխավոր օղակի առանձնացումը դժվարին և բարդ գործ է, որը պահանջում է մեծ հմտություն ու կարողություն։ Որպեսզի պլանի մեջ հնարավոր լինի առանձնացնել գլխավոր օղակը, անհրաժեշտ է խոր կերպով վերլուծել տեխնիկական առաջադիմության բոլոր ուղղությունները, գիտության և արտադրողական ուժերի զարգացումը, այն հաշվով, որ ուժերի ու միջոցների գլխավոր մասը կենտրոնացվի վճռական տեղամասերը, որ հաջողությամբ լուծվեն պլանի խնդիրները։ Այսպես, եթե անցյալում երկրի տնտեսական հզորության չափանիշ էր մետաղի արտադրության քանակությունը, ապա այժմ, շնորհիվ նոր առաջադիմական ճյուղերի զարգացման, մետաղի արտադրության քանակությունը դադարեց այլևս երկրի տնտեսական հզորության միակ չափանիշը լինելուց։ Ժամանակակից էտապում ինդուստրիայի վճռական ճյուղերի մեջ առաջին պլանի վրա մղվեց քիմիական արդյունաբերությունը։ Քիմիական արդյունաբերության զարգացման մեջ շատ ցայտուն կերպով են դրսևորվում արտադրության արդյունավետության բարձրացման բոլոր ցուցանիշները։ Այն հարստացնում է երկրի հումքային ռեսուրսները, իջեցնում է արտադրանքի նյութատարությունը, իջեցնում տեսակարար կապիտալ ներդրումները, բարձրացնում ֆոնդատվությունը և այլն։

Հաշվի առնելով այդ ամենը, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների համար մշակվող նոր հնգամյա պլանում հատուկ ուշադրություն է հատկացվում քիմիական արդյունաբերության զարգացման հարցերին։

Սոցիալիստական պլանավորման գիտական մակարդակի հետագա բարձրացման գործում վճռական նշանակություն ունեցավ հեռանկարային պլանավորման արմատական բարելավումը։ Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը բացառիկ կարևորություն էր տալիս երկարատև

ժամանակաշրջանի համար հեռանկարային պլան ունենալուն։ Նրա ղեկավարությամբ ու ոգեշնչումով մշակվեց մեր երկրի վերածնման առաջին սոցիալիստական հեռանկարային պլանը։

Չի կարելի չնշել, որ հեռանկարային պլանավորման ասպարեզում էլ մինչև վերջերս մենք ունեինք լուրջ թերություններ։ Մասնավորապես պետք է նշել, որ պլանավորումն ընդհատվում էր օրացուցային որոշակի ժամկետներում։ Այսպես, անցյալում, երբ մշակվում ու հաստատվում էր հեռանկարային պլանը, պլանավորման ամբողջ գործը հանգում էր ընթացիկ պլանավորմանը, պլանային օրգաններն զբաղվում էին միայն տարեկան պլաններով։ Ստացվում էր այնպես, որ հեռանկարային ժամկետի կեսից մենք այլևս չունեինք ամբողջական հեռանկարային պլան, այլ կար նրա մի մասը՝ մեկ երկու տարվա։ Նոր հեռանկարային պլանը մշակվում էր միայն գործող պլանի կատարման վերջում։

Պլանավորման անընդհատությունը ոչ միայն նշանակում է նրա գիտականության մակարդակի բարձրացում, այլև նշանակում է խթանել մեր էկոնոմիկայի արագ զարգացումը։

Ժողովրդական տնտեսության պլանները մշակելիս հսկայական նշանակություն ունի ժամանակի գործոնը հաշվի առնելը։ Իհարկե, նյութական և աշխատանքային ռեսուրսների բաշխումը ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի միջև չի կարելի կախման մեջ դնել ժամանակի գործոնից, սակայն հաշվի առնելով, որ միևնույն ճյուղի սահմաններում նույն արտադրանքն ստանալու համար կարելի է կառուցել այնպիսի ձեռնարկություններ, որոնց շինարարության ժամկետները ավելի կարճ են, այս դեպքում, իհարկե, ժամանակի գործոնը հաշվի առնելը կարևոր է։

Ժամանակի գործոնի նշանակությունը հաշվի առնելը հատկապես կարևոր է այժմ, երբ ամբողջ հասակով կանգնած է տնտեսական խաղաղ մրցության մեջ կապիտալիզմի նկատմամբ հաղթանակն ապահովելու հարցը։

Բ. ԱՆԱՆԻԿՅԱՆ

# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԻ ԴԵՐԸ

Մարդկությունը թևակոխել է գիտա-տեխնիկական հեղաշրջումների մի այնպիսի էտապ, որը հղի է սոցիալական բազմապիսի հետևանքներով։ Արդի տեխնիկական պրոգրեսը, շոշափելով միլիոնավոր մարդկանց շահերը, դարձել է մարքսիստական և բուրժուական գաղափարախոսությունների սուր պայքարի ասպարեզ։

Մարքսիզմն անհերքելիորեն ապացուցել է, որ կապիտալիզմի կործանումը և սոցիալիզմի հաղթանակը հավասարապես անխուսափելի են։ Արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունն անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, դա համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանն է։ Հենց այս տեսանկյունից էլ պետք է մոտենալ ժամանակակից տեխնիկական պրոգրեսի տենդենցին, նրա զարգացման օրինաչափություններին ու սոցիալական հետևանքներին։

***

Գիտական կոմունիզմը աշխատանքի ազատագրման գաղափարն անխզելիորեն շաղկապեց տեխնիկայի անընդհատ և անսահմանափակ պրոգրեսի հեռանկարների հետ, տեխնիկա, որը գտնվելով ողջ հասարակության տրամադրության տակ, ռևոլյուցիոնացնող վիթխարի նշանակություն է ձեռք բերում կյանքի բոլոր բնագավառներում։ Կ. Մարքսը ժամանակին հանճարեղ կերպով նկատել է, որ շոգին, էլեկտրականությունը, սելֆակտորը (մանամեքենա) անհամեմատ ավելի վտանգավոր ռևոլյուցիոներներ էին, քան նույնիսկ քաղաքացիներ Բարբեսը, Ռասպայլը և Բլանկին։

Ժամանակակից տեխնիկական պրոգրեսը, որն անզուսպ կերպով ներխուժում է արտադրության բոլոր կարևորագույն բնագավառները և իր մասշտաբներով համաշխարհային է, ունի ոչ միայն տնտեսական, այլև սոցիալական խոր բովանդակություն։ Տեխնիկայի զարգացումը, նրա անընդհատ պրոգրեսը վճռականապես պայմանավորված են տեխնիկայի առկա հնարավորություններով և այն պահանջմունքներով, որոնք ձևավորվում են գոյություն ունեցող հասարակական, ամենից առաջ տնտեսական հարաբերություններով։ Մյուս կողմից հասարակական այդ հարաբերությունները փորձարկում են տեխնիկական պրոգրեսի ներգործությունը։ Այնպես որ այստեղ կա դիալեկտիկական

*սերտ կապ, միասնություն և փոխներգործություն, որը, սակայն, տարբեր ֆոր-
մացիաներում տարբեր է և բնութագրվում է առանձնահատուկ օրինաչափու-
թյուններով։*

*Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսն ուշի-ուշով ուսումնասիրելով մեքենաների կիրառ-
ման կապիտալիստական եղանակը, անհերքելիորեն ապացուցեցին, որ այստեղ
տեխնիկական պրոգրեսն ամբողջովին ենթարկված է ոչ թե աշխատանքի պայ-
մանների բարելավմանը, այլ աշխատավորների շահագործմանը և առավելա-
գույն շահույթի կորզմանը։ Կ. Մարքսը «Կապիտալ»-ում նշում էր, որ մեքե-
նայական աշխատանքը ծայրահեղ չափով ընդգրկելով ներվային սիստեմը,
ճնշում է մկանների բազմակողմանի խաղը, մարդուց խլում է մարմնական
ու հոգևոր ազատ գործունեության ամեն մի հնարավորություն։ Տեխնիկայի
զարգացման շնորհիվ աշխատանքի թեթևացումը նույնիսկ այստեղ դառնում է
տանջանքի աղբյուր, որովհետև մեքենան ոչ թե բանվորին  է ձերբազերծում
աշխատանքից, այլ նրա աշխատանքը ամեն մի բովանդակությունից։*

*Բացի այդ, արդի կապիտալիզմի պայմաններում տեխնիկական պրոգրեսն
ընդունում է ծայրահեղ վնասակար ձևեր և ուղղություններ. մարդկային հան-
ճարի հոյակապ նվաճումները դիմակայում են ժողովրդական մասսաներին,
հասարակության և յուրաքանչյուր առանձին անհատի զարգացմանը։ Տեխնիկա-
կան պրոգրեսը, շեշտակիորեն բարձրացնելով աշխատանքի ինտենսիվությունը,
ամենից առաջ, ուղղակիորեն նպաստում է գործազրկության աճին։ Չիկագոյի
համալսարանի հետազոտությունների համաձայն՝ ԱՄՆ-ի արդյունաբերության
առանձին ճյուղերում ավտոմատացման հետևանքով բանվորների թիվը կրճատ-
վել է 64 տոկոսով։ Կապիտալիզմի այդ կլասիկ երկրում արտադրության ավ-
տոմատացումն ու մեքենայացումը յուրաքանչյուր տարի արտադրությունից
դուրս է շպրտում մեկից-երկու միլիոն մարդ։ ԱՄՆ-ի պրեզիդենտին առընթեր
փորձագետների խորհրդի ղեկավար Հելլերի հաշվումներով, արտադրության
մեջ նոր տեխնիկայի ներդրման հետևանքով, մոտակա հինգ տարում մի շարք
բնագավառներում կվերացվի 10 միլիոն բանվորական տեղ (բանվորական բո-
լոր տեղերի 15 տոկոսը)։ Միայն ավտոմոբիլային  արդյունաբերության լրիվ
ավտոմատացման դեպքում, որտեղ այժմ զբաղված է մեկ միլիոն մարդ, ար-
տադրանքի ներկայիս ծավալը կապահովեն արդեն 200 հազար մարդ (տե՛ս
Капитализм против человека. М., 1963, էջ 45)։ Այս ամենից հետո պատա-
հական չէ, որ հենց իրենք՝ բուրժուական  մտածողներն  այսօրվա Ամերիկան
անվանում են հիվանդ հսկա։*

*Ամերիկյան հռչակավոր գիտնական, կիբեռնետիկայի հիմնադիր Նորբերտ
Վիները նկատելով ու վերլուծելով այդ երևույթները, իր «Կիբեռնետիկան և
հասարակությունը» աշխատությունում գրում էր. «Միանգամայն ակնառու է, որ
ավտոմատ մեքենաների ներդրումն առաջ է բերում գործազրկություն, որի հա-
մեմատությամբ արտադրության ժամանակակից անկումը և նույնիսկ 30-ական
թվականների ճգնաժամը հաճելի կատակ կարող են թվալ»* (Н. Винер, Кибер-
*թվականների ճգնաժամը* — 
нетика и общество, ИЛ, 1958, *էջ* 166)։ *Վիներն, ինչպես նաև մտածողների
մի ամբողջ խավ, իրավացիորեն նկատում էր նաև, որ տեխնիկական պրոգրեսը
երկսայր սուր է, այն կարող է օգտագործվել և մարդկության բարօրության հա-
մար, և նրա կործանման համար։ Բայց Վիները, հակառակ բուրժուական աշ-
խարհի շատ ու շատ մտածողների, ավելի օպտիմիստ էր և հորիզոնում հույսի
նշաններ էր տեսնում։ Սակայն դժբախտաբար, նա այդ հույսը ամբողջովին կա-*



*պում էր գործարար շրջանների ներկայացուցիչների խելամտության հետ, այն
քանի հետ, որ նրանք հոգ կտանեն, որպեսզի մարդկային հանճարի այդ վիթ-
խարի նվաճումները չհակակայվեն մարդուն։*

*Բայց, որքան էլ լավատեսորեն տրամադրված լիներ բուրժուական աշ-
խարհի այդ խոշոր մտածողը, կապիտալիստական արտադրաեղանակը մարդ-
կային մտքի այդ իրոք հոյակապ արգասիքն  արդեն  գործադրում է ի վնաս
մարդկության։ Աշխատանքի արտակարգ բարձր տեմպը, արտադրական պրո-
ցեսների ծայրաստիճան ինտենսիֆիկացումն արդեն առաջ են բերել մարդկանց
հոգեկան կարողությունների խիստ գերբեռնվածություն, ներվային սիստեմի
խանգարումներ, պարարտ հող են ստեղծել հոգեկան խանգարումների և սիրտ-
անոթային հիվանդությունների համար։ Բավական է ասել, որ 1952—1960 թթ.
միայն Անգլիայում, Ֆրանսիայում, ԳՖՌ-ում և Իտալիայում վերոհիշյալ պատ-
ճառներով և դժբախտ պատահարների հետևանքով հոգեկան հաշմանդամներ
են դարձել, սպանվել, մահացել և վիրավորվել են ավելի քան 39 միլիոն մարդ։
Ռոժե Գարոդին հաշվել է, օրինակ, որ միայն Սենայի դեպարտամենտում հո-
գեկան հիվանդների թիվը յուրաքանչյուր տարի կրկնապատկվում է, իսկ երկրի
գործարաններում աշխատող կանանց մոտ վաղաժամ ծննդաբերությունը կազ-
մում է 34 տոկոս, այն դեպքում, երբ չաշխատողների մոտ այն չի անցնում 4
տոկոսից։*

*Կապիտալիստական երկրներում տեխնիկական պրոգրեսի հակահումա-
նիզմն ավելի ցցուն է արտահայտվում, երբ գիտության ու տեխնիկայի խոշո-
րագույն նվաճումները գերազանցապես օգտագործվում են էկոնոմիկան ռազ-
մականացնելու, նոր պատերազմ նախապատրաստելու նպատակով։ Մի շարք
մասնավոր ֆիրմաներ և իմպերիալիստական պետություններ ֆինանսավորում
են տեխնիկական և գիտական այն հետազոտությունները, որոնց արդյունքները
գերազանցապես ռազմական բնույթի են։ Այս կապակցությամբ բնորոշ տվյալ-
ներ է բերում Ջոն Բեռնալն իր «Աշխարհն առանց պատերազմի» գրքում։ Ան-
գլիան 1955—1956 թվականներին ռազմական նպատակներով ծախսել է գի-
տահետազոտական աշխատանքների համար նախատեսված միջոցների 60 տո-
կոսը, իսկ ԱՄՆ-ը՝ 42 տոկոսը։*

*Այսպիսով, անվիճելի է, որ կապիտալիստական արտադրահարաբերու-
թյունները գնալով ավելի են կաշկանդում արտադրաուժերի զարգացումը։*

*Բուրժուական աշխարհի տարբեր մտածողներ այլ կերպ են մոտենում
տեխնիկական պրոգրեսին և նրա սոցիալական հետևանքներին։ Նրանք, ովքեր
ճիշտ են ըմբռնում հասարակության զարգացման ընթացքն ու օրինաչափու-
թյունները, գտնում են, որ տեխնիկական պրոգրեսը կապիտալիստական երկր-
ներում ի վերջո հանգում է խիստ բացասական հետևանքների։ Մեքսիկական
պրոգրեսիվ մտածող Ադոլֆո Սանչես Վասկեզն, օրինակ, գրում է. «...սոցիալա-
կան որոշակի հարաբերությունների  ժամանակ  ավտոմատացումը կարող է
հասցնել բացասական հետևանքների։ Կապիտալիստական արդյունաբերական
զարգացման պայմաններում այն ի վիճակի է աներևակայելիորեն բազմապատ-
կելու այն չարիքը, որն իր ժամանակին հարուցվել է մեքենաների ներդրմամբ.
այն մասսայական գործազրկություն է առաջ բերում ոչ միայն ժամանակավոր
(ինչպես այդ արդեն կա այսօր), այլև որակավորված բանվորների, ծառայող-
ների և մտավոր աշխատանքի մարդկանց շրջանում»* («Вопросы философии»
1964, № 1, *էջ* 50)։

Պրոֆեսոր Ն. Վիները, որն, ինչպես տեսանք, որոշ լավատեսությամբ էր տրամադրված տեխնիկական պրոգրեսի հետևանքների նկատմամբ, ճիշտ չըմբռնելով հասարակության զարգացման օբյեկտիվ տենդենցը, ահով գրում էր. «Մենք բառիս բուն իմաստով հանդիսանում ենք նավաբեկյալներ դատապարտված մոլորակում... մենք սուզվում ենք անդունդը» (Н. Винер, Кибернетика и общество, էջ 52):

Բուրժուազիայի կամակատար տեսաբաններն, ընդհակառակը, ամեն կերպ ճգնում են ժամանակակից տեխնիկական պրոգրեսն ու տեխնիկայի նվաճումներն օգտագործել կապիտալիստական կարգն արդարացնելու և հավերժացնելու համար: Արդի բուրժուազիան, նրա ծախու գրչակները, ինչպես նաև սոցիալ-դեմոկրատական գաղափարախոսները որոշ կերպարանափոխումով, բայց մեծ սիրով որդեգրեցին Է. Բերնշտեյնի, Կ. Կաուցկու, Ռ. Հիլֆերդինգի և II ինտերնացիոնալի մյուս պարագլուխների՝ արդեն վաղուց սնանկացած այն տեսակետը, թե հնարավոր է կապիտալիզմի՝ սոցիալիզմին տարերայնորեն, ավտոմատիկ կերպով ներաճելը: Եվ այդ ամենը նրանք ջանում են հիմնավորել ժամանակակից տեխնիկական պրոգրեսով, այսպես կոչված «Երկրորդ ինդուստրիալ ռևոլյուցիա»-ով:

Առաջին ինդուստրիալ ռևոլյուցիայից անցել է ավելի քան 150 տարի: Այդ ժամանակահատվածում գիտության և տեխնիկայի բնագավառում կատարվել են դարակազմիկ, իրոք աշխարհացունց հայտնագործություններ, որոնցից ամենանշանավորներն են՝ ատոմային էներգիայի բացահայտումը և կիրառումը, արտադրության ավտոմատացումը, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, միջմայրցամաքային տիեզերական հրթիռների ու նավերի ստեղծումը և մյուս խոշոր գյուտերը, որոնք մարդկության առջև բաց են անում բնության ուժերին տիրապետելու վիթխարի հնարավորություններ: Եվ դա բավական էր, որպեսզի բուրժուական և սոցիալ-դեմոկրատական թեորետիկները «երկրորդ ինդուստրիալ ռևոլյուցիա»-ի գովերգմամբ, կաշվից դուրս գային հավերժացնելու ամերիկյան իմպերիալիզմը: Նրանց հայեցակետով տեխնիկական ռևոլյուցիան այնքան է վերափոխել ամերիկյան կապիտալիզմը, որ մարքսյան ուսմունքը արդեն չի կարելի կիրառել ԱՄՆ-ի նկատմամբ:

Նման տեսակետներն իրենց քիչ թե շատ ամբողջական արտահայտությունը գտան իմպերիալիզմի ամենացինիկ ջատագովներից մեկի՝ սոցիալ-դեմոկրատ Ֆրից Շտերնբերգի Միլիտարիստական և ինդուստրիալ ռևոլյուցիա գրքում: «Հակառակ Կարլ Մարքսի ենթադրության,— գրում է նա,— այն, (տեխնիկական պրոգրեսը—Բ. Ա.) այդ ամենը կատարում է ոչ թե արտադրության սոցիալիստական եղանակի շրջանակներում, այլ Ամերիկայում և Արևմըտյան Եվրոպայում՝ խորապես փոխակերպված կյանքի կապիտալիստական եղանակի շրջանակներում, որտեղ արդյունաբերության մեծ մասը գտնվում է մասնավոր ձեռքերում և ոչ թե պատկանում է հասարակությանը:

Այդ մշտապես փոխակերպվող արտադրության կապիտալիստական եղանակը մեր աչքերի առաջ լուծում է աղքատության վերացման վաղեմի պրոբլեմը» (տե՛ս Н. Ирибаджаков, Современные критики марксизма, ИЛ, 1962, էջ 574):

Այստեղից հետևում է, որ ինչպես Շտերնբերգը, այնպես էլ նրա համախոհները նույնացնում են տեխնիկական ու սոցիալական հեղաշրջումները, կանխամտորեն տեխնիկայի զարգացումը, նրա արմատական փոփոխություն-



ները քննում են գոյություն ունեցող արտադրական հարաբերություններից անկախ:

Մոնոպոլիստական կապիտալի տիրապետության պայմաններում տեխնիկական պրոգրեսի, նրա արդյունքների և սոցիալական հետևանքների գիտական, մարքսիստական բնութագիրը տրված է ՍՄԿՊ ծրագրում: Այնտեղ նշված է, որ տեխնիկական առաջադիմությունը մոնոպոլիստական կապիտալի պայմաններում դիմակայում է բանվոր դասակարգին, դառնում է նրա շահագործման ուժեղացման միջոց: Կապիտալիստական ավտոմատացումը բանվորից խլում է մի կտոր հացը, աճում է գործազրկությունը: Իմպերիալիզմը տեխնիկայի և գիտության հոյակապ նվաճումները գերազանցապես ի սպաս է դնում սպառազինման մրցավազքին:

Միանգամայն այլ պատկեր ենք տեսնում սոցիալիստական հասարակարգում: Այստեղ տեխնիկական պրոգրեսը ենթարկված է ոչ թե շահագործման և շահույթի մրցավազքին, ոչ թե էկոնոմիկան ռազմականացնելու և նոր պատերազմ նախապատրաստելու նպատակին, այլ ծառայում է մարդուն, անհատի և, ամբողջությամբ վերցրած, հասարակության բազմակողմանի զարգացմանը: Այն կոչված է արմատապես հեշտացնելու և բարելավելու աշխատանքի պայմանները, մեծ չափերով բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը՝ կոմունիստական հասարակարգի բազմակողմանիորեն զարգացած մարդու հարաճուն և միաժամանակ խելամիտ պահանջմունքներն ավելի լրիվ բավարարելու համար:

Սովետական ժողովրդի և կոմունիստական պարտիայի գլխավոր տնտեսական խնդիրն է՝ երկու տասնամյակում ստեղծել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան, որի հիմնական ուղղությունը՝ գիտա-տեխնիկական պրոգրեսն է, արտադրության լիակատար կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը:

Տեխնիկական պրոգրեսը, սակայն, մեզ մոտ ունի ոչ միայն տնտեսական, այլև սոցիալական մեծ նշանակություն:

Մարդը՝ որպես գլխավոր արտադրողական ուժ և ավտոմատ տեխնիկան որպես դրա բաղկացուցիչ տարր, մշտապես գտնվում են սերտ կապի և փոխներգործության մեջ: Տվյալ դեպքում արտադրության մեքենայացումն ու ավտոմատացումն անխուսափելիորեն հսկայական ներգործություն ունեն մարդու աշխատանքային գործունեության վրա: Աշխատանքի էլեկտրո և տեխնիկական զինվածության բուռն աճը, արտադրական պրոցեսների ավտոմատացումը լիակատար հնարավորություններ են ստեղծում մեծ չափերով բարելավելու սոցիալիստական արտադրության աշխատողի աշխատապայմանները, փոխելու նրա միակողմանիությունը, ընդմիշտ դեն նետելու նրա վատ կողմերը:

Վ. Ի. Լենինը նոր հասարակարգի արմատական խնդիրներից մեկը համարում էր աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացումը, առանց որի, ինչպես նշում էր նա, անհնարին է անցումը կոմունիզմին: Այստեղից էլ պարզ է, որ սոցիալիզմի պայմաններում տեխնիկական պրոգրեսն ամենից առաջ ենթարկված է հրամայական այս խնդրի լուծմանը: Կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում տեխնիկայի զարգացման և օգտագործման իսկական հումանիստական ուղղությունն էլ հենց այն է, որ հետզհետե աշխատանքը ոչ միայն դառնում է ավելի արտադրողական, այլև միաժամանակ թեթևանում, հաճելիանում և ձերբազերծվում է միակողմանիությունից: Սոցիալիստական

*իրականության համար միանգամայն բնական է, որ արտադրության մեքենայացումն ու ավտոմատացումը հաճախ իրագործվում են նույնիսկ այն դեպքում, երբ անմիջական արդյունքը ոչ թե աշխատանքի արտադրողականության բարձրացումն է, այլ աշխատանքի պայմանների բարելավումը, որն իր հերթին հակադարձ հզոր ներգործություն է ունենում աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։*

*Մեր հասարակարգում ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում իրագործվող տեխնիկական պրոգրեսն արմատապես փոխում է աշխատանքի բնույթն ու բովանդակությունն ամենից առաջ* ստեղծագործական *առումով։*

*Մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած հակադրության վերացման, աշխատանքի այդ երկու տեսակների միաձուլման հարցը վաղուց է հուզել մարդկության առաջավոր մտածողներին և, հատկապես, սոցիալիստ-ուտոպիստներին ու ռևոլյուցիոն դեմոկրատներին։ Հասարակական կյանքի իդեալիստական ըմբռնումը, սակայն, նրանց խանգարեց գիտականորեն հիմնավորելու այդ պրոբլեմը։ Նրանց ծառայությունը տվյալ դեպքում այն է, որ նրանք ցույց տվեցին աշխատանքի կապիտալիստական բաժանման կործանարար ազդեցությունը մարդու վրա և հանճարեղ կանխատեսություններ արին մտավոր և ֆիզիկական աշխատանքի միավորման մասին։*

*Մարդկության առջև ծառացած սոցիալական այդ խոշոր պրոբլեմն առաջին անգամ գիտականորեն լուծեցին Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը։ «Արդի արդյունաբերությունը,— գրում էր Կ. Մարքսը,— երբեք չի քննում և մեկնաբանում արտադրության մի պրոցեսի առկա ձևն, իբրև վերջնական ձև։ Այս պատճառով նրա տեխնիկական պատվանդանը ռևոլյուցիոն է...» (Կապիտալ, 1933, հ. 1, էջ 455)։*

*Արդյունաբերության բագիսում ռևոլյուցիոն վերափոխություններն անխուսափելիորեն հանգեցնում են արտադրական պրոցեսների, բանվորի ֆունկցիաների փոփոխման, նախապատրաստում են աշխատանքի բաժանման փոփոխման տեխնիկական նախադրյալները, ստեղծում են մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած սահմանների վերացման որոշակի պայմաններ։ Կ. Մարքսը միաժամանակ նկատում էր, որ այդ ամենն անհրաժեշտություն են դարձնում մասնագործ բանվորին, հասարակական մասնակի որոշ ֆունկցիայի այդ սոսկական կրողին փոխարինել բազմակողմանիորեն զարգացած անհատով, որի համար հասարակական տարբեր ֆունկցիաները կենսագործունեության միմյանց հաջորդող եղանակներ են։ Այդ տենդենցը, սակայն, որ ծնունդ առավ կապիտալիստական խոշոր արտադրությամբ, երբեք չէր կարող լիովին կենսագործվել բուրժուական հասարակարգում, որովհետև դրա ճանապարհին կանգնած էին կապիտալիզմի տնտեսական հարաբերությունները, որոնք մարդուն վեր են ածել մասնակի բանվորի, մեքենայի կցորդի։*

*1963 թվականին մեր երկրի ժողովրդական տնտեսության մեջ զբաղված էր ընդհանուր առմամբ 107,2 միլիոն մարդ, ըստ որում գերազանցապես ֆիզիկական աշխատանքով՝ 83,1 միլիոն մարդ և գերազանցապես մտավոր աշխատանքով՝ 24,1 միլիոն մարդ։ Այդ երկու խոշոր խմբերի աշխատանքի միջև չկա արդեն անտագոնիստական հակադրություն, բայց կան տարբերություններ, որոնք ընդհանուր ձևով դրսևորվում են որպես մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական զանազանություններ։*



*Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում այդ տարբերությունների վերացումը ունի սոցիալական խոր իմաստ. այն կհաղթահարի աշխատանքի հին բաժանումը, որին բնորոշ էր խիստ միակողմանիությունը, անհատի գամվածությունը մեկ պրոֆեսիային։ Իսկ հայտնի է, թե ինչպիսի բացասական ներգործություն է ունենում աշխատանքի միակողմանիությունը անհատի զարգացման, նրա առողջության վրա։*

*Աշխատանքի այդ տհաճ և վանող կողմերը հաղթահարելու համար անհրաժեշտ է միաձուլել մտավոր և ֆիզիկական աշխատանքը, որովհետև, «ինչպես բնության մեջ գլուխն ու ձեռքը միևնույն օրգանիզմին են պատկանում, այնպես էլ աշխատանքի պրոցեսում միանում են մտավոր և ֆիզիկական աշխատանքը» («Կապիտալ», հ. 1, էջ 531)։*

*Սովետական Միության կոմունիստական պարտիան իր ծրագրում նշել է ՍՍՌՄ-ում տեխնիկական պրոգրեսի ռեալ պլան և սահմանել նրա զարգացման գլխավոր էտապները։*

*Առաջիկա տարիներում մասսայական մասշտաբով կիրագործվեն կոմպլեքսային* մեքենայացումը *և* ավտոմատացումը։ *Զարգացման այս երկու աստիճաններն, իհարկե, միմյանցից անջրպետված չեն չինական պարիսպով։ Սակայն զարգացման ներկա էտապում մեր առաջնահերթ ու գլխավոր խնդիրը ոչ միայն ֆիզիկական ծանր աշխատանքի, որը դեռևս բավականաչափ մեծ տոկոս է կազմում, այլև ձեռքի, չմեքենայացված, ոչ որակյալ ամեն կարգի աշխատանքի լիկվիդացումն է, որը և սոցիալիզմի պայմաններում տեխնիկական պրոգրեսի գլխավոր ուղղությունը և հումանիստական նպատակն է։*

*Արտադրության մեքենայացումն ու ավտոմատացումն արդեն փոխել են ֆիզիկական ծանր աշխատանքի բազմաթիվ տեսակների բնույթը, թեթևացրել ու հեշտացրել են դրանք։ Ավտոմատացված դոմնային արտադրության պայմաններում պողպատ ձուլողն, օրինակ, որի աշխատանքը նախկինում հաշվվում էր ֆիզիկական ամենածանր գործերից մեկը, այժմ իր բանվորական օրվա 58 տոկոսը ծախսում է ապարատներին ու սարքավորումներին հսկելու, տեխնոլոգիական գործողությունների հետ կապված հաշվարկներ կատարելու վրա։ Նրա բանվորական օրը ներկայումս բաղկացած է հետևյալ ֆունկցիաներից (տոկոսներով՝ ողջ աշխատաժամանակի համեմատությամբ)։*

| | |
|---|---|
| *ա) արտադրական պրոցեսի ընթացքի վերահսկում* | 50 |
| *բ) տեխնոլոգիական պրոցեսի կառավարում* | 20 |
| *գ) աշխատանքային գործողությունների անմիջական կատարում* | 15 |
| *դ) աշխատանքային տեղի նախապատրաստում* | 7 |
| *ե) հաշվառման ֆունկցիա* | 5 |
| *զ) հաշվեհարդարի ֆունկցիա* | 3 |

*Այս, ինչպես նաև բազմաթիվ այլ փաստերն ակնառու կերպով ցույց են տալիս, որ տեխնիկական պրոգրեսի շնորհիվ ոչ միայն մեծ չափերով թեթևացել է ֆիզիկական ծանր աշխատանքը, բարելավվել նրա պայմանները, այլև այն իր էությամբ մոտեցել է ինժեներական աշխատանքին։ Այս պրոցեսն իր հերթին կյանքի է կոչել նոր, բազմակողմանիորեն զարգացած աշխատողին, որը ներդաշնակ կերպով և օրգանապես զուգակցում է մարդկային գործունեության՝ երկու միմյանցից անբաժանելի կողմերը։*

*Ժամանակակից տեխնիկական պրոգրեսը հզոր հողմի նման խարխլում է աշխատանքի հին պրոֆեսիոնալ բաժանման հիմքերը. արմատապես փոխվում*

է բանվոր դասակարգի պրոֆեսիոնալ կազմը, մեռնում, պատմության գիրկն են անցնում ձեռքի աշխատանքի հետ կապված մի շարք մասնագիտություններ, և ընդհակառակը, ծնվում են նոր մասնագիտություններ, որոնք ներդաշնակորեն զուգորդում են մարդու մտավոր և ֆիզիկական գործունեությունը։ Այսպես, ածխային արդյունաբերության մեջ անցյալ են դարձել հանքահորում ձիավարի, հորատողի և մի շարք այլ պրոֆեսիաներ և ընդհակառակը, մասսայական են դարձել լեռնային կոմբայնների վարորդների, ածխաբեռնման և էլեկտրաքարշ մեքենավարների և շատ այլ նոր մասնագիտություններ։ Երկաթուղային տրանսպորտում մեկընդմիշտ վերանում է հնոցապանի ֆունկցիան։ Շինարարությունից իսպառ դուրս են մղվում հողափորի, քարտաշի, հյուսնի մասնագիտությունները։ Շինարարական աշխատանքները վեր են ածվում շենքի հավաքման ու մոնտաժման մեքենայացված պրոցեսի, որտեղ կենտրոնական դեմքն արդեն շինարար-մոնտաժողն է։

Ժամանակակից տեխնիկական պրոգրեսը ներխուժում է ո՛չ միայն նյութական արտադրության բնագավառը, այլև լուրջ հեղաշրջումներ է առաջ բերում մտավոր աշխատանքի ասպարեզում։ Ավտոմատ սարքերի, «մտածող» մեքենաների ներդրումն ասպարեզից դուրս է մղում մտավոր աշխատանքի մի շարք տեսակներ։

Ոչ վաղ անցյալում մեքենան փոխարինում էր միայն մարդու ձեռքին, նրա ֆիզիկական էներգիային։ Կիբեռնետիկայի երևան գալով, որը շատ կարճ ժամանակամիջոցում ապշեցուցիչ նվաճումներ ձեռք բերեց թե՛ տեսական և թե պրակտիկ մարզերում, մեքենան ավելի ու ավելի է մարդուն ազատում մտավոր մի շարք գործողություններից՝ դառնալով ուղեղի գործիք։ Առանց այդ պրոցեսի հետագա զարգացման անհնարին է մարդկության առաջընթացը։ Ներկայումս միայն Մոսկվայի շինարարական կառույցների կոմպլեքսում, օրինակ, կազմվում են 50 հազար կարգագրեր և ավելի քան 3 միլիոն հաշվարկներ։ Դրանց ամփոփման, ընդհանրացման, շինարարների աշխատավարձը հաշվելու և բազմապիսի այլ գործողությունների համար պահանջվում է հաշվային աշխատողների մի վիթխարի խմբի միօրինակ ու հոգնեցուցիչ երկարատև աշխատանք, մինչդեռ Մոսստրոյի գիտա-հետազոտական ինստիտուտի նախագծած էլեկտրոնային կառավարող կենտրոնն այդ ամենը կատարում է մի քանի ժամում՝ առանց մարդկային ավելորդ ջանքերի։

Մտավոր աշխատանքի վրա տեխնիկական պրոգրեսի ներգործությունը սոցիալական մեծ նշանակություն ունի, որովհետև այն ոչ միայն զգալիորեն ինտենսիվացնում է աշխատանքը, բարձրացնում նրա արտադրողականությունը, այլև մտավոր աշխատանքի միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց ազատում է միապաղաղ և հոգեմաշ գործունեությունից, լրացուցիչ հնարավորություններ ստեղծելով նրանց բազմակողմանի զարգացման համար։

Այս կապակցությամբ անհրաժեշտ է կանգ առնել այն հարցի վրա, թե մինչև ո՞ր աստիճան է հնարավոր մտավոր աշխատանքի մեքենայացումը, կամ կարո՞ղ է արդյոք տեխնիկան լիովին փոխարինել մարդու մտքին։ Այս պրոբլեմն արդեն երկար ժամանակ է, ինչ դարձել է բանավեճի առարկա։ Արտադրության ավտոմատացմանը, նրա զարգացման հեռանկարներին նվիրված գրականության մեջ, առանձնապես կիբեռնետիկայի նվաճումների կապակցությամբ, վերջին շրջանում հաճախ է բարձրացվում աշխատավոր մարդու բախտի հարցը։ Ծայրահեղ տեսակետների կողմնակիցները գտնում են, որ հաշվիչ և կառավա-



րող սարքերի կատարելագործումը, վերջին հաշվով, մարդուն դուրս կմղեն գործունեության բոլոր բնագավառներից։ Մի շարք գիտնականներ (Ն. Վիներ, Ու. Ռ. Էշբի և ուրիշներ) գտնում են, որ ավտոմատիկայի թեորիական հիմքերի զարգացումը թույլ կտա ստեղծելու այնպիսի մեքենաներ, որոնք կգերազանցեն մարդուն ո՛չ միայն նյութական և հոգևոր արտադրության, այլև մտածողության ասպարեզում։

Ճիշտ է, իհարկե, որ կիբեռնետիկական մեքենաներն էական ներգործություն են ունենում մտավոր աշխատանքի վրա, թեթևացնում են այն, դարձնում ավելի արտադրողական։ Ժամանակակից հաշվիչ մեքենաներն արդեն մաթեմատիկական բարդ հաշվումները կատարում են շատ ավելի արագ ու ճշտորեն, քան մարդը։ Բայց դա չի նշանակում, թե բառիս բուն իմաստով մեքենան է մտածում մարդու փոխարեն։ Մեքենան լավագույն դեպքում մարդուն կարող է փոխարինել ֆորմալ տրամաբանական գործողություններ կատարելիս, բայց մտածել նրա փոխարեն՝ երբեք։ Նույնիսկ ամենակատարելագործված մեքենան կամ ավտոմատն ընդունակ չէ զգալու, ապրումներ ունենալու, գիտակցելու իր գործունեության արդյունքները։ Մեքենայի «մտավոր» գործունեությունը, ինչպես նկատում է ակադեմիկոս Յուդինը, մարդկայինից էֆեկտիվ է միայն թվական, քանական տեսակետից, իսկ բուն ստեղծագործությունն անմատչելի է ամեն մի մեքենայի։ Նույնիսկ ֆորմալ-տրամաբանական և մյուս գործողությունները մեքենան կատարում է մարդու հրամանով, նրա մշակած ծրագրով։ Այս կապակցությամբ խորապես իրավացի է անգլիական պրոգրեսիվ մտածող Ս. Լիլլին, երբ ընդգծելով հաշվիչ մեքենաների կատարելագործման հսկայական հնարավորությունները, նշում էր, որ ինչպես այժմ, այնպես էլ ապագայում ցանկացած մեքենան «չի կարող կատարել այն ֆունկցիաներից և ոչ մեկը, որոնք կազմում են մարդկային մտածողության պրոցեսը՝ գնահատել շրջապատող իրադրությունը, ընդունել ճիշտ որոշումներ, ստեղծագործաբար մտածել, օգտագործել երևակայությունը» (С. Лилли, Автоматизация и социальный прогресс, ИЛ, 1958, էջ 113)։

Այս առնչությամբ ծագում է աշխատանքի բաժանման պրոբլեմը կոմունիզմի ժամանակ։

Սովետական գիտնականների մի զգալի մասը պաշտպանում է այն տեսակետը, որ տեխնիկական պրոգրեսի հիմքի վրա մտավոր և ֆիզիկական աշխատանքի ավելի ու ավելի մերձեցումն ու միաձուլումը դեռևս չի նշանակում ընդհանրապես մասնագիտությունների վերացում։ Ակադեմիկոս Յուդինն, օրինակ, իր «Սոցիալիզմից դեպի կոմունիզմ» (1962) աշխատության մեջ, հենվելով ՍՄԿԿ ծրագրի վրա, զարգացնում է այն միտքը, որ կոմունիզմի ժամանակ բարձր զարգացած տեխնիկան երբեք էլ մարդուն չի ազատի ոչ ֆիզիկական և ոչ էլ մտավոր աշխատանքից։ Նա չի ոչնչացնում աշխատանքի այդ տեսակները, այլ օրգանապես միաձուլում է դրանք, արմատապես փոխելով աշխատանքի յուրաքանչյուր տարատեսակի բովանդակությունը։ Նա այն կարծիքն է հայտնում, որ մտավոր և ֆիզիկական աշխատանքի միաձուլումն ապագայում առաջ չի բերի մասնագիտությունների ոչնչացում։ Ոչնչանում է աշխատանքի հին պրոֆեսիոնալ բաժանումը և ոչ թե աշխատանքի բաժանումն ընդհանրապես։

Բոլորովին այլ տեսակետ են զարգացնում ակադեմիկոս Ս. Ստրումիլինը, Դ. Կայդալովը և մյուսները։ Ստրումիլինի կարծիքով կոմունիզմի ժամանակ

*մեքենաների ավտոմատ սիստեմի զարգացումը ոչնչացնում է աշխատանքի հին բաժանումը, լիկվիդացնում է նախկին նեղ պրոֆեսիոնալիզմը և «...հաստատում աշխատանքի նոր բաժանում արդեն հիմնականում ոչ թե մարդկանց միջև, այլ մեքենաների և ավտոմատ հաստոցների ու գծերի ամբողջական կոմպլեքսների միջև»* (С. Г. Струмилин, на путях построения коммунизма, М., 1959, *էջ* 12):

*Դժվար է, իհարկե, համաձայնել այն տեսակետի հետ, թե մարդկանց միջև աշխատանքի բաժանումը կփոխարինվի մեքենաների միջև աշխատանքի բաժանմամբ, որովհետև մարդն է գլխավոր արտադրողական ուժը և նա է իրագործում արտադրությունն՝ իր ունակությունների և հմտության շնորհիվ՝ մեքենաների օգնությամբ։*

*Տեխնիկական պրոգրեսն արմատապես փոխելով ֆիզիկական աշխատանքի ձևերը, բնույթն ու բովանդակությունը, երբեք էլ չի վերացնում ամեն կարգի ֆիզիկական աշխատանքը։ Գիտությունն արդեն ապացուցել է, որ անհատի բազմակողմանի և ներդաշնակ զարգացումն անհնարին է առանց ֆիզիկական աշխատանքի։ Վերջինս մարդկային օրգանիզմի համար բնական անհրաժեշտություն է, նրա առաջին կենսական պահանջը։ Այս եզրակացությունը հիմնված է բնական գիտությունների և, մասնավորապես, մարդու ֆիզիոլոգիայի տվյալների վրա։*

*Սոցիալիզմի պայմաններում ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման շնորհիվ, տեխնիկական պրոգրեսը ո՛չ միայն չի հասցնում գործազրկության աճի, մարդկանց ֆիզիկական և հոգևոր ուժերի խեղման, այլ ընդհակառակն, հնարավոր ու անհրաժեշտ է դարձնում բանվորական կադրերի պլանային վերաբաշխումը, նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակի աճը, ընդլայնում է ստեղծագործությանը նրանց մասնակցության մասշտաբները։*

*Սոցիալիզմի պայմաններում տեխնիկական պրոգրեսի շատ կարևոր հետևանքներից մեկն էլ այն է, որ ավտոմատ մեքենաներն ու սիստեմներն արմատապես փոխելով աշխատանքի բնույթը, փոխում են նաև արտադրության պրոցեսում մարդկանց համագործակցության բնույթը։ Այստեղ արդեն չի կարելի առանձնացնել յուրաքանչյուր բանվորի աշխատանքի անհատական արդյունքը։ Ավտոմատ սարքերին ու սիստեմներին հսկելու համար պահանջվում է տարբեր մասնագիտությունների մարդկանց լիակատար համաձայնեցված գործունեություն, նրանց միջև ընկերական փոխօգնության ու համագործակցության նոր հարաբերություններ։ Նոր աստիճանի է բարձրանում սոցիալիստական կոլեկտիվիզմը։*

*Կոմունիզմի շինարարության պայմաններում տեխնիկական պրոգրեսի սոցիալական դրական հետևանքներից մեկն էլ այն է, որ նա, փոխելով աշխատանքի բնույթն ու մեծ չափերով բարձրացնելով նրա արտադրողականությունը, անհրաժեշտ նախադրյալներ է ստեղծում բանվորական օրվա կրճատման և ազատ ժամանակի մեծացման համար, որը վիթխարի նշանակություն ունի գլխավոր արտադրողական ուժի՝ մարդու բազմակողմանի զարգացման համար։*

*Կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը սիստեմատիկաբար վարում են բանվորական օրը կրճատելու կուրս։ Ազատ ժամանակը, սակայն, կախված է ոչ միայն բանվորական օրվա տևողությունից, այլև մի շարք ուրիշ գործոններից՝ ճանապարհի, ինքնասպասարկման, ընտանիքի պահանջները բավարարելու համար ժամանակի ծախսումներ և այլն, որոնք ներկայումս շատ մեծ են և կազմում են համարյա այնքան ժամանակ, որքան հատկացվում է արտադրական նպատակներին։ Տեխնիկական հետագա պրոգրեսը, կոմունալ սպասարկման արմատական բարելավումը, կենցաղում էլեկտրականության, ինչպես նաև անհատական և կոլեկտիվ օգտագործման տեխնիկական միջոցների լայն կիրառումը հնարավորություն կտան արդեն մոտիկ ապագայում զգալիորեն ավելացնել ընտանիքի յուրաքանչյուր չափահաս աշխատողի ազատ ժամանակը, որը կնշանակի մի վիթխարի թռիչք անհատի բազմակողմանի ու ներդաշնակ զարգացման ճանապարհին։*

*Կոմունիզմի շինարարության պայմաններում տեխնիկան ավելի ու ավելի լայնորեն է օգտագործվում հոգևոր կուլտուրան մասսայականացնելու, գիտական հետազոտությունները զարգացնելու, արտադրությունից դուրս և հենց բուն արտադրության պրոցեսում անհատի էսթետիկական ճաշակը մշակելու համար։ Ժամանակակից քաղաքացու աշխատանքային գործունեությունն ու հանգիստը չի կարելի պատկերացնել արդեն առանց կինոյի, ռադիոընդունիչի, հեռուստացույցի, մագնիտաֆոնի, հեռախոսային ապարատի և այլն։*

*Արդի տեխնիկական պրոգրեսն անկասելի է, այն մարդկությանը անհամար բարիքներ է բերել և կբերի, եթե դրվի ճիշտ հունի, ճիշտ ուղղության մեջ, ծառայեցվի աշխատավոր մարդու կենսական շահերին։ Տեխնիկան չէ մեղավոր, որ XX դարում՝ արտադրողական ուժերի վիթխարի աճի և գիտության զարգացման դարում, դեռևս վերջ չի տրված միլիոնավոր մարդկանց աղքատությանը, այլ սոցիալական այն սիստեմը, որը պատնեշել է արտադրողական ուժերի հետագա առաջընթացը։ Ահա թե ինչու ՍՄԿՊ ծրագրում որոշակիորեն նշված է, որ «Արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների միջև ուժեղացող կոնֆլիկտը մարդկության առջև հրամայական խնդիր է դնում՝ պատռել կապիտալիստական նեխած թաղանթը, ազատագրել մարդու ստեղծած արտադրողական հզոր ուժերը և դրանք օգտագործել ի բարօրություն ամբողջ հասարակության»։*

Ս. ԱՌԱՔԵԼՅԱՆ

ՀԱՄԽ-ի նախագահ

# ՄԱՐԴԻԿ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

Մեր պարտիան ու կառավարությունը բարձր են գնահատում սովետական մարդկանց հայրենանվեր աշխատանքը, որով ստեղծվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան և ապահովում աշխատավորության նյութական կյանքի բարձր մակարդակը: Սովետական մարդկանց բարօրության հոգսը, կենսամակարդակի բարձրացումը մեր պարտիան ու կառավարությունը համարում են իրենց գլխավոր խնդիրը և դրա մեջ տեսնում իրենց գործունեության իմաստը:

Որպեսզի մարդիկ աշխատեն բարձր արտադրողականությամբ, անհրաժեշտ է նրանց համար ստեղծել աշխատանքի առողջ և անվտանգ պայմաններ: Վերջին տարիներում այդ ասպարեզում մեր հաջողությունններն անվիճելի են: Այժմ գոհունակությամբ կարելի է նշել, որ արդյունաբերական ձեռնարկություններում ստեղծվել և ստեղծվում են բարձր արտադրողական աշխատանքի անհրաժեշտ պայմաններ: Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության խորհրդի, մինիստրությունների և գերատեսչությունների կողմից լուրջ ուշադրություն է հատկացվում արտադրական նոր օբյեկտների նախագծման, կառուցման և ընդարձակման, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման և աշխատանքային պայմանների բարելավման հարցերին: Բավական է նշել, որ միայն վերջին երկու տարում աշխատավորության աշխատանքային պայմանների բարելավման վրա ծախսվել է 9351,9 հազար ռուբլի: Արտադրական ձեռնարկություններում տեղադրվել են բարձր արտադրողականություն ունեցող հազարավոր մեքենաներ: Մեքենայացվել են ձուլման և ձուլվածքի մաքրման, բեռնաթափման ու բեռնաբարձման և շատ այլ աշխատանքներ, կատարելագործվել են տեխնոլոգիական պրոցեսները: Շինարարության մեջ կրկնապատկվել է էքսկավատորների, բուլդոզերների, վերամբարձ մեխանիզմների քանակը:

Արտադրության մեջ բնական գազի մուտքը կատարյալ հեղաշրջում է մտցրել աշխատանքի պայմանների կատարելագործման բնագավառում: Արդյունաբերական ձեռնարկությունների 80 տոկոսի կաթսայատներն այժմ գործում են գազով: Նկատելի կերպով բարելավվել է բանվոր-ծառայողներին արտահագուստով, պաշտպանական միջոցներով ապահովելու գործը, ընդարձակվել է հասարակական սննդի ցանցը, բազմաթիվ ձեռնարկությունների կոլեկտիվներում արմատավորվել է արտադրական մարմնամարզությունը և այլն:

Չի կարելի անտեսել, որ առողջապահության մինիստրության, նրա տեղական օրգանների (բուժ. միավորումների, պոլիկլինիկաների, բուժ. մասերի ու կետերի) կողմից կիրառվող բուժ. պրոֆիլակտիկ միջոցառումները նկատելի կերպով իջեցրել են բանվոր-ծառայողների անաշխատունակության օրերի թիվը, կրճատել հիվանդությունների և արտադրական խեղումների քանակը:



Աշխատանքի պայմանների բարելավման նպատակով կենսագործվող միջոցառումների շնորհիվ տարեցտարի նվազում է արտադրության մեջ աշխատողների խեղանդամության և հիվանդության օրերի քանակը: 1963 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, արտադրության մեջ խեղանդամության դեպքերի հաճախականության գործակիցը իջել է 12,7 տոկոսով: Այս առումով կարելի է վկայակոչել Լենինականի տեքստիլ, Կիրովականի քիմիական կոմբինատները, Կիրովի անվան գործարանը, Շահումյանի տրիկոտաժի ֆաբրիկան և բազմաթիվ այլ ձեռնարկություններ, որտեղ խոսք գործերի վիճակը բավարար է: Սակայն բանվոր ծառայողների աշխատանքային պայմանների բարելավման ասպարեզում ժողտնտխորհի, մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների ադմինիստրատիվ ղեկավարների, առողջապահական օրգանների, արհմիությունների ռեսպուբլիկական և տեղական կոմիտեների աշխատանքում դեռևս կան խոշոր թերություններ ու բացեր:

Խնդիրն այն է, որ մեզ մոտ այդ հարցերի նկատմամբ բոլորի կողմից և ամենուրեք անհրաժեշտ ուշադրություն ու հոգատարություն հանդես չի բերվում: Մի շարք ձեռնարկություններում լրիվ չեն օգտագործվում աշխատանքի պայմանների բարելավման նպատակով հատկացված գումարները: Օրինակ, ժողտնտխորհի սննդի արդյունաբերության վարչության սիստեմում տարիներ շարունակ չեն իրացվում այդ նպատակի համար բաց թողնված գումարները. դրանք 1963 թ. իրացվել են 60,0 տոկոսով: Նույնպիսի վիճակ գոյություն ունի ժողտնտխորհի մսեղենի և կաթնեղենի, տրանսպորտի վարչությունների սիստեմներում: Այդ իսկ պատճառով աշխատողների խեղանդամության դեպքերը և անաշխատունակության օրերի քանակը ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերում դեռևս բարձր է:

Այդ տեսանկյունով անմխիթար է վիճակը նաև շինարարության մինիստրության, խճուղային ճանապարհների գլխավոր վարչության, անտառտնտեսության, Գլավգազի սիստեմների ձեռնարկություններում և կազմակերպություններում, որտեղ ամբողջությամբ վերցրած վերջին չորս տարիներում չեն իրացվում աշխատանքի պայմանների բարելավման նպատակով նախատեսված գումարները:

Նորմալ սանիտարա-հիգիենիկ պայմաններ չկան Սևանի ապակեմեկուսիչների գործարանում, Երևանի էլեկտրաշարժիչների գործարանի ձուլման աշխատամասում, Կիրովականի մեքենաշինական, Լուսավանի ներտաշ հաստոցների գործարաններում, Կրասնի շվեյնիկ, Մասիս, Արագած, Նոր կյանք ֆաբրիկաներում, Հայգորգ ֆիրմայի արտադրատեղամասերում: Այս ձեռնարկությունների արտադրական տեղամասերում կա մեքենաների մեծ խտություն, չեն տեղադրված օդափոխիչ սարքավորումներ, թույլ են լուսավորվում բանվորական տեղերը:

Խախտելով պարտիայի և կառավարության որոշումները, հաճախ որոշ նորակառույց ձեռնարկություններ, արտադրամասեր շահագործման են հանձնվում սանիտարական հիգիենիկ, կոմունալ-կենցաղային հանգույցների, օդափոխիչ սիստեմների անավարտ վիճակում: Այդպիսի մեծ թերություններով շահագործման են հանձնվել Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի էլեկտրոլիզի արտադրամասի 2-րդ և 3-րդ հերթերը, Ագարակի և Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատների հարստացուցիչ ֆաբրիկաներն ու ջարդման բաժանմունքները, որի հետևանքով վտանգավոր գազերի և փոշու պարունակությունը օդի մեջ նորմայից գերազանցում է, որը վնասում է մարդկանց: Մի քանի տարի է, ինչ Երևանի ծխախոտի ֆաբրիկայի ծխախոտների լցման արտադրամասը շահագործվում է առանց օդափոխիչ սարքավորումների: Առանց ՀԱՄԽ-ի տեխնիկական տեսչության հավանության, մեծ թերություններով շահագործման է հանձնվել Հայէլեկտրագործարանի խոշոր էլեկտրաշարժիչների արտադրամասը, որտեղ հանդերձարաններն օգտագործվում են արտադրական նպատակների համար:

Անհրաժեշտ է նշել, որ այս հարցերի լուծման ժամանակ ոչ բոլոր դեպքերում է, որ ժողտնտխորհի, մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարները հանդես են բերում անհրաժեշտ պահանջկոտություն։ Բռնելով դիմադրության թույլ ճանապարհը, նրանք երբեմն հանգիստ կերպով ստորագրում են թերություններ ունեցող օբյեկտների ընդունման ակտերը, դրանով իսկ հենց առաջին օրերից ծանր դրության մեջ դնում այնտեղ աշխատող մարդկանց։

Ժողովրդական տնտեսության խորհրդի, մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարները կոչված են խստորեն կիրառելու պարտիայի և կառավարության որոշումները՝ նորակառույց օբյեկտները միայն լիավարտ վիճակում շահագործման հանձնելու մասին։

Ռեսպուբլիկայի որոշ ձեռնարկություններում արտադրական խեղումների և դժբախտ դեպքերի թիվը մեծ է նաև այն պատճառով, որ խախտվում են աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնիկայի կանոնները։ Արտադրական ձեռնարկությունների մեծ մասում դեռևս չեն կազմակերպված տեխնիկայի անվտանգության կաբինետներ։

Վերոհիշյալ թերությունների հետևանքով միայն ժողովրդական տնտեսության խորհրդի սիստեմում 1963 թ. տեղի են ունեցել բազմաթիվ դժբախտ դեպքեր՝ մեծ թվով բանվորական օրվա կորուստով։ Դժբախտ դեպքերի հետևանքով ժամանակավոր անաշխատունակության օրերի թիվը վերջին 3 տարում աճել է քիմիական, էլեկտրատեխնիկական արդյունաբերության վարչությունների սիստեմում։ Դժբախտ դեպքերի և, հատկապես, ծանր-մահացու դեպքերի թիվն աճել է լեռնահանքային արդյունաբերության մեջ, շինարարության, ավտոտրանսպորտի, գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությունների ձեռնարկություններում և կազմակերպություններում։

Ժամանակն է, որպեսզի ՀԱՄԽ-ը, արհմիությունների ռեսպուբլիկական և տեղական կոմիտեները, մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարները խիստ պատասխանատվության ենթարկեն այն աշխատողներին, որոնք անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկում աշխատանքի անվտանգությունն ապահովելու համար։ Պետք է հասնել այն բանին, որ այդ գործի համար ամենուրեք լինեն պատասխանատու մարդիկ։

Պետք է սիստեմատիկ դարձնել բանվոր-ծառայողների հրահանգավորումը, աշխուժացնել ֆաբրիկա-գործարանային կոմիտեների աշխատանքի պաշտպանության, տեխնիկայի անվտանգության հանձնաժողովների գործունեությունը։

Հիվանդության օրերի թիվը նվազեցնելու, աշխատանքի նորմալ պայմաններ ստեղծելու գործում մեծ նշանակություն ունի բանվորներին ժամանակին արտահագուստ տրամադրելը, դրա լվացման և վերանորոգման կազմակերպումը։ Արտահագուստի որակը դեռ մնում է ցածր։ Բազմաթիվ ձեռնարկություններում (ժամացույցի, սարքաշինական, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, կոմպրեսորների գործարաններում և այլուր) չեն ստեղծված արտահագուստի լվացման, մաքրման և վերանորոգման հնարավորություններ։ Ժողտնտխորհի 9-ը վարչությունների 143 օբյեկտներից բանվորական արտահագուստի վերանորոգումը և մաքրումը կազմակերպված է միայն 20-ում։

Պատշաճ ուշադրություն չի հատկացվում նաև արտադրական ձեռնարկությունների ինչպես ձմռան, այնպես էլ ամռան համար նախապատրաստելուն, որի պատճառով տարվա այդ ամիսներին ավելանում է հիվանդության օրերի թիվը, ընկնում է աշխատանքի արտադրողականությունը։

Խոշոր թերություններ կան նաև բանվոր-ծառայողներին վառելիքով ապահովելու ուղղությամբ։ Այս գործում մի շարք աշխատողների անպատասխանատվության հետևանքով 1963 թ. աշնան և 1964 թ. ձմռան ամիսներին շատ բանվոր-ծառայողներ զրկվեցին վառելիքից և ընկան ծանր վիճակի մեջ։ Անցյալ տարվա վիճակը չպետք է կրկնվի։

Առողջապահական կազմակերպությունների գործունեության ամենագլխավոր թերությունն այն է, որ հիվանդությունների կանխման համար դեռևս նախազգուշական միջոցներ քիչ են կիրառվում։ Բանիմացորեն չեն վերլուծվում հիվանդությունների պատճառները և այդ մասին ամփոփված նյութերը ժամանակին չեն ներկայացվում համապատասխան տնտեսական և արհմիութենական կազմակերպություններին՝ հարցերն արմատապես լուծելու համար։ Շատ հաճախ առանձին բուժ. աշխատողներ հանդես են գալիս հիվանդության դեպքերը պասսիվ արձանագրողի դերում։ Անհրաժեշտ ուշադրություն չի հատկացվում արտադրական միավորներում սանլուսպրոպագանդայի կազմակերպման հարցերին։

Խոշոր թերություն պետք է համարել այն, որ մի շարք տեղերում առողջապահական օրգանները և արհմիութենական կազմակերպությունները չեն համագործակցում, իսկ դա վնասում է գործին։ Հաճախ արհմիութենական կազմակերպություններն անտեսում են արտադրամասերի բժիշկների, առկայանների վարիչների հարցապնդումներն ու ահազանգումները, նրանց ուսումնասիրությունների արդյունքները։ Հազվադեպ չեն այն ձեռնարկությունները, որտեղ բուժաշխատողները զուրկ են աշխատանքի նորմալ պայմաններից։

Մեր ռեսպուբլիկայի առողջապահության մինիստրությունը, նրա համապատասխան ինստիտուտները պետք է ավելի կոնկրետ զբաղվեն արդյունաբերության մեջ աշխատող բանվոր-ծառայողների բուժ. սպասարկման գործը բարձր հիմքերի վրա դնելու և հիվանդության օրերի թիվը կրճատելու հարցերով։ Բարձրացնելով բժշկական էքսպերտիզայի գործունեության վիճակը, պետք է պատասխանատվության ենթարկել այն բուժ. աշխատողներին, որոնք չհիմնավորված անաշխատունակության թերթիկներ են տալիս և դրանով խրախուսում գործալքությունը։

Շատ բան կա անելու արտադրական ձեռնարկություններում սանիտարիայի վիճակն իր բարձրության վրա դնելու համար։ Արտադրության կուլտուրայի և սանիտարիայի հարցերը շատ ձեռնարկություններում մղված են հետին պլանի վրա. մեծ է թափթփվածությունը, չեն բարեկարգված, կանաչապատված բազմաթիվ գործարանների տերիտորիաները, հունի մեջ չեն դրված ձեռնարկությունից հոսող ջրերը, արտադրավայրի վնասակար փոշին աղտոտում է շրջապատը։

Պետք է խոստովանել, որ արհմիութենական կազմակերպությունները դեռ չեն հասել այն բանին, որպեսզի բոլորը գիտակցեն, որ մեր տնտեսական շինարարության հաջողությունները բացառապես և ամբողջովին կախված են մարդկանցից, որ դրանք հաջողությամբ կլուծվեն, եթե մարդկանց նկատմամբ ցուցաբերվի ամենօրյա ուշադրություն և հոգատարություն։

Ժամանակն է, որ ձեռնարկություններում և հիմնարկություններում աշխատանքային օրենսդրության խախտման դեպքերը ժամանակին արժանանան պարտիական-պետական վերահսկողության հեղինակավոր մարմինների մշտական ուշադրությանը։

Սոցիալիստական ձեռնարկության յուրաքանչյուր ղեկավարի սրբազան պարտքն է ամենօրյա հոգատարություն հանդես բերել բանվոր-ծառայողների նկատմամբ և անել ամեն ինչ՝ աշխատանքային նորմալ պայմաններ ստեղծելու համար։

Գ. ՍԱՀԱԿՅԱՆ

Տնտեսագիտական գիտությունների թեկնածու

# ԱՇԽԱՏԱՎԱՐՁԻ ԿԱՐԳԱՎՈՐՈՒՄԸ ԵՎ ՆՐԱ ՍԻՍՏԵՄԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

Աշխատավարձի սիստեմը սոցիալիզմի ժամանակ պայմանավորվում է տնտեսական օրենքների պահանջներով, հատկապես ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի պահանջով։

Մինչև աշխատավարձի կարգավորումը, նրա սիստեմում կային խոշոր թերություններ, որոնք խանգարում էին նյութական շահագրգռվածության սկզբունքի անշեղ կենսագործմանը, հետևաբար նաև արգելակում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Այդ թերությունների պատճառներից մեկն այն էր, որ 30-ական թվականներից սկսած նրա գրվածքի հիմնական սկզբունքներն էական փոփոխությունների չէին ենթարկվել, մինչդեռ այդ ժամանակամիջոցում արտադրության բոլոր ճյուղերում տեղի էին ունեցել տնտեսական, տեխնիկական արմատական փոփոխություններ. աշխատանքի պայմանները նույնպես փոխվել էին։

Սոցիալիզմի ժամանակ աշխատավարձի հիմնական լծակներն են՝ տարիֆային սիստեմը, աշխատանքի նորմավորումը, աշխատավարձի տարբեր ձևերը, ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների աշխատավարձի սխեմաները, պարգևատրման սիստեմները և այլն։

Աշխատավարձի ճիշտ կարգավորման համար ամենից առաջ պետք է կատարելագործել տարիֆային սիստեմը, որովհետև տարիֆային սիստեմի միջոցով է հիմնականում կենսագործվում ըստ աշխատանքի բաշխման սկզբունքը։

Տարիֆային սիստեմում բնութագրվում են բանվորների որակավորման միջև եղած տարբերությունները, նրանց աշխատանքի բարդության աստիճանը, արտադրության տարբեր տեղամասերում գոյություն ունեցող աշխատանքի պայմանները, աշխատավարձի միջճյուղային և շրջանային տարբերությունները։

Որքան կատարելագործված է տարիֆային սիստեմը, այնքան ճիշտ են արժեքավորվում, գնահատվում աշխատանքի տարբեր տեսակները, հետևաբար ճիշտ է կիրառվում ըստ աշխատանքի բաշխման սկզբունքը։

Մինչև աշխատավարձի կարգավորումը գոյություն ունեցող տարիֆային



սիստեմները, ժամանակին կատարելով որոշ դրական դեր, այլևս չէին համապատասխանում արտադրության զարգացման նոր պայմաններին, նրանք ունեին խոշոր թերություններ. աշխատավարձի կարգավորման կարևոր խնդիրներից մեկն այդ թերությունների վերացումն էր։

Հայտնի է, որ տարիֆային սիստեմը բաղկացած է տարիֆա-որակավորման տեղեկատուներից, տարիֆային ցանցերից և դրույքներից։

Տարիֆա-որակավորման տեղեկատուների կատարելագործումն արտահայտվեց նրանով, որ, նախ՝ զգալի չափով կրճատվեց դրանց թիվը, այնուհետև դրանք ըստ էության էլ փոփոխության ենթարկվեցին։ Այսպես՝ այդ տեղեկատուներից հանվեցին այն պրոֆեսիաներն ու մասնագիտությունները, որոնք հնացած էին, տեղեկատուները համալրվեցին նոր պրոֆեսիաներով ու մասնագիտություններով, որոնք առաջացել էին արտադրության զարգացման նոր պայմանների շնորհիվ։ Տեղեկատուների ծավալը ևս կրճատվեց. այդ կատարվեց մի շարք մասնագիտությունների, պրոֆեսիաների ունիֆիկացման, խոշորացման շնորհիվ։ Այսպես, օրինակ, մինչև կարգավորումը տեղեկատուներում բնութագրվում էին 2000-ից ավելի պրոֆեսիաներ և 10 հազարից ավելի տարակարգեր։ Կարգավորումից հետո գործող տեղեկատուներում բնութագրվում են միայն 280 պրոֆեսիա և 900 տարակարգ։

Պրոֆեսիաների կրճատումը տեղի է ունեցել այն թերության վերացմամբ, երբ հին տեղեկատուներում նույն պրոֆեսիան արհեստական կերպով բաժանված էր մի քանի մասնագիտությունների։ Այսպես՝ փականագործի պրոֆեսիան բաժանված էր 24, ջերմային աշխատանքի պրոֆեսիան՝ 30 մասնագիտությունների և այլն։ Նոր տեղեկագրերում այս մասնագիտությունները ներկայացված են միայն մեկ անունով՝ «փականագործ», «ջերմային աշխատանք» և այլն։

Տարիֆային տեղեկատուների կարգավորման շնորհիվ ներկայումս հաղթահարված են այդ տեղեկատուների ուժիօրինակությունը, խայտաբղետությունը, և ստեղծված է մեկ միասնական տեղեկատու միջանկյալ մասնագիտությունների համար, որն ընդգրկում է այդ պրոֆեսիաների բանվորների 60—65 տոկոսը։ Դրա հետ միաժամանակ մշակված են համապատասխան տեղեկատուներ ըստ առանձին ճյուղերի։ Աշխատավարձի կարգավորման կարևոր արդյունքներից մեկը տարիֆային ցանցերի կանոնավորումն ու կատարելագործումն էր։

Մինչև կարգավորումը գոյություն է ունեցել մոտ 2000 տարիֆային ցանց. ներկայումս դրանց թիվը հասնում է 12-ի, 700 ռոճիկների սխեմաների փոխարեն կարգավորումից հետո գործում են 35 պաշտոնական ռոճիկների սխեմաներ։ Կրճատվել են նաև առաջին կարգի տարիֆային դրույքները, անցյալում գոյություն ունեցող հազարավոր տարիֆային դրույքների փոխարեն գործում են 43-ը։ Նախկին տարիֆային սիստեմի թերություններից է և այն, որ տարիֆային դրույքների տեսակարար կշիռը բանվորների միջին աշխատավարձում շատ ցածր էր։ Այն կազմում էր մոտ 45—55 տոկոսը։ Այդ նշանակում է, որ տարիֆներն իրենց դերը չէին կատարում։

Տարիֆային ցանցերի կատարելագործումն արտահայտվեց և նրանով, որ այդ ցանցերն ընդգրկող տարակարգերի թիվը կրճատվեց, նվազեցին առաջին և վերջին կարգի բանվորի վարձատրության միջև գոյություն ունեցող տարբերությունները։ Արդյունաբերության ճյուղերի գերակշռող մասում կիրառվում են վեցկարգյա և յոթկարգյա տարիֆային ցանցեր։

Նոր տարիֆային ցանցերի մյուս առավելությունն այն է, որ դրանցում

ստորին և միջին կարգերի տեսակարար կշիռը բարձրացել է, իսկ բարձր կար-
գերինը՝ նվազել։ Այս կարելի է ցույց տալ Հայկական ՍՍՌ գունավոր մետա-
լուրգիայի օրինակով։ Այսպես, եթե մինչև կարգավորումը I, II, III կարգերի
բանվորների թիվը կազմում էր ամբողջ բանվորների թվի 7 տոկոսը, ապա
կարգավորումից հետո այդ կարգերի բանվորների տեսակարար կշիռը, ամբողջ
բանվորների թվի համեմատությամբ, արդեն կազմում է 36 տոկոս։ Այս նշա-
նակում է, որ ստորին կարգերը վարձատրության նոր պայմաններում լրիվ
են օգտագործվում։

Չորրորդ և հինգերորդ կարգերի բանվորների տեսակարար կշիռը նույն-
պես բարձրանում է։ Այսպես, եթե մինչև կարգավորումը դրանց թիվը կազմում
էր ամբողջ բանվորների թվի 34,5 տոկոսը, ապա կարգավորումից հետո՝ հա-
սավ 47-ի։

Կարգավորման շնորհիվ գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում
կիրառվում է յոթկարգյա ցանց. 8, 9 և 10-րդ կարգերը վերացված են, բայց,
չնայած դրան, 6 և 7-րդ կարգերի բանվորների տեսակարար կշիռը նվազում
է. բանվորների ընդհանուր թվում այն հասնում է 17-ի, մինչև կարգավորումը
եղած 43,5 տոկոսի փոխարեն։

Տարակարգերի այսպիսի փոփոխությունը բացատրվում է նրանով, որ
բարձր կարգերը ձուլվել են ստորին և միջին կարգերի հետ։ Սակայն դրա շնոր-
հիվ բանվորների միջին աշխատավարձը ոչ թե իջել, այլ բարձրացել է բոլոր
կարգերում, բայց ավելի արագ բարձրացել է ստորին կարգերում։

Աշխատավարձի կարգավորմամբ նոր տարիֆային ցանցերում ավելի լրիվ
են հաշվի առնվել աշխատանքի պայմանները։ Այսպես, մինչև աշխատավարձի
կարգավորումը, քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում աշ-
խատանքի առավել վնասակար պայմանները հին տարիֆային ցանցերով հաշ-
վի չէին առնվում. ներկայումս այդ թերությունը վերացված է։ Ռեսպուբլիկայի
քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում առավել վնասակար
պայմաններում աշխատող բանվորների տարիֆային դրույքները համեմատա-
բար բարձր են, քան մյուս կատեգորիայի բանվորներինը։

Գունավոր մետալուրգիայի արդյունաբերության ձեռնարկություններում,
նախկին տարիֆային սիստեմով, առհասարակ աշխատանքի պայմանների
հաշվառումը տարիֆիկացման ժամանակ անտեսված էր, այժմ այդ թերու-
թյունը ևս վերացված է։ Աշխատավարձի կարգավորմամբ տարիֆային դրույք-
ները նոր պայմաններին անցած բոլոր ճյուղերում բարձրացել են։ Այսպես՝
Հայկական ՍՍՌ քիմիական արդյունաբերության մեջ գործավարձով աշխատող-
ների տարիֆային դրույքներն աճել են 52,6, ժամանակավարձայիններինը՝
51,9 տոկոսով։

Տարիֆային դրույքների աճման շնորհիվ բարձրացել է տարիֆների տե-
սակարար կշիռը բանվորների միջին աշխատավարձում։ Այսպես՝ քիմիական
արդյունաբերության մեջ տարիֆային դրույքների տեսակարար կշիռը կազմել
է 79, էլեկտրատեխնիկական և սարքաշինության ճյուղերում՝ 73, փայտա-
մշակման ճյուղում՝ 78 տոկոս և այլն։

Աշխատավարձի կարգավորման կարևոր խնդիրներից մեկը՝ դա ցածր
վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձի մակարդակի ա-
րագ բարձրացումն է։ Այս հարցը ևս հաջողությամբ լուծվել է, որը հաստատ-
վում է ինչպես միութենական տվյալներով, այնպես էլ Հայկական ՍՍՌ տվ-



յալներով։ Այսպես՝ ՍՍՌՄ-ի արդյունաբերության մեջ մինչև 40 ռ. աշխատա-
վարձ ստացողների թիվը կրճատվել է 4, 40—50 ստացողներինը՝ 2,5, իսկ
50-ից մինչև 60 ռուբլի ստացողներինը՝ 2 անգամ։ Հայկական ՍՍՌ ընտրան-
քային կարգով կատարված հաշվառումները ցույց են տալիս, որ այստեղ ևս
ցածր վարձատրվողների թիվը կրճատվում է ամբողջ ընտրանքային խմբի մեջ։
Ստորև բերված թվերը ցույց են տալիս, թե ամբողջ խմբի մեջ ինչպես է փոխ-
վել տարբեր կատեգորիաների բանվորների տեսակարար կշիռը համեմատվող
ժամանակամիջոցում (տոկոսներով)։

Այսպես, օրինակ, 40-ից մինչև 44 ռուբլի ստացողների թիվը 1961 թվա-
կանի տվյալներով, 1956 թվականի համեմատությամբ կրճատվել է մոտ 7 ան-
գամ, 60—70 ռուբ. ստացողներինը՝ ավելի քան 2 անգամ, իսկ 100-ից 110
ռուբլի ստացողների թիվն աճել է մոտավորապես մեկ ու կես անգամ, 110
ռուբլուց ավելի ստացողներինը՝ գրեթե 5 անգամ։

Տվյալներից երևում է, որ առաջին երկու խմբի բանվորների թիվը կրճատ-
վում է, որովհետև ցածր վարձատրվողները բարձրանում են առաջին խմբից
երկրորդը, երկրորդից երրորդը, վերջին հաշվով, միջին վարձատրություն
ստացողների տեսակարար կշիռն աճում է։ Աշխատավարձի կարգավորման
կարևոր խնդիրն է նաև միջճյուղային միջին աշխատավարձի մակարդակների
որոշակի հարաբերակցության պահպանումը, որը պետք է կատարվի այնպես,
որ, նախ՝ պահպանվի առաջատար ճյուղերին որոշ առավելություն տալը, երկ-
րորդ՝ պետք է արագ բարձրացվի այն ճյուղերի բանվորների միջին աշխատա-
վարձի մակարդակը, որտեղ այն շատ ցածր է եղել մինչև կարգավորումը։

Ռեսպուբլիկայի համապատասխան տվյալների ուսումնասիրությունը
ցույց է տալիս, որ այս խնդիրը ևս հիմնականում հաջողությամբ է լուծվել։

Սակայն աշխատավարձի կարգավորմամբ, տարիֆային սիստեմի կատա-
րելագործմամբ բնավ չի ավարտվում աշխատավարձի սիստեմի կատարելա-
գործումը։

Այս խնդիրների լուծումը պետք է կատարվի ո՛չ միայն կենտրոնացած
կարգով, այլև տեղերի, հատկապես ժողտնտխորհների ակտիվ մասնակցու-
թյամբ, որոնք, իրագործելով պարտիայի դիրեկտիվները, աշխատավարձի
կարգավորման բնագավառում կուտակել են զգալի փորձ և կարող են համա-
պատասխան գործնական եզրակացությունների հանգել։

Տարիֆային դրույքների բարձրացումը հնարավորություն տվեց արտա-
դրության մեջ զգալի չափով բարձրացնելու տեխնիկապես հիմնավորված նոր-
մաների տեսակարար կշիռը, որը հանդիսանում է աշխատավարձի սիստեմի
կատարելագործման կարևոր պայմաններից մեկը։

Վարձատրության նոր պայմաններին անցնելու շնորհիվ տեխնիկապես
հիմնավորված նորմաների տեսակարար կշիռը ՍՍՌՄ-ի արդյունաբերության
մեջ բարձրացել է և ներկայումս կազմում է ամբողջ նորմաների 70—80 տո-
կոսը։ 1959 թվականին նրանց տեսակարար կշիռը ածխի հայթայթման ճյու-
ղում կազմել է 79, սև մետալուրգիայում՝ 75, գունավոր մետալուրգիայում՝ 74,
ցեմենտի արդյունաբերության մեջ՝ 82,3 տոկոս։

Հայկական ՍՍՌ 1963 թվականի վերջին կիսամյակի տվյալներով գունա-

վոր մետալուրգիայի ձեռնարկություններում տեխնիկապես հիմնավորված նոր-
մաները կազմել են ամբողջ նորմաների 94 տոկոսը հիմնական ցեխերում,
82,6 տոկոսը՝ օժանդակ ցեխերում, բանվորների 92 տոկոսի ընդգրկմամբ։
Այդպես է վիճակը նաև քիմիական արդյունաբերության և մյուս ճյուղերում։

Նորմաների որակական հատկանիշները բնորոշվում են նրանց կատար-
ման տոկոսներով. որքան բարձր է կատարման տոկոսը, այնքան նորմաների
որակը ցածր է։

Ստորև բերված թվերը (տոկոսներով) ցույց են տալիս, թե Հայկական
ՍՍՌ ժողտնտխորհի ձեռնարկություններում ինչ չափով են կատարվել նորմա-
ները մինչև կարգավորումը և կարգավորումից հետո։

| | 1957 թ. | 1960 թ. | 1961 թ. | 1962 թ. |
|---|---|---|---|---|
| | Մինչև կարգ. | հոկտեմբեր | ապրիլ | ապրիլ |
| Ամբողջ ժողտնտխորհի սիստեմները | 160.2 | 132.4 | 119,9 | 122,4 |
| Այդ թվում՝ | | | | |
| Հիմնական աշխատամասերում | 155 | 131 | 118.5 | 121,3 |
| Օժանդակ աշխատամասերում | 178.7 | 151,2 | 131,6 | 130,9 |

Այստեղից երևում է, որ կարգավորումից հետո նորմավորման վիճակը
համեմատաբար բարելավվել է. բայց դրանք միջին թվեր են, ամենուրեք
այդպիսի ցուցանիշներ չկան, նույնիսկ գունավոր մետալուրգիայի ձեռնարկու-
թյուններում, որտեղ նորմաների կատարման ցուցանիշները 1963 թ. դեկտեմ-
բերի տվյալներով բարելավվել են. այսպես՝ միջին հաշվով այս ճյուղերում
տեխնիկապես հիմնավորված նորմաները կատարվել են 111,3 տոկոսով, հիմնա-
կան աշխատամասերում՝ 111,2, օժանդակում՝ 126 տոկոսով, բայց դրա կողքին
այդ ճյուղի մի երկու ձեռնարկություններում՝ Ալավերդում բանվորների 25,
Դաստակերտում բանվորների 14 տոկոսը չեն կատարել տեխնիկապես հիմնա-
վորված նորմաները։

Առանց տատանվելու կարելի է պնդել, որ աշխատավարձի կարգավորման
կապակցությամբ տեխնիկապես հիմնավորված նորմաները արտադրության
մեջ արմատավորելու հարցը Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի ձեռնարկություն-
ներում շատ դանդաղ է լուծվում։

Չի կարելի ասել, որ ժողտնտխորհում և նրա ձեռնարկություններում դրա-
նով անբավարար են զբաղվել. հակառակը, դեռևս աշխատավարձի կարգա-
վորման նախօրյակին ժողտնտխորհի առաջադրանքով ձեռնարկությունները
կազմել են կազմակերպական տեխնիկական միջոցառումների օրացուցային
պլաններ, որոնց կենսագործմամբ պետք է ապահովվեր տեխնիկապես հիմնա-
վորված նորմաների արմատավորումն արտադրության մեջ։ Սակայն շատ ձեռ-
նարկություններ այդ պլանները դեռևս չեն կատարել։

Ժողտնտխորհի նյութերի ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ
նրա աշխատանքի և աշխատավարձի բաժնի աշխատողները բազմիցս ահա-
զանգել են, որ ձեռնարկություններում տեխնիկապես հիմնավորված նորմա-
ների ներդրման բնագավառում կան խոշոր թերություններ, բայց ահազանգում-
ներից հետո էլ գործը դանդաղ է շարժվում։ Մեր կարծիքով ժողտնտխորհի
վարչությունների բոլոր բաժինները, մասնավորապես, տեխնիկայի հարցերով
զբաղվող բաժինները պետք է ակտիվ մասնակցեն այդ հարցի լուծմանը։



Տեխնիկապես հիմնավորված նորմաների ներդրման գլխավոր պայմանը
պետք է հանդիսանա աշխատանքի արտադրողականության աճը պայմանավո-
րող բոլոր գործոնների օգտագործումը, իսկ այս հարցը միայն աշխատանքի
բաժնի ուժերով չի կարելի լուծել։ Այնուհետև, անհրաժեշտ է բարձրացնել
բուն նորմավորման աշխատանքի արտադրողականությունը, կրճատել այդ
ուղղությամբ կատարվող ծախսերը, այդ աշխատանքը մեքենայացնել, այստեղ
ևս օգտագործել էլեկտրոնային հաշվիչ մեքենաները։

Շատ կարևոր դեր կխաղա տեղական դրական փորձի ընդհանրացումը, որը
պետք է կատարվի նորմատիվային հետազոտական կայանի միջոցով։ Այս աշ-
խատանքի ղեկավարությունը պետք է կատարվի դիֆերենցված կարգով։ Վեր-
ջապես, նորմատիվային հետազոտական կայանը պետք է ապահովել որակյալ
կադրերով և, որ գլխավորն է, նրանց պետք է նյութապես շահագրգռել։

Պետական համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետը, Հայկական
ՍՍՌ գիտությունների ակադեմիայի տնտեսագիտության ինստիտուտը պետք է
ձեռնարկեն կոնկրետ միջոցառումներ աշխատանքի և աշխատավարձի հար-
ցերով զբաղվող որակյալ էկոնոմիստներ պատրաստելու համար, որով որոշ
չափով օգնած կլինեն ժողտնտխորհին։ Տեխնիկապես հիմնավորված նորմանե-
րի ներդրումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը այն հիմ-
նական ուղիներն են, որոնք կապահովեն բանվորների և արտադրության բո-
լոր աշխատողների վաստակի աճը և պլանային առաջադրանքների կատարումը։
Այստեղից հետևում է, որ այդ հարցի լուծմամբ պետք է շահագրգռված լի-
նեն ձեռնարկությունների և ժողտնտխորհի ղեկավարները, բանվորները,
ինժեներա-տեխնիկական աշխատողներն ու ծառայողները։

Աշխատավարձի կազմակերպման կատարելագործման կարևոր գործոննե-
րից մեկն էլ աշխատավարձի ձևերի կարգավորումն է։ Արտադրության տվյալ
մակարդակին համապատասխանող վարձատրության ձևի ընտրության հարցը
սերտորեն կապված է նյութական շահագրգռվածության սկզբունքի կենսա-
գործման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ։

Նյութական արտադրության ճյուղերում գոյություն ունեն վարձատրության
երկու հիմնական ձևեր՝ գործավարձ և ժամանակավարձ, դրանցից ածանցվում
են նաև վարձատրության մի շարք սիստեմներ։ Վարձատրության ձևը պետք
է կապված լինի այն արդյունքի հետ, որն ստացվում է տվյալ արտադրողի
աշխատանքով։ Այսպիսի անմիջական կապ է արտահայտում գործավարձը՝
արտադրության այն պրոցեսներում, որտեղ գերիշխում է ձեռքի, ձեռքի-մեքե-
նայական աշխատանքը, երբ ստացված արդյունքը հնարավոր է արտահայտել
համապատասխան չափման միավորներով։

Սակայն աշխատավարձի կարգավորումը ցույց տվեց, որ ոչ բոլոր դեպ-
քերում է գործավարձը վարձատրության արդյունավետ ձև։ Կան արտադրու-
թյան այնպիսի պրոցեսներ, երբ հնարավոր չէ անմիջականորեն չափել առան-
ձին արտադրողի արդյունքը, կամ արտադրության պրոցեսի վրա տվյալ
աշխատողի ազդեցությունն այնքան էլ վճռական նշանակություն չունի։ Այս-
պես, օրինակ, քիմիական և մետալուրգիական արդյունաբերության ճյուղերի
ապարատուրային և մեքենայացված մետալուրգիական պրոցեսներում առան-
ձին արտադրողի դերը վճռական չէ։ Այստեղ գործի հաջողությունը կախված է
բրիգադայի, տվյալ տեղամասի կոլեկտիվի բոլոր անդամների կոորդինացված

համատեղ աշխատանքից։ Այսպիսի դեպքերում կիրառում են բրիգադային գործավարձի, կամ ժամանակավարձի սիստեմը։

Աշխատավարձի կարգավորմամբ զգալի փոփոխություններ են կատարվել նաև վարձատրության ձևերի մեջ։ Նախ՝ որոշ չափով կրճատվել է անհատական գործավարձը, շատ դեպքերում այն փոխարինվել է բրիգադային գործավարձով։ Համարյա վերացվել է պրոգրեսիվ գործավարձային սիստեմը, որը քիչ արդյունավետ էր։ Աշխատավարձի կարգավորմամբ վարձատրության այդ սիստեմը փոխարինվել է գործավարձային պարգևատրումների սիստեմով, որն ավելի արդյունավետ ձև է, ապահովում է բանվորների նյութական շահագրգռվածությունը և նպաստում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Վերջապես աշխատավարձի ձևերի կատարելագործումն արտահայտվում է նրանով, որ աճել են ժամանակավարձային վարձատրության դերն ու նշանակությունը, հատկապես ժամանակավարձային պարգևատրումների սիստեմը։

Աշխատավարձի կարգավորմամբ կատարելագործվեց նաև ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների վարձատրության սիստեմը, այստեղ ևս պաշտոնական ռոճիկների սխեմաները կազմելու բնագավառում կային խոշոր թերություններ, որոնք բացատրվում էին նաև գերատեսչական հին սիստեմի առկայությամբ։ Այս կատեգորիայի աշխատողների վարձատրության բնագավառում եղած խոշոր թերություններն էին՝ հավասար աշխատանքի համար անհավասար վարձատրությունը, հավասարեցման դեպքերը, առանձին ղեկավար աշխատողների ռոճիկների չհիմնավորված բարձր մակարդակը և այլն։ Այսպես՝ մինչև աշխատավարձի կարգավորումը ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները չէին խմբավորվել միասնական ցուցանիշներով՝ տարբեր գերատեսչությունների ենթարկվելու հետևանքով, որի հիման վրա շերտավորված կարգով էր սահմանվում ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծառայողների վարձատրությունը, իսկ դրա հետևանքով խեղաթյուրվում էին տվյալ կատեգորիայի աշխատողների վարձատրության սկզբունքները։

Հայտնի է, որ ձեռնարկության ղեկավարների՝ դիրեկտորի, գլխավոր ինժեների և նույն կարգի մյուս աշխատողների վարձատրության չափը կախված է ձեռնարկության հզորությունից, նրա կառուցվածքից, թողարկվող արտադրանքի չափից, բանվորների թվից և այլն։ Սակայն նախկին ռոճիկների սխեմաներում այս տարրական սկզբունքներն անտեսված էին։ Այսպես՝ Ախթալայի հանքում դիրեկտորը, գլխավոր ինժեները և մի շարք այլ աշխատողներ ավելի բարձր աշխատավարձ էին ստանում, քան նույն կատեգորիայի աշխատողները Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատում։ Ներկայումս այդ թերությունը վերացված է։

Աշխատավարձի կարգավորմամբ զգալի չափով կատարելագործվել են նաև պարգևատրումների սիստեմները։ Այստեղ ամենից առաջ վերացվել է պարգևատրման համար գոյություն ունեցող ցուցանիշների բազմազանությունը, որի շնորհիվ պլանների կատարման ու գերակատարման համար բանվորներին պարգևատրում են որոշակի և պարզ ցուցանիշներով։ Պարգևատրման չափը շերտավորված է ըստ արտադրության ճյուղերի, ցեխերի և տեղամասերի։

Պարգևատրման նոր դրույթներով բանվորներին խրախուսում են ո՛չ միայն քանակական ցուցանիշների, այլև որակական՝ խոտանի, պարապուրդների



նվազեցման, հումքի, էլեկտրաէներգիայի, վառելիքի, ջրի, գոլորշու և այլ միջոցների խնայողաբար օգտագործման համար։

Վերացել են ինժեներա-տեխնիկական աշխատողների պարգևատրման բնագավառում եղած թերությունները ևս։ Մինչև կարգավորումը ձեռնարկության ղեկավար աշխատողների պարգևատրման տոկոսն ավելի բարձր էր, քան մյուս ինժեներա-տեխնիկական աշխատողներինը։ Այդ տնտեսապես հիմնավորված չէր և խորացնում էր աշխատավարձի տարբեր մակարդակների միջև եղած ճեղքվածքը. պարգևատրման նոր դրույթներով այս թերությունը վերացված է։ Նոր դրույթների համաձայն, ձեռնարկության ղեկավար կազմը և ինժեներա-տեխնիկական աշխատողները պարգևատրվում են գերազանցապես որակական ցուցանիշների, ինքնարժեքի իջեցման, պլանների կատարման և գերակատարման համար։

Չնայած աշխատավարձի կարգավորման դրույքները ժողտնտխորհի իրավասության տակ գտնվող առանձին ձեռնարկություններում ու ճյուղերում դեռևս հարկ եղած հետևողականությամբ չեն իրագործվում, կատարվում են շեղումներ, բայց և այնպես, աշխատավարձի կարգավորումն ինչպես ամբողջ Միությունում, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում, նպաստեց պլանային առաջադրանքների կատարմանն ու գերակատարմանը, արտադրության որակական ու քանակական ցուցանիշների բարելավմանը, բանվորների նյութական շահագրգռվածության, նրանց հասույթների ու աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

1956—1960 թթ. ընթացքում աշխատավարձը կարգավորվեց նյութական արտադրության ճյուղերում, որի շնորհիվ զգալի չափով բարելավվեց արտադրության աշխատողների բարեկեցությունը։

Ժողովրդի բարեկեցության բարձրացման՝ պարտիայի ծրագրի պահանջի կենսագործման փայլուն օրինակը հանդիսացավ ՍՍՌՄ Գերագույն սովետի 1964 թ. հուլիսյան սեսիայի որոշումը՝ ոչ արտադրական ոլորտի բազմամիլիոն աշխատողների աշխատավարձի բարձրացման և կոլտնտեսականներին կենսաթոշակներ ու նպաստներ տալու մասին։ Այս որոշմամբ ոչ միայն բարձրանում է ժողովրդի բարեկեցությունը, այլև կարգավորվում աշխատավաստակը ոչ արտադրական ոլորտներում։

# ՕՐՎԱ հարցեր

## ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԻ ՀԱՐՑԸ ՀՐԱՏԱՊ Է

*Ժողովրդատնտեսական շահերի տեսակետից արտադրանքի որակի բարձրացումը, փաստորեն, նշանակում է նաև արտադրանքի քանակական ավելացում: Այստեղ իր արտահայտությունն է գտնում մատերիալիստական դիալեկտիկայի՝ որակը քանակի վերածվելու օրենքը:* Իրոք, արտադրանքի որակի բարձրացումը ժողովրդատնտեսական տեսակետից, փաստորեն, նշանակում է նաև արտադրանքի քանակական ավելացում, քանի որ ավելի որակյալ արտադրանքը գործածության ընթացքում փոխարինում է ավելի մեծ քանակի ոչ որակյալ արտադրանքին: *Օրինակ, որևէ արտադրության միջոց, ասենք՝ հաստոցը իր տեխնիկական բարձր որակի ու դիմացկունության շնորհիվ արտադրության պրոցեսում կարող է փոխարինել երկու կամ մի քանի ցածրորակ և բարոյապես մաշված հաստոցի: Կամ ասենք, մարդը տարեկան գործածում է 5—6 զույգ ցածրորակ կոշիկ, որոնք կարճ ժամանակից հետո մաշվում են, մինչդեռ 3—4 զույգ բարձրորակ կոշիկը կարող է լիովին բավարարել մեկ մարդու տարեկան պահանջները կոշկի նկատմամբ: Նույնը վերաբերում է նաև սննդամթերքներին: Ավելի քիչ քանակի, բայց ավելի սննդատու և բարձր կալորիականությամբ սննդամթերքը փոխարինում է նույն կամ այլ տեսակի ցածրորակ սննդամթերքների մեծ քանակին: Հետևաբար* պարտիայի ծրագրում ընթացիկ քսանամյակի համար առաջադրված տնտեսական զարգացման խնդիրները կարող են իրագործվել ոչ միայն արտադրանքի քանակական ավելացման, այլև արտադրանքի որակի բարձրացման միջոցով:

***

*Արտադրանքի որակի սիստեմատիկ բարձրացման անհրաժեշտությունը անմիջականորեն բխում է սոցիալիստական տնտեսության էությունից, սոցիալիստական արտադրության նպատակից, այն է՝ ավելի ու ավելի լրիվ բավարարել մարդկանց, հասարակության անընդհատ աճող նյութական և կուլտուրական պահանջմունքները: Այդ պահանջմունքների բավարարումը ենթադրում է ոչ միայն որոշ տեսակի ու քանակի սպառման առարկաներ, այլև նրանց որակի անընդհատ բարձրացում: Այստեղ հարցը վերաբերում է արտադրանքի (ապրանքի) սպառողական արժեքի դերին և նշանակությանը սոցիալիստական տնտեսության պայմաններում:*



*Արտադրության, տեխնիկայի ու գիտության զարգացմանը համընթաց ավելանում են սպառման առարկաների տեսակները, առաջ են գալիս նորանոր սպառողական արժեքներ: Մինչև վերջին ժամանակներս մարդիկ պատկերացում չունեին այնպիսի սպառողական արժեքների մասին, ինչպիսիք են՝ սառնարանը, լվացքի մեքենան, ռադիոընդունիչը, հեռուստացույցը, արհեստական մանրաթելը և այլն: Սակայն էականը միայն նոր տեսակի սպառողական արժեքների առաջացումը չէ, այլև, առհասարակ, սպառողական արժեքների որակի բարձրացումը:*

*Անհրաժեշտ է նշել, որ մարքսիստական քաղաքատնտեսության մեջ առանձին տնտեսագետներ թերագնահատում, անտեսում են սպառողական արժեքի դերը տնտեսական կյանքում, մասնավորապես սոցիալիզմի պայմաններում: Ըստ նրանց, սպառողական արժեքը քաղաքատնտեսական կատեգորիա չէ և դրա ուսումնասիրությամբ պետք է զբաղվեն միայն տեխնիկական գիտություններն ու ապրանքագիտությունը: Այդ սխալ մոտեցում է: Մարքսիստական քաղաքատնտեսությունը չի ժխտում սպառողական արժեքի տնտեսական մեծ դերը: Մարքսիզմի կլասիկները՝ Մարքսը, Էնգելսը, Լենինը բազմիցս ընդգծել են այդ հանգամանքը: Մարքսիստական քաղաքատնտեսությունը պատշաճ տեղ է հատկացնում սպառողական արժեքին: Մարքսը նշում էր, որ «սպառողական արժեքները կազմում են հարստության իրային բովանդակությունը, ինչ հասարակական ձև էլ ունենա այդ հարստությունը» (Կ. Մարքս, Կապիտալ, հատ. I, էջ 42, Հայպետհրատ, 1954):*

*Այսպիսով, Մարքսը ընդգծում էր սպառողական արժեքի կարևոր դերը իր տնտեսագիտական ուսմունքում և նշում, որ սպառողական արժեքի դերն ու նշանակությունը գնահատելիս պետք է ելնել «տվյալ տնտեսական կազմավորման», այսինքն՝ տվյալ հասարակական-տնտեսական ֆորմացիայի վերլուծումից:*

*Նախ և առաջ խոշոր ժողովրդատնտեսական նշանակություն ունի արտադրության միջոցների որակի բարձրացումը, որը միաժամանակ ծառայում է սպառման առարկաների արտադրության համար: Սակայն քիչ չեն փաստերը, երբ, ինչպես ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության մեջ, այնպես էլ մասնավորապես Հայկական ՍՍՌ-ում, արտադրության միջոցները ցածրորակ, երբեմն նաև խոտան են լինում: Այսպես, օրինակ, Լուսավանի գործիքաշինական գործարանը թողարկում է չուգունի անորակ ձուլածոներ, որտեղ միայն խոտանը կազմում է արտադրանքի 20 տոկոսը: Երևանի ավտոպահեստամասերի գործարանը 1963 թվականին խոտան արտադրանք թողարկելու համար կրել է 189 հազար ռուբլու վնաս, ցածրորակ արտադրանքի համար սպառողներից ստացել է 167 բողոք՝ 2710 դետալի համար և անորակ լինելու պատճառով գործարանին են վերադարձվել 20.289 դետալ: Լուրջ բողոքներ կան նաև Երևանի ֆրեզերային հաստոցների, էլեկտրալամպերի գործարանի արտադրանքի վերաբերյալ և այլն:*

*Ցածրորակ արտադրանքի թողարկումը մեծ վնաս է հասցնում երկրի տնտեսությանը: Այսպես. ՍՍՌՄ-ում մեքենաների և սարքավորումների վերանորոգման վրա տարեկան ծախսվում է մոտ 15 միլիարդ ռուբլի, վերանորոգման վրա աշխատում են ավելի քան 2 միլիոն մարդ և այդ գործով զբաղված են մոտ 800 հազար հաստոց: Ինչ խոսք, որ եթե բոլոր ձեռնարկությունները թողարկեն բարձրորակ արտադրության միջոցներ, այդ թվերը մեծ չափով կնվազեն, և ժողովրդական տնտեսությունը դրանից մեծ օգուտ կստանա:*

*Արտադրանքի որակի բարձրացումը հաճախ կապված է արտադրության ծախքերի, ինքնարժեքի բարձրացման և, հետևաբար, արտադրանքի գնի հետ: Տնտեսվարներից ոմանք, խուսափելով արտադրանքի որակի բարձրացման հետ կապված ինքնարժեքի որոշ մեծացման վտանգից, անտեսում են որակի հարցը, իրենց ուշադրությունը կենտրոնացնելով համախառն արտադրանքի ավելացման և ինքնարժեքի իջեցման պլանների կատարման վրա: Մինչդեռ երբեմն արտադրանքի որակի բարձրացման համար կարելի է որոշ չափով և ժա-*

մանակավորապես բարձրացնել ինքնարժեքը, եթե դրա ժողովրդատնտեսական
արդյունավետությունը գերակշռում է ինքնարժեքի որոշ բարձրացման: Նման
դեպքերում առանձին ձեռնարկությունների շահերը, նրանց եկամտաբերության
շահերը պետք է ենթարկվեն ժողովրդատնտեսական, համապետական շահերին:

Երբեմն ինքնարժեքի իջեցումը կատարվում է արտադրանքի որակի վատ-
թարացման հաշվին: Այսպես, օրինակ, «Վոլգա» ավտոմեքենայի՝ սկզբում թո-
ղարկվող շարժիչները անխափան գործում էին մոտ 130 հազար կիլոմետր,
հետագայում այդ տարածությունը կրճատվեց 15 տոկոսով: Ալտայան մոտո-
րային գործարանը բարելավումներ մտցնելով բարձրացրեց մոտորի վառելիքա-
յին ապարատուրան, սակայն այդ բարձրացրեց արտադրանքի ինքնարժեքը.
մոտորի սպառողներն ավելի բարձրորակ արտադրանք ստանալով շահեցին,
իսկ գործարանը պլանային ինքնարժեքի մեծացման հետևանքով ֆինանսական
դժվարություններ կրեց: Մոսկվայի ավտոդողերի գործարանում բարելավվեցին
թեթև մարդատար ավտոմեքենաների դողերը, որի շնորհիվ նրանց դիմացկու-
նությունը բարձրացավ 30 տոկոսով: Դրա ժողովրդատնտեսական շահավետու-
թյունն արտահայտվեց 630 հազար ռուբլով, իսկ ավտոդողերի ինքնարժեքը մե-
ծացավ 300 հազար ռուբլով: Ինչպես տեսնում ենք, արտադրանքի որակի բարձ-
րացումը տվեց ժողովրդատնտեսական զգալի արդյունք, իսկ գործարանի տնտե-
սական գործունեության ցուցանիշները վատացան (տե՛ս «Պրավդա», 26 մար-
տի, 1964 թ.): Մեր կարծիքով, նման դեպքերում առաջնությունը պետք է տալ
արտադրանքի որակի բարձրացման ժողովրդատնտեսական նշանակությանը,
եթե նույնիսկ դրա հետևանքով իջնում են ձեռնարկության տնտեսական ցուցա-
նիշները: Անհրաժեշտ է մշակել միջոցառումների մի այնպիսի սիստեմ, որ եթե
նման դեպքերում արտադրանքի որակի բարձրացման հետևանքով ձեռնարկու-
թյունը տնտեսապես տուժում է, ձեռնարկությունը պետք է ստանա օգնություն
և ունենա որոշ արտոնություններ: Գուցե հարկ լինի ստեղծել որակի բարձրաց-
ման հատուկ դրամական ֆոնդ և դրանից ֆինանսապես օգնել այն ձեռնար-
կություններին, որոնք արտադրանքի որակի բարձրացման հետևանքով տնտե-
սապես տուժում են:

Արտադրանքի որակի բարձրացումն անմիջականորեն առնչվում է նրա
գնի հետ, երբ բարձրորակ արտադրանք տվող ձեռնարկությունը տուժում է
(ինքնարժեքի որոշ անխուսափելի բարձրացման դեպքում): Անհրաժեշտ է
մշակել արտադրանքի գների մի այնպիսի սիստեմ, որը նյութապես շահագրգռի
ձեռնարկություններին՝ բարձրացնելու արտադրանքի որակը: Մեր կարծիքով
պետք է դիֆերենցված գներ նշանակվեն բոլոր տեսակի արտադրանքների տար-
բեր որակների համար, ավելի մեծացնել բարձրորակ և ցածրորակ արտա-
դրանքների գների մեջ եղած տարբերությունը, որը նյութական շահագրգռվա-
ծություն կառաջացնի բաձրորակ արտադրանք թողարկելու համար, կբարձրաց-
նի ձեռնարկության եկամտաբերությունը: Այսպիսով, բարձրորակ արտադրանք
թողարկելու դեպքում տնտեսապես կշահի ինչպես բարձրորակ արտադրանք
տվող ձեռնարկությունը, այնպես էլ սպառողը: Սպառողին տնտեսապես ձեռն-
տու է բարձրորակ արտադրանք ստանալ նույնիսկ ավելի բարձր գներով, քան
ցածրորակ արտադրանք՝ ցածր գնով: Պետք է մշակել արտադրանքի ամեն մի
տեսակի որակի ցուցանիշների սանդղակ, դիֆերենցել գները այն ձևով, որ
բարձրորակ արտադրանքի համար ավելի բարձր գին տրվի:

Վերջերս մեր մամուլում հաճախ է խոսվում պլանավորման, նրա ցուցա-
նիշների կատարելագործման մասին: Ձեռնարկությունների պլաններում մյուս
կարևորագույն ցուցանիշների հետ միասին իրենց արտահայտությունը պետք է
գտնեն նաև արտադրանքի որակի բարձրացման ցուցանիշները: Ակադեմիկոս
Վ. Տրապեզնիկովը «Պրավդա» թերթի 1963 թվականի հոկտեմբերի 20-ի հա-
մարում հրապարակված «Չափանիշը որակն է» հոդվածում առաջարկում է ար-
տադրության պլանավորման ժամանակ անպայման հաշվի առնել արտադրանքի
որակի բարձրացման ցուցանիշները: Պլանավորման այնպիսի հիմնական ցու-
ցանիշների կողքին, ինչպիսիք են՝ համախառն արտադրանքը, աշխատանքի ար-



տադրողականության բարձրացումը, ինքնարժեքի իջեցումը, պլանային զուտ
եկամուտը, պետք է նշվեն նաև արտադրանքի որակի ցուցանիշները, արտա-
դրանքի որակավորման համապատասխան կոիֆիցենտները և արտադրության
պլանը կատարված համարել միայն այն ժամանակ, երբ մյուս հիմնական ցու-
ցանիշների հետ միասին կատարված և գերակատարված կլինեն նաև արտա-
դրանքի որակի վերաբերյալ ցուցանիշները:

Արտադրանքի որակի բարելավման գործում նյութական շահագրգռվածու-
թյան բարձրացման նպատակով կարելի է պլանային և արտապլանային շա-
հույթից ավելի մեծ տոկոս հատկացնել այն ձեռնարկություններին, որոնք ավելի
բարձրորակ արտադրանք են տալիս: Պարգևների օգտագործման միջոցով
պետք է նյութապես խրախուսվեն բարձրորակ արտադրանք թողարկող ցեխե-
րը, տեղամասերը, առանձին բանվորներ, ինժեներա-տեխնիկական աշխա-
տողներ: Նյութական շահագրգռման միջոցների հետ միասին արտադրանքի
որակի բարձրացման գործում մեծ նշանակություն ունեն նաև դաստիարակչա-
կան մեթոդները—ամեն մի աշխատողին բացատրել բարձրորակ արտադրանքի
ժողովրդատնտեսական նշանակությունը, լայնորեն տարածել բարձրորակ ար-
տադրանք տվող բանվորների փորձը, բարոյապես խրախուսել նրանց, սոց-
մրցման պայմանագրերում արտադրանքի որակի բարձրացման հարցերին
հատկացնել կենտրոնական տեղերից մեկը և այլն:

***

Արտադրանքի որակի բարձրացման հարցը համաժողովրդատնտեսական
նշանակություն ունի և վերաբերում է ոչ միայն արդյունաբերությանն ու շինա-
րարությանը, այլև գյուղատնտեսությանը, տրանսպորտին, կապին, նյութական
արտադրության բոլոր ոլորտներին: Արդյունաբերությունից և շինարարությու-
նից հետո կարևոր նշանակություն ունի գյուղատնտեսական արտադրանքի որա-
կի բարձրացումը մանավանդ այն պատճառով, որ գյուղատնտեսությունն այն
ճյուղն է, որ վճռական դեր է կատարում մարդկանց սպառման առարկաների
մատակարարման, հատկապես սննդամթերքների մատակարարման գործում:
Հացահատիկի, բանջարեղենի բարձրորակ, մրգերի, խաղողի ավելի որակավոր
տեսակները և բարձր շաքարայնությունը, մսի բարձր որակը, կաթի յուղայնու-
թյունը, ճակնդեղի շաքարայնությունը և այլն չափազանց կարևոր նշանակու-
թյուն ունեն ինչպես բնակչությանը բարձրորակ սննդամթերքներով, այնպես էլ
սննդի և թեթև արդյունաբերությունը բարձրորակ հումքով ապահովելու տեսա-
կետից: Հետևաբար սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողների
խնդիրը ոչ միայն գյուղատնտեսական մթերքների արտադրանքի ավելացումը,
նրա ինքնարժեքի իջեցումն է, այլև որակի բարձրացումը:

Եթե արտադրության միջոցների բարձրորակությանը կամ ցածրորակու-
թյանը տեղյակ են գլխավորապես միայն նյութական արտադրության մեջ աշ-
խատողները, ապա սպառման առարկաների որակն ակնհայտ է դառնում բոլոր
սպառողների, Սովետական Միության բոլոր քաղաքացիների համար:

Տարեցտարի ավելանում է լայն սպառման առարկաների արտադրությու-
նը և դրա հիման վրա ապրանքաշրջանառությունը: 1963 թվականին ՍՍՌՄ
պետական և կոոպերատիվ մանրածախ առևտրի շրջանառության ծավալը հա-
սավ 91,6 միլիարդ ռուբլու, որը 5 տոկոսով ավելի էր 1962 թվականի ապրան-
քաշրջանառության ծավալից: Հայկական ՍՍՌ պետական և կոոպերատիվ
մանրածախ առևտրի ապրանքաշրջանառության ծավալը 1963 թվականին կազ-
մեց 627 միլիոն ռուբլի, որը 6 տոկոսով ավելի էր, քան 1962 թվականինը: Ընդ-
որում, այսպես կոչված, երկարատև գործածության առարկաների վաճառքը
ընդհանրապես աճել է ավելի մեծ չափով, քան սննդամթերքներինը: Այս օրինա-
չափ պրոցես է ինչպես ամբողջ Սովետական Միության, այնպես էլ, մասնավո-
րապես, Հայաստանի համար և աշխատավորների կենսամակարդակի բարձրաց-

ման կարևոր ցուցանիշներից մեկն է։ Այստեղից անհրաժեշտորեն բխում է, հատկապես, այդ երկարատև սպառման առարկաների որակի բարձրացման, նրանց հարմարավետության, դիմացկունության, գործածության ժամկետի երկարացման, գեղեցկացնելու նշանակությունը. այս ուղղությամբ կարևոր դեր է կատարում քիմիական արդյունաբերության զարգացումը, նրա նվաճումների ներդրումը լայն սպառման առարկաների արտադրության մեջ։

Տարեցտարի մեր երկրում ոչ միայն ավելանում է ապրանքաշրջանառությունը, առաջ են գալիս նորանոր տեսակի լայն սպառման առարկաներ, այլև ընդհանուր առմամբ բարձրանում է սպառման առարկաների որակը։ Սակայն դրա հետ մեկտեղ մեր արդյունաբերության, հատկապես թեթև արդյունաբերության շատ ձեռնարկություններ թողարկում են ցածրորակ արտադրանք, որն անտարակույս չի կարող բավարարել աշխատավորների աճող պահանջմունքները։ Այդպիսի ցածրորակ սպառման առարկաներ են արտադրում, օրինակ, Լենինականի կենցաղային սառնարանների, հեծանիվների գործարանները, Կիրովականի փայտամշակման կոմբինատը, Երևանի կույբիշևի անվան ֆաբրիկան, Կիրովի անվան փայտամշակման կոմբինատը, Դիլիջանի կահույքի գործարանը և այլն։ Արտադրանքի առանձին հնացած և ցածրորակ տեսակներ է թողարկում նաև Շահումյանի տրիկոտաժի ֆաբրիկան, կոշիկի արտադրության «Մասիս» ֆիրման և այլն։

Ցածրորակ սպառման առարկաների արտադրությունը վնաս է հասցնում ոչ միայն սպառողին, այլև արտադրողին ու առևտրական կազմակերպությանը։ Այդ մասին է վկայում այն փաստը, որ սահմանված նորմատիվներից ավելի մեծ չափով են աճում ապրանքային պաշարները ապրանքաշրջանառության ոլորտում։ Ներկայումս առևտրական ցանցում նորմատիվներից ավելի ապրանքների պաշարների արժեքը ՍՍՌՄ-ում հասնում է մոտ 2,5 միլիարդ ռուբլու. դրանք չեն վաճառվել և դրա հիմնական պատճառը նրանց ցածրորակությունն է, ասորտիմենտին չհամապատասխանելը։ Դրա հետ միասին փաստերը ցույց են տալիս, որ ապրանքային պաշարների աճի տեմպերը գերազանցում են մանրածախ ապրանքաշրջանառության աճի տեմպերին։ Այդ երևում է նրանից, որ վերջին հինգ տարում ՍՍՌՄ-ում մանրածախ առևտրի ապրանքաշրջանառությունն ավելացավ 38, իսկ ապրանքային պաշարներն ավելացան 57 տոկոսով։ Մի այլ բացասական ցուցանիշ նույն պատկերն է տալիս։ Եթե 1957 թվականին մանրածախ ապրանքների շրջանառության միջին ժամանակաշրջանը կազմում էր 74 օր, ապա 1961 թվականին այն կազմում էր 94 օր, այսինքն՝ դանդաղել էր ընդհանրապես ապրանքների շրջանառությունը և դրանք ավելի երկար ժամանակ էին մնում շրջանառության ոլորտում, քան առաջ։ Այդ փաստը հետևանք է ոչ միայն սպառման առարկաների արտադրանքի ավելացման, այլև դրանց մի մասի ցածր որակի և ասորտիմենտին չհամապատասխանելու։ Հետևաբար, ժողովրդի պահանջմունքների բարձրացումը մի կողմից, ապրանքաշրջանառության մեջ տեղի ունեցող վերը նշված բացասական երևույթները մյուս կողմից, հրատապ են դարձնում սպառման առարկաների որակի բարձրացման հարցը։

Սպառման առարկաների որակի բարձրացումը առաջին հերթին կախված է դրանք արտադրող ձեռնարկությունների աշխատանքից։ Սակայն այդ գործում կարևոր դեր ունեն կատարելու նաև սպառողները, գնորդների լայն հասարակայնությունը և առևտրական կազմակերպությունները։ Առևտրական և արդյունաբերական ձեռնարկությունները պետք է ավելի խոր ուսումնասիրեն բնակչության պահանջմունքները, հաշվի առնեն սպառման կառուցվածքային փոփոխությունները, սեզոնայնությունը, կլիմայական պայմանները, ազգային ճաշակի առանձնահատկությունները և ելնելով դրանցից ճիշտ պլանավորեն սպառման առարկաների արտադրությունը։ Ելնելով բնակչության աճող պահանջմունքներից և առևտրի ոլորտում կուտակված և չվաճառվող ապրանքների բնույթից, առևտրական կազմակերպությունները պետք է ավելի ակտիվ ազդեն արտադրության վրա, անմիջականորեն պատվերներ տան, վերացնեն լիբերալիզմը,



ձեռնարկություններից չընդունեն ցածրորակ և ասորտիմենտին չհամապատասխանող արտադրանք և դրանով նրանց ստիպեն վերակառուցելու իրենց աշխատանքները։ Պետք է ավելի դիֆերենցացնել սպառման առարկաների տեսակավորումը, իջեցնել ավելի ցածրորակ արտադրանքի գինը, գործի դնել նյութական շահագրգռվածության և բարոյական խրախուսման գործոնները։

Մեր կարծիքով պետք է վերանայել պետական և կոոպերատիվ առևտրական կազմակերպությունների և սպառման առարկաներ արտադրող ձեռնարկությունների փոխհարաբերության հարցը։ Ցածրորակության հետևանքով ապրանքները չվաճառվելու համար պատասխան պետք է տա նաև արտադրող ձեռնարկությունը։ Կյանքը, փորձը ցույց են տալիս, որ երբ ձեռնարկությունն անմիջականորեն զգում է գնորդի պահանջները, ավելի արագ է վերակառուցվում և համապատասխան արտադրանք թողարկում։ Նպատակահարմար է, որ արտադրական ձեռնարկություններն ունենան իրենց ֆիրմային խանութները և նրանց միջոցով անմիջական կապ ստեղծեն սպառողի հետ, հաշվի առնեն նրա պահանջմունքները։

Մոսկվայի «Բոլշևիչկա» և Գորկի քաղաքի «Մայակ» միավորումներին արտադրական պլանները տրվում են ոչ թե վերևից, այլ իրենք են կազմում, ելնելով առևտրական կազմակերպությունների պատվերներից։ Բնորոշ է նաև այն, որ ընթացիկ տարվա ամռանը և աշնանը ՍՍՌՄ առանձին մասերում, մանավորապես մեր ռեսպուբլիկայում, առանձին գյուղատնտեսական ձեռնարկություններ իրենց արտադրանքը (բանջարեղեն, կարտոֆիլ, միրգ և այլն) անմիջականորեն վաճառում են սպառողին և ոչ թե առևտրական կազմակերպություններին։ Դա արագացնում է սպառման առարկաները գնորդին հասցնելը, պահպանում է դրանց որակը։

Սպառման առարկաների որակի բարձրացման հարցը չի սահմանափակվում միայն արտադրության ոլորտում։ Կարևոր նշանակություն ունի նաև արտադրանքի որակի պահպանումը արտադրությունից մինչև սպառողը հասցնելու ժամանակամիջոցում։ Պատահում է, որ արտադրությունից սպառողը տանող օղակներում (տրանսպորտ, նյութա-տեխնիկական մատակարարման օրգաններ, բազաներ, առևտրական կազմակերպություններ) զգալի չափով իջնում է ինչպես արտադրության միջոցների, այնպես էլ, մանավանդ, սպառման միջոցների, հատկապես սննդամթերքների որակը՝ դրանց փոխադրման և պահպանման անբավարար դրվածքի հետևանքով։ Անհրաժեշտ է բարելավել տրանսպորտի բոլոր ձևերի և առևտրական կազմակերպությունների աշխատանքը, ինչպես հարկն է կատարելագործել սառցարանները, փաթեթման գործը և այլն։

***

Արտադրանքի որակի բարձրացման հիմնական միջոցներն են՝ արտադրության կատարելագործումը, տեխնիկական պրոգրեսը, տեխնոլոգիական պրոցեսների կարգավորումը, քիմիայի նվաճումների ներդրումը արտադրության մեջ, արտադրության մասնագիտացումը և ստանդարտացումը, աշխատողների որակավորման բարձրացումը, առաջավորների փորձի արմատավորումը և սոցիալիստական մրցման ծավալումը։

Արտադրանքի որակի բարձրացման հարցը արդեն դառնում է մեր տնտեսվարման կարևորագույն հարցերից մեկը։ Պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, սովետական օրգանները, մամուլը սկսել են լուրջ ուշադրություն նվիրել արտադրանքի որակի բարձրացմանը։ Այս տարվա հուլիս ամսին ՍՄԿՊ Մոսկվայի քաղաքային կոմիտեի պլենումը քննության առավ արտադրանքի որակի բարձրացման հարցը «Մոսկովյան՝ կնշանակի գերազանց» նշանաբանով։ ՀԿՊ Կենտկոմի նախագահությունը ևս որոշեց պայքար ծավալել արտադրանքի որակի բարձրացման համար։

Կիրովականի առանձին ձեռնարկություններում անցկացվեցին դրան նվիրված կոնֆերանսներ։ Առանձնակի հետաքրքրություն է ներկայացնում

Մերձվոլգյան ժողտնտխորհի, հատկապես Սարատով քաղաքի մի շարք ձեռնարկությունների ձեռներեցությունն ու պայքարը անթերի արտադրանքի թողարկման համար։ Սարատովի ատամնակտրիչ (зуборезная) հաստոցների գործարանի կոլեկտիվը խնդիր է դրել բարձրորակ արտադրանք թողարկել և այն ներկայացնել առաջին հանձնումով։ Ձեռք առնված մի շարք միջոցների շնորհիվ գործարանի արտադրանքի 95 տոկոսը տրվում է առաջին հանձնումով, իսկ ռեկլամացիաների թիվը կրճատվել է ավելի քան երկու անգամ։ Սարատովցիների այդ փորձը պետք է տարածել նաև մեր ռեսպուբլիկայում [1]։

Դեպի կոմունիզմ ընթացող մեր երկիրը ձեռք է բերել պատմական հսկայական նվաճումներ արտադրության, տեխնիկայի, գիտության, կուլտուրայի և արվեստի ասպարեզներում։ Ժամանակն է՝ Պատրաստված է ՍՍՌՄ–ում դրոշմը կրող մեր արտադրանքը լինի ամենաորակյալը ամբողջ աշխարհում։ Մեր նպատակն է պատմական մոտակա ժամանակաշրջանում հասնել և անցնել առաջավոր կապիտալիստական երկիր ԱՄՆ-ից ինչպես արտադրանքի բացարձակ ծավալի, այնպես էլ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի տեսակետից։ Միաժամանակ ԱՄՆ-ին և մյուս գլխավոր կապիտալիստական երկրներին մենք պետք է հասնենք ու անցնենք նաև բոլոր տեսակի արտադրանքների որակով։

Սովետական արտադրանքն իր որակով պետք է լինի ամենաժամանակակիցը, ամենաառաջավորը, դիմացկունը, գեղեցիկը և հարմարը թե արտադրողական և թե անձնական սպառման համար։ Դեպի կոմունիզմ գնացող հասարակությունը կիրագործի պարտիայի ծրագրում առաջադրված այս խնդիրը ևս. «Սովետական ձեռնարկությունների արտադրանքի որակը զգալիորեն բարձր պետք է լինի, քան լավագույն կապիտալիստական ձեռնարկություններինը (ՍՄԿՊ ծրագիր, Հայպետհրատ, 1961, էջ 103)։

Ս. ԶՈՒՐԱԲՅԱՆ
Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅԱՄԲ ԱՃԵՑՆԵԼ ԳԻՏԱԿԱՆ ԿԱԴՐԵՐԸ

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորման, նոր մարդու դաստիարակման գործում ակտիվ դեր է պատկանում ժամանակակից գիտությանը։ Այդ կապակցությամբ առանձնահատուկ նշանակություն են ստանում գիտական, գիտամանկավարժական կադրերի ընտրության և պատրաստման հարցերը, որոնք միշտ էլ եղել են պարտիայի և կառավարության ուշադրության կենտրոնում։ Մեր ռեսպուբլիկայում այսօր գործում են 75 գիտահետազոտական և 11 բարձրագույն ուսումնական հաստատություններ։ Գիտական հաստատությունների քանակական աճին զուգընթաց տեղի են ունեցել նաև զգալի որակական փոփոխություններ։ Այժմ ռեսպուբլիկայում լայն զարգացում են ստացել ժամանակակից գիտության նորագույն ուղղությունները, ինչպիսիք են՝ աստրոֆիզիկան, տեսական և տեխնիկական կիբեռնետիկան, պոլիմերների քիմիան, քվանտային օպտիկան, միկրոբիոլոգիական սինթեզը, ռադիոբիոլոգիան և այլն։ Բյուրականի աստրո-ֆիզիկական աստղադիտարանի գիտական հետազոտությունները լայն ճանաչում են գտել ամբողջ աշխարհում և այժմ նրա շուրջը ստեղծվել և զարգանում է գիտահետազոտական հիմնարկությունների մի ամբողջ խումբ (աստրոֆիզիկա, ռադիոֆիզիկա, ռադիոէլեկտրոնիկա և այլն)։

Հայրենական գիտության գանձարանում արժանի ավանդ են ներդրել Հայաստանի մաթեմատիկայի և մեխանիկայի բնագավառի գիտնականները։ Քիմիական պրոֆիլի ավելի քան տասը գիտական հիմնարկներում բեղմնավոր աշխատանք է կատարվում քիմիական արդյունաբերությունը զարգացնելու ուղղությամբ։ Համեմատաբար վաղ ստեղծված հասարակական գիտությունների բնագավառի հաստատությունները խոր և բազմակողմանի ուսումնասիրություններ են կատարում հայ ժողովրդի պատմության, լեզվի, գրականության և կուլտուրայի ուղղությամբ։

Գիտական հետազոտությունների այսպիսի բուռն վերելքը ռեսպուբլիկայում նոր պահանջներ է առաջադրում նաև գիտական և գիտա-մանկավարժական կադրերի պատրաստման նկատմամբ։ Եթե 1958 թվականին մեզ մոտ հաշվվում էր 3342 գիտական աշխատող, ապա 1963 թվականին այդ թիվը հասել է 6417-ի։ Գիտահետազոտական և բարձրագույն ուսումնական հաստատություններում աշխատում են 208 գիտության դոկտոր և 1720 գիտության թեկնածու։ Ռեսպուբլիկայում գիտնականների այսպիսի ստվար ջոկատի առկայությունը բարեբար պայմաններ են ստեղծում գիտության ու տեխնիկայի տարբեր ճյուղերում արժեքավոր հետազոտություններ կատարելու և գիտական կադրերի հետագա աճի համար։ Սակայն, ինչպես ցույց է տալիս կյանքը, գիտական աշխատողների պատրաստման ներկայիս տեմպերը չեն բավարարում ժողովրդական տնտեսության ու գիտության աճող պահանջմունքները։ Բացի դրանից, դեռևս փոքր է գիտության ու տեխնիկայի առավել պրոգրեսիվ ճյուղերի գծով մասնագետների պատրաստման տեսակարար կշիռը։ Ռեսպուբլիկայում հարկ եղած աշխատանք չի տարվում գիտության մի շարք առաջատար ճյուղերի գծով գիտական կադրերի պատրաստման ուղղությամբ։

Ինչի՞ հետևանք է այդ։ Չէ՞ որ ասպիրանտուրա ընդունվողների թիվը տարեցտարի աճում է։ Այսպես, 1963 թվականի դեկտեմբերի 1-ի դրությամբ ռեսպուբլիկայի ասպիրանտուրաներում սովորում էին 790 մարդ, այդ թվում ակադեմիայի գծով՝ 176, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության կոմիտեի գծով՝ 229, գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերման մինիստրության գծով 106, առողջապահության մինիստրության գծով՝ 72 ասպիրանտ։ Իրականում մեր ռեսպուբլիկայի համար պատրաստվող ասպիրանտների թիվը զգալիորեն մեծ է, եթե նկատի ունենանք մյուս ռեսպուբլիկաների գիտական հաստատությունների նպատակային ասպիրանտուրաներում, ինչպես նաև հասարակական ասպիրանտուրայում սովորողներին։

Ասպիրանտների թիվը կարող էր ավելի մեծ լինել, եթե կատարվեին ընդունելության տարեկան պլանները։ Բայց դրանք պարբերաբար թերակատարվում են։ Այսպես՝ 1963 թվականին ընդունվել են 254 և ավարտել 69 ասպիրանտ, պլանով նախատեսված 317-ի և 121-ի դիմաց։ Պլանը թերակատարվել է հիմնականում այն մասնագիտությունների հաշվին, որոնք առավել կարևոր ու հեռանկարային են մեր ռեսպուբլիկայի համար։ Այսպես, օրինակ, 1963 թվականին քիմիական գիտությունների գծով ընդունվել են ընդամենը 11 մարդ՝ պլանով նախատեսված 33-ի դիմաց, ֆիզիկամաթեմատիկական գիտությունների գծով՝ 26 մարդ, 50-ի դիմաց։

[1] Այդ փորձի մասին մանրամասն տե՛ս «Экономическая газета», 1 օգոստոսի, 1964 թ.։

Դրությունն առավել անմխիթար է ասպիրանտուրան ավարտելու հարցում:
Շրջանավարտներ տալու 1963 թվականի պլանը ռեսպուբլիկայում կատարված
է ընդամենը 57 տոկոսով, ընդ որում, երկրաբանական-հանքաբանական գիտու-
թյունների գծով՝ 1 հոգի, 6-ի դիմաց, տեխնիկական գիտությունների գծով՝ 9,
38-ի դիմաց, իսկ հասարակական գիտությունների գծով՝ 13, 29-ի դիմաց:
Նույնն էր վիճակը նաև անցած տարիներին:

Դրա պատճառը, առաջին հերթին, մի շարք մինիստրությունների ու գերա-
տեսչությունների, ամենից առաջ՝ գիտությունների ակադեմիայի և բարձրագույն
ու միջնակարգ մասնագիտական կրթության կոմիտեի անբավարար ուշադրու-
թյունն է գիտական կադրերի պատրաստումը պլանավորելու նկատմամբ:

Ասպիրանտների ընդունելության կազմակերպական աշխատանքը շատ
գիտա-հետազոտական ինստիտուտներում ու բուհերում ինքնահոսի է մատ-
նըված. մեծ մասամբ սահմանափակվում են թերթում հայտարարություն տա-
լով և ապա հանգիստ սպասում են դիմումներին ու քննություններին: Մինչդեռ
գիտական հաստատությունները պետք է լայն նախապատրաստական աշխա-
տանք կատարեն մասնագետների շրջանում: Պետք է ավելի լավ օգտագործել
գիտական աշխատողների որակավորման ինստիտուտը, ավելի զարգացնել
հեռակա ասպիրանտուրան, մանավանդ տեսական մասնագիտությունների
գծով: Բոլոր ինստիտուտները չեն, որ օգտագործում են իրենց հնարավորու-
թյունները ասպիրանտներ պատրաստելու համար: Այսպես՝ գիտությունների
ակադեմիայի օրգանական քիմիայի, միկրոբիոլոգիայի, նուրբ օրգանական քի-
միայի ինստիտուտները, ագրոքիմիայի լաբորատորիան գիտությունների շատ
քիչ թեկնածուներ են պատրաստում: Դեռևս անբավարար է ռեսպուբլիկայի գի-
տությունների ակադեմիայի, մինիստրությունների ու գերատեսչությունների
վերահսկողությունը ընդունելության պլանի կատարման նկատմամբ:

Սակայն գիտական կադրերի պատրաստման բնագավառում եղած թերու-
թյունները բնավ էլ չեն սահմանափակվում ընդունելությունների և շրջանա-
վարտներ տալու պլանների թերակատարմամբ: Եթե բոլոր շրջանավարտները
սահմանված ժամկետներին դիսերտացիա պաշտպանեին, ապա դրությունը
լավ կլիներ: Բայց, դժբախտաբար շրջանավարտ է համարվում նա, ով հանձնել
է թեկնածուական մինիմումի քննությունները և կատարել ուսման երեք տարվա
(կամ հեռակա ասպիրանտուրայի համար՝ չորս տարվա) առաջադրանքը: Շրջա-
նավարտների միայն 15—20 տոկոսն է սահմանված ժամկետում դիսերտացիա
պաշտպանում, մնացածները լավագույն դեպքում դիսերտացիա են պաշտպա-
նում ասպիրանտուրան ավարտելուց մեկ-երկու տարի հետո: Նույնիսկ Հայկա-
կան ՍՍՌ գիտությունների ակադեմիայում, որտեղ դրությունը մյուս գերատես-
չությունների համեմատությամբ փոքր-ինչ լավ է, 1963 թվականին ասպիրան-
տուրան ավարտած 23 հոգուց միայն 5-ն են դիսերտացիա պաշտպանել, 5-ն
էլ իրենց աշխատանքները ներկայացրել են պաշտպանության:

Եթե հաշվի առնենք նաև, որ ասպիրանտուրան ավարտածների մոտ 50 տո-
կոսը բոլորովին դիսերտացիա չի պաշտպանում կամ պաշտպանում է երկար
տարիներ անց և բոլորովին այլ թեմայով, ապա պարզ կլինի, թե որքան պե-
տական միջոցներ են վատնվում:



Իսկ որո՞նք են դրա պատճառները:

Ինչ խոսք, գիտական կադրերի պատրաստման գործում գլխավորն այն-
քան քանակը չէ, որքան որակը: Ասպիրանտուրա ընդունելիս չափանիշ պետք է
լինեն ոչ միայն մարդու գիտելիքները, այլև ինքնուրույն ստեղծագործական
մտածողության ունակությունը, ընդհանուր էրուդիցիան, կուլտուրան և կեն-
սափորձը: Ընդունելիս, ոչ ճիշտ ընտրությամբ միայն կարելի է բացատրել
ասպիրանտների ձախողումը: Այսպես՝ գյուղատնտեսական մթերքների արտա-
դրության ու մթերումների մինիստրության անասնաբուծության գիտահետա-
զոտական ինստիտուտում մեղվաբուծության գծով ասպիրանտուրա էր ընդուն-
վել Գրքաշարյանը, չնայած մասնագիտության անհամապատասխանությանը
և նրա ռեֆերատին տրված բացասական գնահատականին: Այստեղ ձախողվե-
լուց հետո Գրքաշարյանին տեղափոխեցին անասնաբուժական ինստիտուտի ոչ
վարակիչ հիվանդությունների ամբիոնը՝ մի նոր մասնագիտությամբ ասպի-
րանտուրան շարունակելու համար: Որոշ ժամանակ անց նրան ետ բերեցին
անասնաբուծության գիտահետազոտական ինստիտուտի կաթի տեխնոլոգիայի
բաժինը, որպես կրտսեր գիտաշխատող, որտեղ նա պետք է ուսումնասիրեր
արդեն երրորդ մասնագիտությունը: Այս ինստիտուտում տեղի են ունեցել աս-
պիրանտների սխալ ընդունելության (Դրոնկինա, Կյուքելյան) և ասպիրանտնե-
րի մաղման մի շարք այլ դեպքեր: Ասպիրանտների պատրաստման գործն ան-
բավարար է նաև հողագործության գիտահետազոտական ինստիտուտում: 1959
և 1960 թվականներին ընդունվածները չեն ավարտել ասպիրանտուրան ուս-
ման ժամկետն անցնելու պատճառով, ընդ որում նրանցից ոչ մեկը դիսեր-
տացիա չի պաշտպանել:

Երևանի պետական համալսարանում 1963 թվականին վատ առաջադիմու-
թյան պատճառով դուրս են մնացել 5 ասպիրանտ: Այսպիսի դեպքեր կան նաև
գիտությունների ակադեմիայում և մի շարք այլ ինստիտուտներում:

Հայաստանի գիտական հաստատություններում եզակի չեն դիսերտացիոն
թեմաները ճիշտ և ժամանակին չընտրելու փաստերը:

Գիտության մի շարք ճյուղերի, մասնավորապես գյուղատնտեսության,
լեզվաբանության, կենսաբանության, բժշկագիտության և այլ մասնագիտու-
թյունների գծով պաշտպանվող դիսերտացիաները հաճախ կրում են նկարա-
գրական բնույթ, դիսերտացիոն թեմաները մշակվում են առանց հետազոտու-
թյան ժամանակակից մեթոդներն ու գիտության ազգակից հեռանկարային
ճյուղերի նվաճումներն օգտագործելու: Երբեմն դիսերտացիաների թեմաները
նեղ են, սակավ նշանակալից: Հաճախ խախտվում են ասպիրանտների դիսեր-
տացիոն թեմաների հաստատման ժամկետները, երբեմն էլ հաստատված թե-
ման ուսման երկրորդ կամ երրորդ տարում փոխվում է: Այսպես՝ Հայկական
ՍՍՌ ԳԱ լեզվի ինստիտուտի ասպիրանտ Վ. Խաչատրյանը (ղեկավար Դունաև-
սկայա, Լենինգրադ) 3-րդ տարում ավարտել է հաստատված թեման, որը ղե-
կավարին ներկայացնելուց հետո է միայն ճանաչվել դիսերտացիայի համար
անհամապատասխան և փոխվել է: Դիսերտացիոն թեմաներ են փոխվել նաև
հողագործության գիտահետազոտական ինստիտուտում. երբեմն դրանք փոխ-
վել են նույնիսկ երկու անգամ. օրինակ՝ ասպիրանտներ Հայրապետյանի, Մա-
նուկյանի (ղեկավար, ակադեմիկոս Գ. Ա. Բաբաջանյան), ասպիրանտ Պետրոս-
յանի (ղեկավար գյուղատնտեսական գիտությունների դոկտոր Ա. Ա. Բաբայան)

թեմաները։ Պարզ է, որ նման դեպքերում հիմնականում մեղավոր են ասպիրանտների ղեկավարները։

Գիտական հաստատությունները հաճախ խախտում են ասպիրանտուրան անցնելու կանոնադրությամբ սահմանված կանոնները։

Պատահում են, որ ուսման երկրորդ տարում ասպիրանտները ոչ ղեկավար ունեն, ոչ աշխատանքի հաստատված պլան, ոչ էլ դիսերտացիոն թեմա։ Այսպես է եղել հայկական մանկավարժական ինստիտուտի ասպիրանտ Մ. Դավթյանի հետ, իսկ Լ. Գրիգորյանին ղեկավար է տրվել ոչ ըստ մասնագիտության, ուստի նա ևս չի ունեցել աշխատանքի պլան և դիսերտացիոն թեմա։ Երևանի պետհամալսարանում ասպիրանտների մեծ մասը աշխատանքի պլան չի ունեցել։ Հայկական մանկավարժական ինստիտուտի 65 ասպիրանտներից 20-ը ատեստավորված չեն եղել և այլն։

Այս փաստերը վկայում են գիտական հաստատությունների և բուհերի գիտական խորհուրդների, նրանց ղեկավարության ու պարտիական կազմակերպությունների պատշաճ վերահսկողության բացակայության մասին։

Դիսերտացիոն աշխատանքների, հատկապես էքսպերիմենտալ թեմաների կատարման որակի ժամկետների վրա խիստ բացասաբար է անդրադառնում էքսպերիմենտալ բազայի, լաբորատոր տարածությունների, ապարատուրայի և համապատասխան նյութերի բացակայությունը։ Այդ վերաբերում է հատկապես Երևանի պետական համալսարանին, օրգանական քիմիայի, միկրոբիոլոգիայի, պոլիտեխնիկական ինստիտուտներին, ագրոքիմիայի լաբորատորիային։

Ժամանակին դիսերտացիա չպաշտպանելու պատճառը հաճախ հետազոտությունների արդյունքների հրապարակումը ձգձգելն է, չնայած այդ ուղղությամբ բազմիցս ընդունված որոշումներին, այն մնում է դիսերտացիաների պաշտպանության գլխավոր խոչընդոտներից մեկը։

Երիտասարդ գիտնականների ծանրաբեռնվածությունը պլանային, գիտական-կազմակերպական և վարչական աշխատանքով նույնպես հաճախ խանգարում է դոկտորական ու թեկնածուական դիսերտացիաների պատրաստմանը։ Երիտասարդ գիտնականներից ոմանց համար չեն ստեղծվում անհրաժեշտ պայմաններ, որպեսզի նրանք ավարտեն իրենց դոկտորական դիսերտացիաները։ Քիմիայի, սև մետալուրգիայի գիտահետազոտական ինստիտուտներում, էլեկտրամեխանիկայի գիտահետազոտական համամիութենական ինստիտուտի հայկական ֆիլիալում և միութենական ենթակայության գրեթե բոլոր ճյուղային ինստիտուտներում խախտվում է ազատ պաշտոններում աշխատողներ վերցնելու և գիտական բաժինների, լաբորատորիաների, սեկտորների ղեկավարների վերընտրության կարգը, որը չի խթանում գիտական կադրերի աճը։

Բայց նույնիսկ հաղթահարելով այդ բոլոր դժվարությունները և ժամկետին պատրաստելով դիսերտացիան, ասպիրանտը դարձյալ չի կարողանում պաշտպանել այն, քանի որ գիտության մի շարք ճյուղերի գծով Հայաստանում չկան այնպիսի գիտական ինստիտուտներ, որոնք իրավունք ունեն ընդունելու դիսերտացիաների պաշտպանությունը։ Մինչդեռ մեզ մոտ կան գիտությունների մեծ թվով դոկտորներ ու թեկնածուներ, և եթե գիտական կադրերի պատրաստման համար պատասխանատու գերատեսչություններն ու կազմակերպությունները ստեղծեն միացյալ գիտական խորհուրդներ, որոնք իրավունք ունենային պաշտ-



պանության համար դիսերտացիաներ ընդունելու ու գիտական կոչումներ շնորհելու, ապա զգալի չափով կկրճատվեին դիսերտացիոն աշխատությունների պաշտպանության ժամկետները։

Ինչպես նշվեց վերևում, այժմ գիտական կադրերի մեծ կարիք է զգացվում, հատկապես, գիտության ու տեխնիկայի նորագույն ճյուղերի բնագավառում։ Այդպիսի կադրեր պատրաստելու համար մենք ասպիրանտներ ենք ուղարկում կենտրոնական գիտական հիմնարկությունները և ձեռնարկում մի շարք այլ միջոցներ, որոնց կենսագործումը, սակայն, դժվարությունների է հանդիպում։ Իսկ տեղում ամե՞ն ինչ արված է։ Օգտագործվո՞ւմ են արդյոք մեր բոլոր ռեզերվները։ Ցավոք սրտի, ստիպված ենք այդ հարցերին բացասական պատասխանել։ Բարձր որակավորում ունեցող գիտնականների մի մասը, օրինակ, Ա. Ա. Ալչուջյանը, Լ. Զ. Ղազարյանը, Ա. Բ. Բաղդասարյանը, Գ. Ի. Տեր-Ստեփանյանը, Գ. Տ. Թադևոսյանը, Ա. Ա. Թալալյանը, Ս. Ն. Մերգելյանը, Գ. Մ. Ղարիբյանը և ուրիշներ, ինչպես հարկն է չեն զբաղվում երիտասարդ գիտնականներ պատրաստելու գործով։ Նույնը կարելի է ասել գիտական աշխատանքի մեծ փորձ ունեցող թեկնածուների մասին։

Այդ հարցին անբավարար ուշադրություն են նվիրում համապատասխան մինիստրությունների, գերատեսչությունների, գիտական հաստատությունների, բուհերի և, հատկապես, միութենական ենթակայության ճյուղային ինստիտուտների ղեկավարները։ Օրինակ, ի հակադրություն էլեկտրատեխնիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական ֆիլիալի, որն ունի 34 ասպիրանտ, մեքենաշինության հայկական գիտահետազոտական, պոլիմերների հայկական գիտահետազոտական ինստիտուտները, մետաղահատ հաստոցների գիտահետազոտական էքսպերիմենտալ ինստիտուտի անդրկովկասյան ֆիլիալը, թեթև և տեքստիլ արդյունաբերության մեքենաշինության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի Երևանի ֆիլիալը չափազանց թույլ են զբաղվում գիտական կադրերի պատրաստմամբ։

Գիտական կադրերի պատրաստման բարելավման միջոցառումների մասին Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի վերջերս ընդունված որոշումից հետո գիտությունների ակադեմիան, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության պետական կոմիտեն, մինիստրությունները և գերատեսչությունները որոշակի քայլեր են արել վերը նշած թերությունները վերացնելու ուղղությամբ։ Սակայն կատարվածը դեռևս բավարար չէ։

Ռեսպուբլիկայի գիտնականները պետք է առավելագույն ջանքեր թափեն գիտական և գիտա-մանկավարժական կադրերի պատրաստման ասպարեզում նոր հաջողությունների հասնելու համար։ Այդ պատվավոր խնդրի լուծման նպատակով, բոլոր անհրաժեշտ պայմաններն ապահովելուց զատ, պահանջվում է նաև, որ ռեսպուբլիկայի գիտությունների ակադեմիան, մինիստրությունները, գերատեսչությունները, գիտական հաստատությունները և բուհերը կոորդինացնեն գիտական կադրերի ընտրության ու պատրաստման աշխատանքները։ Կոորդինացումը պետք է իրականացնի գիտական կադրերի պատրաստման միջգերատեսչական այն խորհուրդը, որն ստեղծված է Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի գիտահետազոտական աշխատանքների կոորդինացման պետական կոմիտեին կից։

Անհրաժեշտ է ապահովել տաղանդավոր երիտասարդության գիտական աճը, համարձակ առաջ քաշել երիտասարդ գիտնականներին, որոնք ընդունակ են ավագ սերնդի ներկայացուցիչների հետ միասին լուծելու ՍՄԿՊ ծրագրով գիտության առջև դրված խնդիրները։

Հ. ԱԶԱՏՅԱՆ, ՅԱ. ԽՈՋԱՄԻՐՅԱՆ

# ԱՇԽԱՏԱԺԱՄԱՆԱԿԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

(Առաջարկության կարգով)

ՍՄԿՊ Ծրագրի խնդիրների իրագործմամբ աշխատավորների աշխատաժամանակը մոտ ապագայում կկազմի ընդամենը 3—4 ժամ, իսկ արտաաշխատանքային ժամանակը համապատասխանորեն 20—21 ժամ։ Մեր հասարակությունը դրան կհասնի միայն երկրի արտադրողական ուժերի զարգացման հզոր վերելքի շնորհիվ։ Աշխատաժամանակի յուրաքանչյուր նոր կրճատման դեպքում պետք է մանրակրկիտ կերպով հաշվի առնել այդ ասպարեզում ձեռք բերված նվաճումները։ Մինչդեռ ներկայումս աշխատաժամանակի սահմանների և որոշ կատեգորիաների աշխատավորների աշխատաժամանակի որոշման սոցիալիստական պրակտիկայում դեռևս գոյություն ունեն մի շարք չլուծված հարցեր։ Մենք այստեղ կանգ կառնենք դրանցից միայն մի քանիսի վրա.

**ա) Որոշ կատեգորիաների աշխատավորների համար աշխատաժամանակի դիֆերենցիալ գրաֆիկ ներդրելու մասին։** Սոցիալիստական պրակտիկայում աշխատանքային օրվա տևողությունը կոնկրետացվում է հիմնականում ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի, այսինքն՝ հաշվի են առնվում աշխատանքի ճյուղային առանձնահատկությունները։ Այդպես է պլանավորվել աշխատանքային օրվա տևողությունը բոլոր նախորդ հնգամյակներում։ Այդպես է պլանավորվել նաև ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 7-ամյա պլանում, ինչպես և ՍՄԿՊ նոր ծրագրում։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների՝ ՍՄԿՊ XXI համագումարի կողմից հաստատված կոնտրոլ թվերում, օրինակ, նշվում են լեռնահանքային և ածխային արդյունաբերության ճյուղային առանձնահատկությունները, որտեղ ստորերկրյա աշխատանքների և աշխատանքի վնասակար պայմաններ ունեցող ցեխերի բանվորների համար սահմանվում է 6-ժամյա աշխատանքային օր։ ՍՄԿՊ նոր ծրագրում նշված է. «Առաջիկա 10 տարվա ընթացքում կիրագործվի անցում վեցժամյա աշխատանքային օրվա՝ կամ 35-ժամյա աշխատանքային շաբաթի՝ երկու հանգստի օրով, իսկ ստորերկրյա աշխատանքներում և աշխատանքի վնասակար պայմաններ ունեցող արտադրություններում՝ հինգժամյա աշխատանքային օրվա կամ 30-ժամյա հնգօրյա աշխատանքային շաբաթի»։

Ինչպես տեսնում ենք, բոլոր դեպքերում աշխատանքային օրվա տևողությունը սահմանվում է ելնելով միայն արտադրության ճյուղային առանձնահատկություններից։ Մինչդեռ սոցիալիստական պրակտիկան ցույց է տալիս, որ աշխատանքային օրվա տևողությունը սահմանելիս պետք է հաշվի առնել նաև անմիջականորեն տվյալ աշխատանքի սպեցիֆիկան, աշխատաժամանակի աշխատանքային ծանրաբեռնվածությունն ու խտությունը՝ որոշ կատեգորիայի աշխատավորների մոտ։

Մեր հասարակության մեջ դեռևս կան առանձին կատեգորիայի աշխատողներ, որոնք աշխատօրվա ամբողջ ընթացքում չունեն աշխատանքային համաչափ ծանրաբեռնվածություն և աշխատանքային զբաղվածություն։ Այս կարգին պետք է դասել, օրինակ, հասարակական սննդի ցանցի մի շարք կատեգորիաների աշխատողներին, կենցաղսպասարկման արհեստանոցներում և քիմիական կետերում պատվերներ ընդունողներին, կուլտուր-լուսավորական հիմնարկներում աշխատողներից՝ էքսկուրսավարներին, գիդ-թարգմանիչներին, բժշկական աշխատողներից՝ քույր-տնտեսվարուհիներին, հականեխողներին և ուրիշների։ Այս կարգի աշխատավորներ կան նաև երկրի ժողովրդական տնտեսության մի շարք այլ ճյուղերում։

Մյուս կողմից՝ կան նաև այլ կատեգորիայի աշխատողներ, որոնք պաշտոնապես նախորոշված իրենց ողջ աշխատանքը կարող են կատարել աշխատանքային օրվա մեկ հատվածի ընթացքում։ Դրանցից են, օրինակ, փոստի աշխատողներից՝ նամակատարները, փոստատարները, կուլտուր լուսավորական հիմնարկների աշխատողներից՝ թատրոնների և կինոթատրոնների հսկիչները, ինքնագործունեության խմբակների ղեկավարները, դասախոսները, պրոպագանդիստները և ուրիշներ։ Մյուս բնագավառների աշխատողներից կարելի է հիշատակել ձեռնարկությունների և հիմնարկների գանձապահներին, հավաքարարներին, սղագիրներին, հյուրանոցների սպասավորներին և ուրիշների։

Ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ դեպքում այս կատեգորիաների աշխատավորների աշխատաժամանակը չի օգտագործվում համաչափորեն, աշխատանքային օրվա ողջ ընթացքում և շատ դատարկ ժամեր ու «ազատ պատուհաններ» են մնում։ Այնինչ այս կատեգորիաների աշխատավորները վարձատրվում են համահավասար այն կատեգորիաների աշխատավորների հետ, որոնք իրենց ողջ աշխատանքի ընթացքում ունեն լրիվ և համաչափ զբաղվածություն և այդպիսի «ազատ պատուհաններ» չունեն։ Հետևապես հասունացել է այս դրությունը շտկելու անհրաժեշտությունը։ Ժամանակն է, որ օրենսդրական կարգով այդ կատեգորիայի աշխատողների համար սահմանվի ոչ թե լրիվ աշխատանքային օր, այլ ոչ լրիվ և դիֆերենցացված աշխատանքային օր (4-ից մինչև 6-ժամվա սահմաններում՝ ելնելով աշխատանքի բնույթից)։ Այս տեսակետից ՍՍՌՄ Մինիստրների սովետի և ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թվականի օգոստոսի 10-ի՝ «Քիմիական մաքրման, լվացքի ընդունման կետերում ոչ լրիվ աշխատանքային օրով աշխատողներ ընդունելու կարգի մասին» որոշումն այդ ուղղությամբ կատարվող առաջին քայլն է։

Հիշյալ կատեգորիաների աշխատավորների համար աշխատաժամանակի դիֆերենցիալ գրաֆիկի սահմանումը կհանգեցնի նրանց արտաաշխատանքային ժամանակի զգալի ավելացման՝ առանց ընդհանուր գործին վնաս հասցնելու։ Ավելին, այդ հնարավորություն կտա հասարակական արտադրության մեջ ընդգրկելու աշխատանքային նոր ռեզերվներ ի հաշիվ նրանց, ովքեր չեն կարող զանազան պատճառներով աշխատել լրիվ աշխատանքային օրվա ընթացքում (առողջության, ընտանեկան հոգսերով ծանրաբեռնված լինելու և այլն), և, հատկապես, ի հաշիվ տնային տնտեսուհիների։

**բ) Որոշ կատեգորիաների աշխատավորների համար աշխատաժամանակի ազատ գրաֆիկ ներդրելու մասին։** Մեզ մոտ կան մի շարք կատեգորիաների աշխատավորներ, որոնց մոտ աշխատանքի բնույթի առանձնահատկությունների շնորհիվ, աշխատանքային պարտականությունների կատարումը չի սահմանափակվում աշխատանքային օրվա պաշտոնական սահմաններով։ Այս կատեգորիայի աշխատողների մոտ արտաաշխատանքային ժամանակի մի մասը վերածվում է աշխատաժամանակի, իսկ երբեմն էլ՝ հակառակը, և այսպիսով արտաաշխատանքային ժամանակի և աշխատաժամանակի միջև եղած սահմանները դառնում են պայմանական։

Այս կարգի աշխատողներից են՝ ձեռնարկությունների, գործարանների, ֆաբրիկաների հրամանատարական և ինժեներա-տեխնիկական կազմը, գիտական աշխատողները, սովետական և պարտիական օրգանների ղեկավար աշխատողները, դասատուները, միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաս-

հսկայական ժամանակ է կորցնում։ Կամ, եթե այդպիսի հաշվառման տեղն ընդունվում է ցեխի անցակետը, ապա աշխատաժամանակը արհեստականորեն կրճատվում է ժամանակի այն մեծությամբ, որը պահանջվում է մինչև աշխատատեղը կամ դազգահը գնալու և վերադառնալու համար։

Այս գործը կարգավորելիս պետք է հաշվի առնել արտասահմանյան երկրների դրական այն փորձը, երբ հաշվառումը կատարում են ոչ թե տաբելների, այլ աշխատատեղերում տեղադրված հատուկ ավտոմատ սարքավորումների միջոցով։ Մեր կարծիքով տնտեսականորեն խիստ նպատակահարմար է, ողջ երկրով մեկ, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում և բոլոր օբյեկտներում առանձին օրենսդրությամբ ներդրվի աշխատավորների աշխատաժամանակի սկիզբը և վերջը որոշող միասնական կարգ, այն է՝ աշխատատեղը գալը և աշխատատեղից հեռանալը։

Սակայն աշխատաժամանակի սահմանների հաշվառման այսպիսի կարգը տնտեսական մեծ օգուտ տալու հետ մեկտեղ ունի նաև բացասական կողմ, այն է՝ ժամանակի վերոհիշյալ ծախսումները (գործարանի դարպասից մինչև աշխատատեղը գնալ-վերադառնալը) աշխատաժամանակի կազմից փոխանցվում են արտաաշխատանքային ժամանակի կազմը։ Չնայած դրան, հենց այսպիսի կարգն է, որ հանդիսանում է ամենից ռացիոնալը և ճիշտը։ Չէ՞ որ արտաաշխատանքային ժամանակի կառուցվածքում արդեն գտնվում են ժամանակի մի շարք համանման ծախսումներ, օրինակ՝ տնից մինչև աշխատավայրը գնալը և վերադառնալը, հերթափոխության ընդունում-հանձնումը, հրահանգավորումը և այլն։ Հետևապես լրիվին կարելի է արտաաշխատանքային ժամանակի կառուցվածքում ընդգրկել նաև ժամանակի վերոհիշյալ ծախսումները։

***

Ահա համառոտ այն մի քանի հարցերը, որոնց վրա մենք կանգ առանք առաջարկության կարգով։

Տվյալ հարցի լուծման առաջարկված վարիանտներն, անշուշտ, հավակնություն չունեն բավարար չափով համոզիչ լինելու։ Այդ հարցերի կոլեկտիվ քննարկումը կհանգեցնի դրանց ավելի ռացիոնալ լուծմանը։ Սակայն ամեն դեպքում էլ վերոհիշյալ հարցերի լուծումը կնպաստի աշխատավորների արտաաշխատանքային ժամանակի ռացիոնալ օգտագործմանը, քանի որ որոշ կատեգորիաների աշխատավորների համար այն հայտաբերում է արտաաշխատանքային ժամանակի ավելացման նոր ռեզերվներ, առանց փոփոխության ենթարկելու աշխատաժամանակի օրինական սահմաններն ու տևողությունը։

Տվյալ կատեգորիաների աշխատավորներն ստանալով արտաաշխատանքային ժամանակն ավելացնելու նոր, չօգտագործված ռեզերվներ, կարող են լրացուցիչ ժամանակ հատկացնել իրենց ֆիզիկական և հոգևոր ընդունակությունների հետագա զարգացմանը։

Հ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ ԳԱԶԻՖԻԿԱՑՎՈՒՄ Է

Հայաստանը հարուստ չէ վառելիքի պաշարներով. նրա ընդերքում գրեթե վառելիքի ոչ մի տեսակ չի հայտնաբերվել։ Միայն Լենինականի մերձակայքում՝ Ջաջուռում, արդյունահանվում է շատ ցածր կալորիայի քարածուխ, որն օգտագործվում է Ջաջուռի կրի գործարանում։ Ամեն տարի ստացվում է նաև 60 հազար խորանարդ մետր փայտ, որը բացառապես կոմունալ-կենցաղային



կարիքների վրա է ծախսվում։ Այդ ամենը ծածկում է ռեսպուբլիկայի վառելիքի փաստական պահանջի միայն 3 տոկոսը։ Այսպիսի պատկեր ունեն մեր ռեսպուբլիկայի վառելիքի պաշարները։

Իր աճող արդյունաբերության, գյուղատնտեսության և բնակչության պահանջմունքները բավարարելու համար ռեսպուբլիկան հարկադրված է ամեն տարի մեծ քանակությամբ քարածուխ, նավթամթերքներ, փայտ և այլ վառելիք ներմուծել։ Այսպես, 1960 թվականին ներմուծվել է 500 հազար տոննա քարածուխ, մի քանի հարյուր հազար տոննա մազութ և այլն։

Վառելիքի այդքան սակավ պաշարներ ունենալու և վառելիքի փոխադրման ու պահպանման հետ կապված դժվարությունների պայմաններում ռեսպուբլիկայի էկոնոմիկայի համար առանձնահատուկ նշանակություն ունեցավ գազի՝ որպես ամենաէժան ու ռացիոնալ վառելիքի օգտագործումը։

Վերջին տարիներս ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը լուրջ ուշադրություն են նվիրել գազի արդյունաբերության հետագա զարգացմանը։

Կատարելով գազի արդյունաբերության զարգացման մասին ՍՄԿՊ XX և XXII համագումարների որոշումները, ինչպես ՍՍՌՄ, այնպես էլ Հայկական ՍՍՌ գլխգազը անցած ժամանակաշրջանում հսկայական աշխատանք են կատարել մագիստրալային նոր գազամուղներ կառուցելու ուղղությամբ։ Այդ հնարավորություն է տվել կապույտ վառելանյութը հասցնել Հայաստանի ամենահեռավոր անկյունները։

Հայաստանում հեղուկ գազի առաջին սարքավորումները երևան եկան 1959 թվականին։ 1960 թվականի փետրվարի 12-ին Հայաստանը Ադրբեջանական ՍՍՌ Ղարադաղի հանքավայրից ստացավ բնական գազ. այդ ռևոլյուցիա առաջացրեց մեր ռեսպուբլիկայի վառելիքային բալանսում։ Անցած չորս ու կես տարվա ընթացքում զգալի աշխատանք կատարվեց մեր արդյունաբերական, ինչպես նաև կոմունալ-կենցաղային ձեռնարկությունները գազային վառելիքի փոխադրելու, բնակարանները բնական և հեղուկ գազով ապահովելու ուղղությամբ։

Մինչև 1964 թվականի սեպտեմբերի մեկը ռեսպուբլիկայում կառուցվել են 386 կմ. բարձր ճնշման մագիստրալային գազամուղներ, 278,5 կմ. միջին և ստորին ճնշման գազամուղի ցանց. կառուցված են նաև 12 գազաբաշխիչ կայաններ և 250 գազաբաշխիչ կետեր։ Կառուցվել և շահագործման է հանձնվել Երևանի հեղուկ գազի լցման կայանը։ Այդ նույն ժամանակամիջոցում գազային վառելիքի են անցել արդյունաբերական 115 ձեռնարկություն։ Ռեսպուբլիկայի քիմիական բոլոր ձեռնարկություններն աշխատում են գազով։ Գազային վառելիք են օգտագործում Երևանի և Կիրովականի ջերմաէլեկտրակայանները։ Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատը, Երևանի «Պոլիվինիլացետատ», Ս. Մ. Կիրովի անվան գործարանները, Կիրովականի քիմիական կոմբինատը, Արզնու ապակե-տարայի գործարանը և ռեսպուբլիկայի բազմաթիվ այլ ձեռնարկություններ գազն օգտագործում են նաև տեխնոլոգիական կարիքների համար։

Գազային վառելիք են օգտագործում նաև 450 կենցաղային կաթսայատներ. դրանց թիվը 1964—1965 թվականների ջեռուցման սեզոնի սկզբին կհասնի ավելի քան 500-ի։

Բնական գազ են ստացել ռեսպուբլիկայի 11 քաղաքներ (Երևան, Լենինական, Կիրովական, Իջևան, Դիլիջան, Սևան, Հրազդան, Լուսավան և այլն). հեղուկ գազ են օգտագործում ռեսպուբլիկայի գրեթե բոլոր բնակավայրերում։ Այդ ամենի շնորհիվ գազիֆիկացված են 21800 բնակարան (բնական գազով), իսկ հեղուկ գազ օգտագործում են 79200 բնակարաններ։ Գազիֆիկացված են ընդամենը 101000 բնակարան, որն ընդգրկում է ռեսպուբլիկայի բնակչության զգալի մասը՝ մոտ 400—500 հազար մարդ։ Ղարադաղի գազը նորմալ ստանալու դեպքում, Հայաստանի բոլոր կարիքները հոգալու համար, 1964 թվականին կծախսվի մոտ մեկ միլիարդ խորանարդ մետր բնական և մոտ 11 հազար տոննա հեղուկ գազ։

Այդքան գազը համարժեք է 1,5 միլիոն տոննա քարածխի, կամ 800 հազար տոննա մազութի։

Հնգամյակի վերջերին, այսինքն՝ 1970 թվականին մեր ռեսպուբլիկայում բնական գազ կունենան 142 հազար բնակարաններ, հեղուկ գազ՝ 212 հազար բնակարաններ, կլինեն 1130 կենցաղային կաթսայատներ։ Այդ ժամանակ կծախսվի 3 միլիարդ խորանարդ մետր բնական գազ և ավելի քան 26 հազար տոննա հեղուկ գազ։

Հայաստանի գլխգազի «Հայգազշին» տրեստն անցյալ տարվա համեմատությամբ այս տարի ավելի լավ է կատարում շինարարական-մոնտաժային աշխատանքները։ Սահմանված պլանի համաձայն 1964 թվականի 8 ամսվա ընթացքում գազիֆիկացման ուղղությամբ պետք է կատարվեր 3.808 հազար ռուբլու աշխատանք, այդ թվում՝ սեփական ուժերով՝ 3.618 հազար ռուբլու։ Սեպտեմբերի մեկի տվյալներով արդեն կատարվել է 4.150 հազար ռուբլու աշխատանք, այդ թվում սեփական ուժերով՝ 3.810 հազար ռուբլու։ Այս տարվա ութ ամսվա պլանի համաձայն բնական գազ պետք է տրվեր 4560 բնակարանի, արդեն տրված է 6086 բնակարանի, կամ պլանը կատարված է 133 տոկոսով։ Այդ նույն ժամանակաշրջանում 5000-ի փոխարեն հեղուկ գազ է տրված 9240 բնակարանի, 50-ի փոխարեն գազիֆիկացված են 78 կենցաղային կաթսայատուն և, բացի այդ, գազային վառելիքի են անցել արդյունաբերական ևս 7 ձեռնարկություն։

Այդ բոլոր կարողությունները շահագործման հանձնելու համար պլանով նախատեսված 26 կիլոմետրի դիմաց կառուցվել է 28,3 կիլոմետր գազամուղ ցանց, այսինքն՝ պլանը կատարվել է 109 տոկոսով, ընդ որում աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը տրեստում կատարվել է 116,8, իսկ ինքնարժեքի իջեցման առաջադրանքը՝ 3,7 տոկոսով։ Այս տարվա առաջին կիսամյակում տրեստն ունեցել է 63,7 հազար ռուբլու արտապլանային շահույթ։

Ընդամենը երկու ամիս է մնացել մինչև տարվա վերջը, իսկ Հայաստանի գազի արդյունաբերության աշխատողները դեռևս մեծ անելիքներ ունեն նոր մագիստրալային գազամուղներ կառուցելու, ինչպես նաև արդյունաբերական ու կոմունալ կենցաղային նոր օբյեկտներ շահագործման հանձնելու ասպարեզում։

Այս տարվա դեկտեմբերին լրիվին կավարտվի Կիրովական-Ալավերդի մագիստրալային գազամուղի կառուցումը, որը կունենա դեպի Ստեփանավան և Թումանյան տանող ճյուղեր (հրակայուն աղյուսի գործարանը գազային վառելիքի անցնելու կապակցությամբ)։ Գազամուղի կառուցումն արդեն հիմնականում ավարտվում է, մնում է հաղթահարել Ձորագետի և Աքորիի կիրճերի դժվար անցումները։ Այդ աշխատանքները հաջողությամբ են կատարում «Հայգազշին» տրեստի Կիրովականի շինմոնտաժային վարչությունը և ՍՍՌՄ գազարդի «Յուժգազպրովոդստրոյ» տրեստի մասնագիտացված տեղամասի կոլեկտիվը։

Այս տարի բնական գազ կստանան ռեսպուբլիկայի նորանոր քաղաքներ ու բնակավայրեր՝ Ալավերդին, Ստեփանավանը, Սպիտակը, Ուզունթալան, Վեդին, Արտաշատը և այլն։ Ավարտվում է Սևանի հեղուկ գազի փնջային բազայի կառուցումը, որը կունենա տարեկան 25 հազար տոննա թողունակություն։ Այդ բազան կապահովի հեղուկ գազի 180 հազար հարմարանքներ՝ 150 կիլոմետր շառավիղ ունեցող տարածության վրա։

Նկատի ունենալով ռեսպուբլիկայի վառելիքի սուղ պայմանները, Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետը որոշել է երեք տարվա ընթացքում՝ 1965—1967 թվականներին, հեղուկ գազով ապահովել Հայաստանի ավելի քան 100 հազար բնակարան։ Այդ միանգամայն ռեալ պլան է, և վստահ ենք, որ այն կկատարվի։

Մեր առաջնահերթ խնդիրներից մեկը գազաբալոնային հարմարանքների արժեքի առավել իջեցումն է։ Նախնական հաշվարկումները ցույց են տալիս,



որ 1965 թվականի հունվարի մեկից հնարավոր կլինի մեկ հարմարանքի արժեքը դարձնել 60 ռուբլի՝ ներկայիս 94 ռուբլու դիմաց։ Մեր կարծիքով հեղուկ գազի հարմարանքներ կարելի է տեղակայել ռեսպուբլիկայի բնակչության սեփական տներում ևս։

Երբ կենսագործվի հեղուկ գազով 100 հազար բնակարաններ ապահովելու ծրագիրը, ապա 1967 թվականի վերջերին հեղուկ գազով ապահովված կլինեն ռեսպուբլիկայի մոտ 200 հազար բնակարաններ։ Այդ բոլոր հարմարանքները կսպասարկվեն Սևանի հեղուկ գազի փնջային բազայից, Երևանի և Ղափանի գազալցման կայաններից, որոնց կառուցումը մենք կսկսենք 1965 թվականին։ Մի փոքր ավելի բարդ է բնական գազով ռեսպուբլիկան նորմալ կերպով ապահովելու հարցը։ Քանի որ բնական գազի Ղարադաղի հանքավայրում սպասածից ավելի արագ է իջնում շերտային ճնշումը, ուստի այդ հանքավայրը չի կարող մեր ռեսպուբլիկայի համար հուսալի աղբյուր ծառայել։

Ադրբեջանական ՍՍՌ-ի նոր հանքավայրերում հանույթը չի կարող բավարարել ինչպես Ադրբեջանական ՍՍՌ-ի, այնպես էլ Հայկական ՍՍՌ-ի պահանջները։

Վրացական ՍՍՌ-ն ներկայումս օգտագործում է միայն Ստավրոպոլի գազը, որն առայժմ լրիվին բավարարում է նրան։

Հայաստանը ներկայումս, ամառվա ամիսներին, օրական ծախսում է մոտ 2,5 միլիոն խորանարդ մետր գազ, իսկ 1964 թվականի վերջերին (ձմեռային շրջանում) օրական կծախսվի 4,5 միլիոն խորանարդ մետր (առանց քիմիական վերամշակման համար անհրաժեշտ գազի)։ Ղարադաղի հանքավայրը, իհարկե, չի կարող բավարարել այդ բոլոր պահանջմունքները։ Դրա հետևանքով էլ Երևանի ջերմաէլեկտրակայանը (գազի հիմնական սպառողը) և արդյունաբերական ձեռնարկությունների մի մասը ձմեռային ամիսներին կանցնեն մազութի։

1964 թվականի վերջերին բնական գազը կօգտագործվի նաև քիմիական վերամշակման համար։ Գազից կստացվի ացետիլեն, որը մինչև այժմ ստացվում էր կալցիումի կարբիդից, իսկ հետագայում բնական գազից կստացվեն կաուչուկ, սինթետիկ մանրաթել, պլաստմասսաներ։ Դրա համար շատ գազ կպահանջվի։ Այլ կերպ ասած տարեկան մոտ 450—500 միլիոն խորանարդ մետր գազ կօգտագործվի քիմիական վերամշակման համար։

Գազը տարեցտարի վճռական և խոշոր նշանակություն է ձեռք բերում ռեսպուբլիկայի ընդհանուր վառելիքային բալանսում։ Ներկայումս այն արդեն կազմում է այդ բալանսի մոտ 60 տոկոսը։ Ամեն տարի այն շեշտակի ավելանում է։

Հաշվի առնելով բնական գազի նկատմամբ Հայկական ՍՍՌ-ի ունեցած աճող պահանջները, ՍՍՌՄ գազի արդյունաբերության պետական արտադրական կոմիտեն որոշել է Հայաստանի այդ կարիքները մասամբ բավարարել Հյուսիսային Կովկասի (Ստավրոպոլի, Կրասնոդարի, Մայկոպի) հանքավայրերի հաշվին։

Հյուսիսային Կովկասի գազը Վրաստանում ստացվում է Օրջոնիկիձե-Թբիլիսի գազամուղով։ Ունենալով Գեորգևսկում գործող մեկ կոմպրեսորային կայան, այդ գազամուղն ի վիճակի է տարեկան փոխադրելու 1 միլիարդ 200 միլիոն խորանարդ մետր գազ։

1964 թվականի վերջերին շահագործման կհանձնվեն ևս երկու կոմպրեսորային կայաններ Նևինոմիսկում և Մոզդոկում, իսկ 1965 թվականին կանգնեցվի Օրջոնիկիձե—Թբիլիսի գազամուղի զուգահեռ գիծը։ Այդպիսով, այդ գազամուղի թողունակությունը տարեկան կհասնի 3 միլիարդ խորանարդ մետրի, որից Հայաստանը կստանա 700—800 միլիոն խորանարդ մետր, չհաշված Ղարադաղից ստացվող գազը։

Օրջոնիկիձե—Թբիլիսի գազամուղի թողունակությունն ավելացնելու հետ մեկտեղ Հայաստանում կկառուցվի Ալավերդի—Կարմիր կամուրջ անցուղին, որը կապահովի Հյուսիսային Կովկասի գազի նորմալ փոխադրումը Հայաս-

տան, այնուհետև այդ գազամուղը կանցնի Ախթալա—Նոյեմբերյան գծով։ Այսպիսով, ամբողջ Հյուսիսային Հայաստանը (Ալավերդին, Թումանյանը, Ստեփանավանը, Կիրովականը, Լենինականը և այլ բնակավայրեր) կապահովվեն Հյուսիսային Կովկասի գազով։

Վերջերս ՍՍՌՄ Գազարդը որոշում է ընդունել Հայաստանը գազով ապահովելու համար ևս մի միջոցառում իրականացնելու վերաբերյալ։ Կօգտագործվեն Դաղստանի գազի նոր հանքավայրերը։ Առ այսօր Դաղստանի գազի պաշարները կազմում են 27 միլիարդ խորանարդ մետր։ 1965 թվականին կսկսվի նոր գազամուղի շինարարությունը, որն իր սկիզբը կառնի Դաղստանի գազի հանքավայրից, կհատի Կովկասյան լեռնաշղթան և Եվլախի ու Կիրովաբադի միջև ընկած շրջանում կմիանա Ղարադաղ—Երևան գազամուղին։ 400 կմ. երկարություն ունեցող այդ գազամուղը հաստատված պլանի համաձայն պետք է շահագործման հանձնվի 1966 թվականին։

Նախատեսվում է առաջիկա տարիներին կառուցել նոր մագիստրալային գազամուղներ, որոնք կընդգրկեն ռեսպուբլիկայի նորանոր շրջաններ։ 1965 թվականին կսկսվի Երևան—Հոկտեմբերյան գազամուղի շինարարությունը։

Նախատեսվում է նաև կառուցել Ծովագյուղ—Շորժա, ինչպես նաև Հոկտեմբերյան—Թալին—Մարալիկ—Լենինական գազամուղները։ Վերջինս կունենա Արթիկ տանող հետաստար խողովակ։ Այս ամբողջ շինարարության նպատակն է գազով ապահովել վերոհիշյալ շրջաններում գտնվող բոլոր արդյունաբերական օբյեկտները և բնակավայրերը։

Բնական գազի օգտագործման ժամանակ, սովորաբար, մեծ անհամաչափություններ են նկատվում ինչպես առանձին սեզոնների, այնպես էլ օրերի ընթացքում։ Այդ առանձնապես նկատելի է Հայաստանում, քանի որ ամառվա շոգերին գազի ծախսումը խիստ կրճատվում է։ Գազի ավելցուկը պահելու համար այժմ կառուցվում են գազապահեստարաններ։ Առանձնապես լայնորեն կիրառվում են ստորերկրյա գազապահեստարանները։

Հաշվի առնելով Երևան քաղաքի պայմանները և օգտագործելով հատկապես նրա աղահանքերը, ՍՍՌՄ գազարդը ձեռնամուխ է եղել ստորերկրյա մի փորձնական գազապահեստարանի կառուցմանը, ջրի միջոցով աղը հանելով 750—1000 մետր խորությունից։ Աղի լուծույթը խողովակներով կտրվի Կիրովի անվան գործարանին՝ տեխնոլոգիական կարիքների համար, իսկ գոյացած ազատ տարածությունը կօգտագործվի որպես գազապահեստարան։ Այդքան մեծ տարողություն ունեցող պահեստարանում բնական գազ պահելն առաջին անգամն է իրականացվում Սովետական Միությունում։ Եթե այդ առաջին փորձը հաջող անցնի, ապա Հայաստանում կկառուցվեն նման նոր պահեստներ, որոնցում հնարավոր կլինի պահել 50—60 միլիոն խորանարդ մետր գազ, իսկ այդ ռեսպուբլիկայի բոլոր կարիքները հոգալու առնվազն 15 օրվա պաշար է։

Հայաստանի գազային արդյունաբերության աշխատողների առջև ծառացած են ռեսպուբլիկայի հետագա գազիֆիկացման մեծ ու պատասխանատու խնդիրներ։ Նրանք հաջողությամբ կկենսագործեն այդ խնդիրները. կկատարեն ռեսպուբլիկայի գազիֆիկացման պլանները և դրանով իսկ իրենց արժանի ավանդը կմուծեն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։

Ի. ՊԱՊԻԵՎ
ՀՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր գազիֆիկացման գլխավոր վարչության պետ

# ԱԹԵԻՍՏԻ ԱՄԲԻՈՆ

## ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԴԵՄՈԿՐԱՏԸ ԸՆԴԴԵՄ ԿՐՈՆԻ ԵՎ ԵԿԵՂԵՑՈՒ

Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Միքայել Նալբանդյանը, հայ ականավոր ռեվոլյուցիոն-դեմոկրատը, իր ողջ գիտակցական կյանքը նվիրել է ֆեոդալական բարբարոսական ճնշման դեմ պայքարելու, ցարիզմի ու սուլթանիզմի լծից հայ ժողովրդի ազատագրության և նրա նյութական պայմանների բարելավման գործին։ Իր կյանքի նպատակը դարձնելով աշխատավոր մասսաների շահերի ջերմ ու կրքոտ պաշտպանությունը, Նալբանդյանը, հասկանալի է, չէր կարող չպայքարել եկեղեցու և հոգևորականության դեմ, որոնք ինչպես հայ իրականության մեջ, այնպես էլ ամենուրեք հանդես էին գալիս հասարակության հետադեմ ուժերի հետ համագործակցած և պայքարում էին հասարակության պրոգրեսիվ ուժերի դեմ՝ հանուն հին կարգերի պաշտպանության։

Իր հասարակական-քաղաքական գործունեության հասուն շրջանում մատերիալիստորեն բացատրելով բնության երևույթները և պաշտպանելով այն տեսակետը, թե բնության մեջ տեղի ունեցող բոլոր պրոցեսները մատերիայի շարժման ու փոփոխման հետևանք են, Նալբանդյանը, դրանով իսկ, հակադրվում էր կրոնական-եկեղեցական աշխարհայեցողությանը, աշխարհի ու նրա առաջացման մասին քրիստոնեական կրոնի պատկերացումներին։ Նա ժխտում էր բիբլիական այն առասպելը, ըստ որի աստված ոչնչից ստեղծեց աշխարհը։ Նկատի ունենալով արեգակնային համակարգության առաջացման ու զարգացման մասին իր ժամանակի գիտության նվաճումները, Նալբանդյանը գրում էր. «Անցան այն ժամանակները, երբ մշուշով պատած մարդկային երևակայությունը ոչնչից տիեզերք էր ստեղծում։ «Ոչնչից ոչինչ կստեղծվի»։ Վերջին մանուկը կրկնում է այսօր մեր հետ» (Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 3, էջ 73)։

Հիմնվելով գիտության տվյալների վրա, Նալբանդյանը պաշտպանում էր այն տեսակետը, թե բնությունն ամբողջությամբ վերցրած՝ իր օրգանական և անօրգանական աշխարհով աստիճանական ու երկարատև զարգացման հետևանք է։ Այսօրվա նրա վիճակը միլիոնավոր տարիների զարգացման մի աստիճանն է, և նա հավերժ գտնվում է զարգացման ու փոփոխման մեջ։ Նալբանդյանը քաջ ծանոթ էր օրգանական աշխարհի էվոլյուցիայի և մարդու ծագման մասին իր ժամանակի բնագիտական ուսմունքներին։ Նշելով, որ աշխարհի բնական զարգացման հարցը իր վերջնական լուծման տեսակետից դեռևս

«դժվար ու տարակուսելի» հարց է մնում, նա հավատում էր, որ գիտությունն անպայմանորեն կլուծի այդ դժվարին խնդիրը։

Ապրելով որոշակի էվոլյուցիա, Նալբանդյանն իր գործունեության հասուն շրջանում վճռականորեն.բացառում էր կրոնի ազդեցությունը հասարակության բարոյականության վրա։ «...Բարոյականության վերա նորա (կրոնի Գ. Գ.) կարծված ազդեցությունը լոկ երազ է և ոչ ավելի»,— գրում է նա։ Նալբանդյանը կանգնած էր այն ճիշտ մատերիալիստական տեսակետի վրա, թե հասարակության բարոյականության կամ անբարոյականության հիմքը ոչ թե կրոնն է, այլ նրա կյանքի նյութական պայմաններն են, որոնք և որոշում են բարոյականության աստիճանը երկրում։ «Երբ ազգը... բացարձակ աղքատության մեջ է ապրում, որ ինչպես ամեն իրավաբան և մորալիստ կարող է վկայել, միշտ մայր է եղել և լինում է ամեն հանցանքների և ոճրագործությանց» (Նույն տեղում, էջ 222)։ Նա գտնում էր, որ «ոչ կրոնը և ոչ նաև օրենսդրությունը կարող են փրկել մի ազգի բարոյականությունը» (Նույն տեղում, էջ 223)։ Դրա համար անհրաժեշտ է, նախ և առաջ, լուծել տնտեսական խնդիրը, առանց որի «անկարելի է հայոց ազգի հիմքը նորոգել, ուժ և զորություն դնել նորա մեջ»։ Հակադրվելով կրոնական ըմբռնմանը, նա գտնում էր, որ մարդկանց բարոյական պրոգրեսն ապահովելու համար անհրաժեշտ է արմատապես վերափոխել հասարակական կարգերը, որոնք հիմնված են շահագործման, հողի մասնավոր սեփականության վրա։

Նալբանդյանը ժխտում էր նաև կրոնի դերը լուսավորության և քաղաքակրթության զարգացման գործում։ Վկայակոչելով պատմությունը, նա գրում է. «...կրոնը չէր հին Հռոմի լուսավորության և քաղաքակրթության շարժարանը, որպես նաև նոր Հռոմի խավարի ու տգիտության պատճառը» (Նույն տեղում, էջ 223)։

Պետրոպավլովյան ամրոցում բանտարկված ժամանակ սկսելով Բոքլի «Անգլիայի քաղաքակրթության պատմություն» աշխատության ուսումնասիրությունը, Նալբանդյանը եղբորը՝ Ղազարոս Նալբանդյանին գրում է. «...վախենում եմ, որ Բոքլն ամբողջ քաղաքակրթությունը չբխեցնի բողոքականությունից կամ պուրիտանիզմից, ինչպես ուրիշներն, առանց այլևայլության, բխեցնում են անպայման կաթոլիկությունից» (Երկերի լիակատար ժողովածու, հ. 4, էջ 170)։ Նալբանդյանը դեմ է այս տեսակետին։ «Ուղիղն ասած, ես այդ հարցը դիտում եմ,— շարունակում է նա եղբորը գրած նույն նամակում,— բոլորովին հակառակ տեսանկյունից։ Ըստ իս, պրոգրեսի տեսակետից, քաղաքակրթության զարգացման հիմնական խթանը կրոնի մեջ չէ, այլ, ավելի շուտ, կրոնների վերածնունդը և կերպարանափոխությունը քաղաքակրթության անխուսափելի հետևանքներն են՝ նրա զարգացման տվյալ մոմենտին» (Նույն տեղում)։

Նալբանդյանը գիտական բացատրություն էր տալիս կրոնի ծագման ու առաջացման հարցին։ Ըստ նրա, կրոնը արդյունք է աշխարհի մասին մարդկանց պատկերացումների ցածր մակարդակի, հետևանք է բնության երևույթների գիտական բացատրության բացակայության։ Կրոնը, գերբնական ուժերին հավատալը առաջացել է մարդկության պատմության ամենանախնական աստիճանում, երբ մարդն իրեն շրջապատող բնության ու նրա երևույթների մասին ուներ միանգամայն աղոտ պատկերացում և նրա առաջ զգում էր իր ոչընչությունը, իր կյանքի կախվածությունը նրանից։ Չկարողանալով տալ բնության ուժերի՝ կայծակի, որոտի, անձրևի, ջրհեղեղի, փոթորկի, ցրտի ու տաքի, երկրաշարժի և այլնի բացատրությունը, առաջացման պատճառը, մարդն աստվածացնում էր այդ ուժերը։ Այդ կապակցությամբ Նալբանդյանը գրում է. «Բնության երևույթքը իրենց վսեմափառ կերպարանքով շատ անգամ սարսափեցնում են մարդուն. սա միանգամայն ոչնչանում է, երբ աչքի առջև տեսնում է մի այնպիսի ուժ, մի այնպիսի զորություն, այնպիսի տեսարան, որի առջև տկարանում է ոչ լոկ մի մարդու, այլև բովանդակ մարդկության ուժը» (Երկերի լիակատար ժողովածու, հ. 3, էջ 146)։

Եվ ահա, չկարողանալով բացատրել բնության իրերն ու երևույթները, շարունակում է Նալբանդյանը, մարդը դրանց մեջ տեսնում է գերբնական ուժեր, որոնք «Հարմին են առնում Շիվայի, Դուրգայի և Վիշնուի (հնդկական կուռքեր (Գ. Գ.) անհեթեթ կերպարանքներով և այնուհետև խարազան են դառնում մարդկության»։ «Որքան մոլորությունք որ կան աշխարհի երեսին,— եզրակացնում է Նալբանդյանը,— այդ բոլորը սկզբնաբար ծագել են կամ բնությունը թյուր հասկանալուց, կամ իսպառ չհասկանալուց» (Նույն տեղում)։

Նալբանդյանը հանգում է այն եզրակացության, թե քաղաքակրթությունը իր զարգացման որոշ աստիճանի վրա արդեն պայմաններ է ստեղծում ժխտելու և ժխտում է այն, ինչ առաջացել էր մարդկային հասարակության զարգացման ցածր մակարդակի հետևանքով։ Եթե առաջ մարդիկ, իրենց գիտելիքների ցածր մակարդակի պատճառով, չէին համարձակվում բողոքի ձայն բարձրացնել ու ըմբոստանալ կրոնի և եկեղեցու դոգմաների դեմ, ապա լուսավորության և քաղաքակրթության զարգացման նոր աստիճանում նրանք արդեն դուրս են գալիս այդ դոգմաների դեմ՝ լրիվ գիտակցելով և հիմնավորելով իրենց գործի արդարացի լինելը։ «Ո՞ր սաքսը կամ նորմանը, կամ բրետոնը միջին դարերում կխիզախեր,— գրում է Նալբանդյանը,— բողոքի դրոշ բարձրացնել հռոմեական եպիսկոպոսի տեղակալության անմեղանչելի լինելու դեմ։ Բայց նրանք այդ դրոշը բարձրացրին նոր դարաշրջանի սկզբին, երբ այնքան էին քաղաքակրթված և լուսավորված, որ ամենայն պարզությամբ հասկանում էին իրենց գործի արդարացի լինելը» (Երկերի լիակատար ժողովածու, հ. 4, էջ 171)։

Իր այս մտքերով Նալբանդյանը դեմ էր դուրս գալիս կրոնա-եկեղեցական այն մտացածին հերյուրանքին, թե կրոնն իբր առաջացել է մարդու ու մարդկության հետ միասին և հավերժ պետք է գոյություն ունենա։ Իմացաբանորեն ճիշտ բացատրելով կրոնի ծագումը, նա, ի հակակշիռ աստվածաբանական հնարքների, կրոնը դիտում էր որպես պատմական երևույթ և համոզված էր, որ գիտությունների նվաճումները մահացու հարված կհասցնեն կրոնական նախապաշարմունքներին, որ բնության երևույթների գիտական բացատրությունն աստիճանաբար դուրս կմղի աշխարհի ու նրա երևույթների մասին մարդու պատկերացումների միջից ամեն տեսակ գերբնական, կրոնական ըմբռնումներ։

Նալբանդյանը, ինչպես և մինչմարքսյան ամբողջ սոցիոլոգիական միտքը, չկարողացավ սպառիչ կերպով ցույց տալ կրոնական սնահավատությունների վերացման ուղիները։ Գտնելով, որ կրոնը հետևանք է միայն տգիտության և մոլորության, նա կարծում էր, թե սոսկ գիտական գիտելիքների տարածմամբ կարելի է վերացնել նախապաշարմունքները։ Բավական է, մտածում էր Նալբանդյանը, ցրել տգիտության խավարը, լուսավորել մարդկանց, որպեսզի նախապաշարմունքները ոչնչանան։ Նա սոսկ կռահում էր, որ միայն լու-

տավորությունը չի կարող վերացնել կրոնն ու նրա հետ կապված սնահավատությունները, որ դրա համար անհրաժեշտ է, նախ և առաջ, վերացնել շահագործողական կարգերը, որոնք կրոնական սնահավատությունների բազա են հանդիսանում:

Չնայած այն բանին, որ Նալբանդյանը չի բարձրանում մինչև կրոնի կենսունակության սոցիալ-դասակարգային պատճառների ըմբռնման մակարդակը, այնուամենայնիվ, նա, որպես ռևոլյուցիոն-դեմոկրատ, որն իր կյանքի հիմնական նպատակն էր դարձրել ժողովրդական մասսաների նյութական պայմանների բարելավումը, շատ լավ հասկանում ու գիտակցում էր, թե սոցիալական ինչ հետևանքներ են ունենում կրոնական նախապաշարմունքներն ու սնահավատությունները: Նալբանդյանը տեսնում էր, որ ժողովրդական մասսաների սնահավատ ու նախապաշարված լինելը խոչընդոտ են հանդիսանում մարդկանց իրենց ուժերի վրա վստահ լինելու և պայքարելու ոգին բարձրացնելու գործում: Դրանք ճզճիմացնում են մարդուն, ստիպում նրան կախման մեջ զգալ բնության և հասարակության ուժերից, խոնարհվել դրանց առաջ՝ պայքարելու և դրանց ընթացքը փոխելու և իրեն ծառայեցնելու փոխարեն: Խոսելով սնահավատությունների ու նախապաշարմունքների ժողովրդի վրա թողած ազդեցության մասին, Նալբանդյանը գրում էր, թե «այդպիսի բաները ներգործում են խեղճ և պարզամիտ ժողովրդի վերա այնպես, ինչպես հաշիշը կազմվածքի վերա» (Երկերի լիակատար ժողովածու, հ. 3, էջ 165): Այս պատճառով, ահա, Նալբանդյանը կոչ էր անում «...բնության օրենքներով հրաշալին մեկնելով, ցրել միջնադարյան մառախուղը, բանալ ազգի աչքը և ավելի հավատ դնել նորա մեջ իր վրա, իր մարդկային արժանավորության, իր գործունեության վրա» (Նույն տեղում, էջ 132):

Նալբանդյանն անհաշտ պայքար էր մղում սնահավատությունների ու նախապաշարմունքների դեմ, իր աշխատություններում անխնա քննադատելով հայ հասարակական այն գործիչներին, որոնք իրենց գրվածքներով սնահավատությունների ամրապնդման ու հետագա տարածման պատճառ էին հանդիսանում: Իր «Հրաշափառ խայտառակություն» հոդվածում Նալբանդյանը անողոք ծաղրի է ենթարկում կղերական Ջամուռճյանին այն բանի համար, որ վերջինս ձգտել է ապացուցել դևերի ու կախարդությունների գոյությունը և հատուկ աշխատություն է նվիրել այդ դատարկ ու անհեթեթ գործին: Նա խարազանում է հայ հոգևորականությանը, կրոնի գաղափարախոսներին, որոնք լուսավորության դարում գրում են գիտության և ազգի առաջադիմությանը ոչնչով չնպաստող գրքեր: Նա մերկացնում է հոգևորականության խավարամտությունն ու հետամնացությունը և ցույց տալիս, որ հոգևորականությունը ձգտում է ետ պտտել պատմության անիվը դեպի միջնադարյան խավարը, սխոլաստիկան ու միստիկան: «Հոգևորք մեր անկիրթ և վայրենի, հազիւ ուրեմն կարող գրել և ընթեռնուլ, շատ այն է՝ առանց ընթերցեալն հասկանալոյ, թշնամիք են լուսաւորութեան, և բազում ուրեք շանթիւք նզովից մտանեն ի պայքար ընդ լուսաւորութեան» (Երկերի լիակատար ժողովածու, հ. 2, էջ 313):

Նալբանդյանը քննադատում էր հոգևորականությանը որպես բոլոր ժամանակներում ռեակցիայի հենարանի: Իր աշխատություններում նա պարզաբանում էր մասսաներին, որ հայ հոգևորականությունը դարեր շարունակ օտար կեղեքիչների հետ միասին ծանրացած է եղել հայ ժողովրդի վզին և հանդիսացել նրա սեփական, «ազգային» շահագործողներից մեկը: «...Հայերը դա-



տապարտված են,— գրում է Նալբանդյանը,— օտարի գավազանի հետ, ենթարկվիլ նաև յուր եկեղեցականների հարստահարության» (Երկերի լիակատար ժողովածու, հ. 3, էջ 29):

Նալբանդյանը սուր կերպով քննադատում է Արևմտյան Հայաստանի և, հատկապես, Պոլսի հայ հոգևորականներին այն բանի համար, որ նրանք հայ հասարակության ռեակցիոն ուժերի հետ միասնական ճակատով պայքար էին մղում Հարություն Սվաճյանի «Մեղվի» շուրջը համախմբված հայ առաջավոր, դեմոկրատական խավերի դեմ: Նալբանդյանն իր «Ազգային թշվառություն» հոդվածում դատապարտում է հոգևորականներին նրանց հակաժողովրդական, հակաազգային այն գործունեության համար, որ նրանք 60-ական թվականների սկզբներին, հայ ազգային սահմանադրության ընդունման տարիներին, դաշնակցած հայ ռեակցիայի հետ, տապալեցին 1860 թվականի համեմատաբար դեմոկրատական սահմանադրությունը:

Անդրադառնալով հայ պատմական անցյալին, Նալբանդյանը ցույց է տալիս, որ հայ հոգևորականները (բացառությամբ մի շարք գործիչների) հիմնականում դրական դեր չեն խաղացել հայ ժողովրդի կյանքում: Նալբանդյանը բացասաբար է գնահատում եկեղեցու դերը հայ ժողովրդի պատմության մեջ: Եկեղեցին եղել է հայ ժողովրդի միասնական ուժը ջլատող, երկպառակություն սերմանող և դրանով իսկ՝ ազգի ինքնուրույնության կորստյան պատճառ: «Քրքրելով մեր անբաղդացած ազգի թշվառությունների տարեգիրքը,— գրում է Նալբանդյանը,— ինչ ենք տեսնում.

Ո՛րտեղ մի գայթակղություն, որի պատճառը չէր եկեղեցական, ո՛րտեղ հարստահարություն, որի հերոսը չէր եկեղեցական, ո՛րտեղ խռովություն, որի խմորը չէր եկեղեցական» (Նույն տեղում, էջ 24):

Նալբանդյանը ցույց է տալիս նաև, որ այժմ, երբ հայ ժողովրդի լուսավորության, նրա ազգային զարթոնքի հարցը նոր ուժով է բարձրացել, եկեղեցին ու հոգևորականությունը կառչել են հնից և ամեն կերպ արգելք են հանդիսանում քաղաքակրթության տարածմանը: Նալբանդյանն ընդգծում է, որ այդ ակնառու կերպով արտահայտվում է, օրինակ, լեզվի հարցում: Հոգևորականությունը գաղափարապես կապված լինելով հնի, մեռածի, իր դարն ապրածի հետ, այժմ պայքարում է աշխարհաբար լեզվի դեմ, հանուն գրաբարի պահպանման ու տիրապետման, գրաբարի, որը միանգամայն խորթ ու անհասկանալի է ժողովրդին: Նա մերժում է գրաբարի պահպանման համար կղերա-ֆեոդալական խավերի այն պնդումը, թե որովհետև գրաբարը ավելի մշակված, հղկված լեզու է, քան թե աշխարհաբարը, ուստի նա պետք է պահպանվի: «Հին լեզվի ջատագովյալ գեղեցկությունը, նորա ավելի մշակված լինելը,— գրում է Նալբանդյանը,— նույնպես իրավունք չեն տալիս մեզ կենդանի ժողովրդի իրավունքը բռնաբարելու և ուրանալու» (Նույն տեղում, էջ 323):

Ելնելով ժողովրդի շահերի պաշտպանության դիրքերից, Նալբանդյանը գտնում էր, որ գեղեցիկ է այն, ինչ համընկնում է ժողովրդի շահերի հետ, արտահայտում է ժամանակի պահանջները, «Իսկ նոր լեզուն գնում է ժամանակի հետ զուգահեռաբար, ուրեմն նոր լեզուն տգեղ չէ» (Նույն տեղում, էջ 325):

Հոգևորականությունն ամեն կերպ ձգտում է իր ազդեցությունը պահել ժողովրդական մասսաների վրա, քանի որ, ինչպես նշում է Նալբանդյանը, սասանվել է ժողովրդի հավատը հոգևորականության նկատմամբ: «Անցան և անդառնալի անցան այն խավար օրերը,— գրում է նա,— երբ մարդիկ եր-

ջանիկ էին համբուրելով մի սևագլխի քղանց, կամ շատ անգամ զոշաքաղությամբ և պոռնկությամբ ապականված մի ձեռք» (նույն տեղում, էջ 22)։ Հայ ժողովուրդն այլևս թերահավատ է դարձել հոգևորականության նկատմամբ, սակայն հոգևորականությունը խաղաղ կերպով չի զիջում իր դիրքերը։ Իր ազդեցությունը մասսաների վրա պահելու համար, նա նույնիսկ ուժ է գործ դնում։ «Այս բոպեիս,— գրում է Նալբանդյանը,— այդ մարդիկը (հոգևորականները Գ. Գ.) քաջ գիտելով, որ արժանավորությամբ չեն կարող շահել ազգի համակրությունը, փորձ են փորձում բռնանալու նոցա վերա, կոպիտ ուժի օգնությամբ, կամ յուրյանց խավար ատմոսֆերի մեջ նզովքի փայլակներ փայլատակեցնելով» (նույն տեղում, էջ 22)։

Նալբանդյանի պայքարը հոգևորականության դեմ, հայ եկեղեցու վեղարավոր ծառաների դեմ, այսպիսով, միայն լուսավորչական պայքար չէր։ Դա պայքար չէր նաև մի քանի հոգևորականների՝ Ջամուճյանի, Գաբրիել Այվազովսկու, Ներսես կաթողիկոսի և այլոց դեմ։ Նալբանդյանը ի դեմս հոգևորականության ամենից առաջ տեսնում էր հասարակության մի ուժի, որը ռեակցիայի հետ դաշնակցած պայքար է մղում դեմոկրատիայի ու պրոգրեսի դեմ։

Պայքարելով հոգևորականության դեմ, Նալբանդյանը ձգտում էր մերկացնել նրա ռեակցիոն էությունը, ցույց տալ, որ նա իշխող դասի, հայ իրականության մեջ ամիրայության, բուրժուազիայի հետ միասին ծանրացել է հայ ժողովրդի ուսերին և անտանելի է դարձնում սուլթանական ու ցարական լծի տակ հեծող հայ ժողովրդի սոցիալ-տնտեսական և իրավական վիճակը։ Նկատի ունենալով հայ հոգևորականության ռեակցիոն գործունեությունը, նրա ռեակցիոն դերը հայ հասարակության մեջ, Նալբանդյանը նրա դեմ պայքարը համարում էր կարևորագույն գործ, անհետաձգելի մի խնդիր։ Այդ պայքարի հիմնական նպատակներից մեկը, եթե ոչ հիմնական նպատակը, այն էր, որպեսզի թուլացվի հոգևորականության ազդեցությունը ժողովրդական մասսաների վրա և հոգևորականությունը մեկուսացվի հասարակական պայքարի բնագավառից։

Գիտակցելով ու ցույց տալով, որ հայ ազգի մեջ գոյություն ունի դասակարգային պայքար և քաջ ըմբռնելով, որ «հին խելքերը երբեք համաձայնելու չէին խաղաղությամբ տեղի տալ նոր գաղափարներին, ...որ նորը պատերազմով պիտի կանգնեցներ իր դրոշակը հնության ավերակների վերա» (նույն տեղում, էջ 15), Նալբանդյանը ամենաանողոք և անհաշտ պայքար է մղում հայ հոգևորականության դեմ. դա ռևոլյուցիոն դեմոկրատի պայքարն էր հայ ռեակցիայի դեմ՝ հանուն դեմոկրատական ուժերի հասարակական ազդեցության ուժեղացման ու հետագա տիրապետման։

***

Նալբանդյանն իր աշխատություններում քննադատել ու մերկացրել է ոչ միայն հայ լուսավորչական հոգևորականության ռեակցիոն էությունը, այլև կաթոլիկ ու բողոքական հոգևորականությանը, դրանով իսկ ցույց տալով իր բացասական վերաբերմունքը եկեղեցու հայրերի նկատմամբ ընդհանրապես։

Նալբանդյանը նշում էր, որ բողոքական հոգևորականությունը դարեր շարունակ հանդիսացել է ազատության ու լուսավորության հալածող և ծանրացած է եղել ժողովրդական մասսաների ուսերին։ «Այս եկեղեցին,— գրում է նա,— շինվելով Հռոմի եկեղեցու ավերակների վերա, այնքան ազատություն բերեց իր ժողովրդին, որքան այն տերությունը միջին դարերում, որ կազմվեցան նույն Հռոմի կայսրության ավերակներում։ Ազատությունը լոկ մի խայծ է բողոքական քարոզիչների կարթի ծայրում, վա՜յ միամտին, որ խաբվելով կբռնվի, այնուհետև ստրկությունը նորա հավիտենական բաժինն է» (Երկերի լիակատար ժողովածու, հ. 4, էջ 305)։ Նա նշել է, որ այդ եկեղեցին եղել է խռովությունների, քաղաքական երկպառակությունների պատճառ։ Իր երկդիմի ընթացքի ու խարդախությունների պատճառով, բողոքական հոգևորականությունը հանդիսացել է ազգակործան շատ դեպքերի պատճառ, ժողովրդական մասսաների նյութական պայմանների հետագա վատթարացման պատճառ։

Նալբանդյանի աշխատություններում հատկապես մեծ տեղ է գրավում կաթոլիկ հոգևորականության և նրա կազմակերպչական ու գաղափարական կենտրոն Վատիկանի քննադատությունը։ Ժողովրդական մասսաների շահերի համար պայքարող աննկուն մարտիկը անհուն ատելությամբ և կրքոտ թշնամանքով էր լցված դեպի պապականությունը և ռևոլյուցիոն-դեմոկրատի անհաշտ հետևողականությամբ ու անողոքությամբ քննադատում ու մերկացնում էր դարերի ընթացքում նրա արարքների բուն նպատակը, իսկական էությունը։

Նալբանդյանը ցույց է տալիս, որ պապականության պատմությունը գըրված է ժողովուրդների արյունով, որ նա իր գոյությունը պահպանել է դիակների կույտերի վրա։ «...պապականությունը ազգեր չքացուց յուր ապահովության համար»,— գրում է Նալբանդյանը։ Քաղաքական ինտրիգները, սանձարձակությունը, սուտը, կեղծիքն ու սպանությունը, արյունալի պատերազմները հանդիսացել են պապականության հիմնական ուղեկիցները նրա ամբողջ պատմության ընթացքում։

Նալբանդյանը մերկացնում է կաթոլիկ եկեղեցու այն սուտը, թե խաչակրաց արշավանքները կազմակերպվել են «փրկչի»՝ Քրիստոսի գերեզմանը անհավատների ձեռքից ազատելու համար և բացահայտում է պապերի կողմից կազմակերպված այդ արշավանքների իսկական նպատակը։ «Երկու են այս բաների խորհուրդը,— գրում է Նալբանդյանը,— մին, որ ցույց տային թե պաշտպան են քրիստոնեության և դորանով սովորեցնեին ազգերը նայել պապի վերա որպես եկեղեցու գլխի վերա, երկրորդ, որ ազգերը և մանավանդ նոցա իշխանքը զբաղվելով այդ անվերջանալի արշավանքներովը, ժամանակ չգըտնեին ուշադրություն դարձուցանել պապերի և առհասարակ եկեղեցականների անարգ գործերի վերա» (Երկերի լիակատար ժողովածու, հ. 2-րդ, էջ 207-208)։

Դեռևս այդ արշավանքներից շատ առաջ, ասում է Նալբանդյանը, պապերը ձգտում էին տիեզերական իշխանություն հաստատել, ձգտում էին իրենց իշխանությունը տարածել աշխարհի բոլոր ժողովուրդների վրա։ «Ի՞նչ է պապականության խորհուրդը», հարցնում է նա և պատասխանում. «այս խորհուրդը մեծ է. բայց որքան մեծ, այնքան և կորստական մարդկության համար։ Նա ներգործում է կրոնի և կրոնապաշտության դիմակի տակ, բայց դոքա երկրորդական բան են համեմատությամբ առաջին նպատակին, որին կամի հասնել. նորա մտացածին և կարծիքական տիեզերական հոգևոր իրավասության տակ թաքնված է տիեզերական քաղաքական իրավասություն» (նույն տեղում, էջ 209—210)։ Իր նպատակին հասնելու համար, Հռոմը, ասում է Նալբանդյանը,—

ոչ մի միջոցի առաջ կանգ չի առել։ Տիեզերական իշխանության հասնելու և այդ իշխանությունը ամրապնդելու նկատառումով, Վատիկանը իր «սուրբ» գաղափարախոսության անկյունաքարն էր դարձրել ստրկական հնազանդությունը «հռոմեական քահանայապետերին» և հասել էր այն բանին, որպեսզի նրանց «ծայրագույն իշխանությունը» տարածվի «բոլոր կայսրների, թագավորների, բոլոր պատրիարքների և եպիսկոպոսների վերա», որպեսզի նրանք անմիջականորեն պապերից ստանան «յուրյանց թագը և սաղավարտը»։ Նրանք՝ Հռոմի պապերը, այդ իրավունքը սրբագործում էին այն գաղափարով, թե իբր այդ իրավունքը նրանց հանձնված է «մեծ առաքյալի ձեռքով»։ Այս բոլորի նպատակն այն էր, եզրակացնում է Նալբանդյանը, որպեսզի Հռոմի հոգևորականները իրենց փարթամ, շվայտ կյանքի համար կարողանան ավելի շատ նյութական միջոցներ կորզել ժողովրդից։

Նալբանդյանն անխնա մերկացնում է կաթոլիկ հոգևորականների վարքն ու բարքը։ Նա ցույց է տալիս, որ նրանք բարոյականություն, առաքինություն, ժուժկալություն քարոզելով, իրականում իրենց արարքներով անբարոյական են բոլոր տեսակետից։ Այդպիսին են իրենք պապերը, այսպես կոչված Քրիստոսի փոխանորդները երկրի վրա, որոնք իշխանության հասնելու համար դիմում էին ամեն տեսակ գարշելի ու անազնիվ միջոցների՝ կաշառքի, սպանության, դավաճանության։ «Աչքերս ձգենք,— գրում է Նալբանդյանը,— մի հարյուր հիսուն տարու ժամանակամիջոցի վերա Կարլովինգյան տան վերջանալուց հետո. և տեսնում ենք ահա, որ քսան և չորս պապերից, որ այս միջոցին նըստած հռովմեական եկեղեցու աթոռի վերա, երկուքը սպանվեցան, հինգը աքսորվեցան, երեքը ինքյանք հրաժարվեցան այս վտանգավոր իշխանութենից, ոմանք զ̊ենքի ուժով հասան այս բարձր աստիճանին, ուրիշները արծաթով, երկուքը ստացան այս արժանավորությունը սիրական կին մարդերի ձեռքից, մինը ինքը յուրյան պապ ընտրեց։ Հրաժարականը պապական աթոռից մի անգամ գնվեցավ լի քսակով, երկրորդումը գեղեցիկ հարսնացուի փաղաքշական խոսքերով։ Մինը Հռովմի քահանայապետերից կողոպտեց եկեղեցական գանձը, յուր ավարով հանդերձ դուրս փախավ Հռովմից, և հետո վերադարձավ շուտով, հալածեց յուր հաջորդը և խեղացուց նորան ամենագարշելի կերպով» (նույն տեղում, էջ 208—209)։

Համառոտակի շարադրելով Հռոմի հոգևորականության սոսկալի, զազրելի արարքները, մերկացնելով Վատիկանի ապականված միջավայրը, Նալբանդյանը եզրակացնում է,— «Ամենայն սուրբ բան դառնում է վաճառելի, առատը և անառակությունը թագավորում է Վատիկանի կամարների տակ» (նույն տեղում)։

Սակայն Հռոմի հոգևորականությունը ձգտում է սուրբ երևալ, իր իշխանությունը ժողովրդական մասսաների աչքում չթուլացնելու, նրանց հնազանդության մեջ պահելու և հետագա շահագործումն ապահովելու համար։ Այդ նպատակով նրանք «օր ըստ օրե,— գրում է Նալբանդյանը,— պատում էին ազգերի միտքը մարդագիր չնչին և սնոտի կանոնների թանձր մառախուղով, որպեսզի նոցա աչքը չկարողանա տեսանել պապականության գործերը» (նույն տեղում, էջ 208)։

Իր շահագործող իշխանությունը ժողովրդական մասսաների վրա հաստատ պահելու համար «պապականությունը պահանջում էր ազգերից,—գրում է Նալբանդյանը,— կույր և անպայման հավատ. հավատ, ոչ թե անմիջապես



դեպի աստված, այլ պապի միջնորդությամբ, որովհետև արքայության բանալին նորա ձեռքումն էր» (նույն տեղում, էջ 209)։

Ինքնին հասկանալի է, որ պապերը ժողովրդական մասսաներին հնազանդության մեջ պահելու համար պետք է պայքարեին լուսավորության դեմ, պետք է անխնա հալածեին պապականության դոգմաներին չհամապատասխանող, նրանց շահերին այս կամ այն չափով վնասող ամեն մի միտք։ «Պապական կրակն ու սուրը,— ասում է Նալբանդյանը,— այրել ու կտրել են այն լեզուքը և այն գլուխները, որոնց անմիջական քարոզությամբ խլրտվել էր մի ճշմարտության լույս պապական անմխիթար և մռայլոտ աշխարհի սահմաններում։ Ճշմարտության և լուսավորության շատ քարոզիչք փչել են յուրյանց վերջին շունչը պապական բանտերի բորբոսած պատերի տակին, չարագործների և ավազակների հետ միասին մի խուրձ հարդի վերա» (նույն տեղում, էջ 215)։

Պապերը արյունալի սպանդներ էին կազմակերպում մարդկանց սարսափեցնելու, նրանց պայքարի ոգին սարկացնելու և հնազանդության մեջ պահելու համար, կամ, ինչպես Նալբանդյանն է գրում. «կույր հնազանդության ծիլը պապական մարդերի հոգու մեջ աճեցնելու համար» (նույն տեղում, էջ 212)։

Հռոմեական եկեղեցին, կաթոլիկ հոգևորականությունը, պայքարելով ամեն մի լուսավոր մտքի դեմ, ուներ իր գաղափարախոսությունը։ Ինչումն էր, սակայն, կայանում պապական գաղափարախոսության էությունը։ Նալբանդյանը միանգամայն պատկերավոր կերպով է բնորոշել այդ գաղափարախոսության էությունը, գրելով, թե «ուսումը և լուսավորությունը, պապական դայակների ձեռքով մատակարարված մարդկային ազգին, նման է օպիումից շինած քաղցրեղենին», որ դայակները (սանացոց մեջ), սովոր են տալ երեխաներին քնեցնելու համար, բայց քաղցրություն խառնելով այդ թմրեցուցիչ հյութի մեջ, որպեսզի մանուկը քաղցրությամբ խաբվելով հոժարի ընդունել» (էջ 215)։

Կաթոլիկ և բողոքական եկեղեցու ու հոգևորականության քննադատությամբ Նալբանդյանն իր ժամանակին հետապնդում էր նաև մի շատ կարևոր քաղաքական նպատակ։ Նա ժամանակին տեսնում ու հասկանում էր, որ ֆրանսիական ու անգլիական կառավարությունններն իրենց ազդեցությունը հայ ժողովրդի, ինչպես և այլ ժողովուրդների վրա տարածելու համար լայն չափով օգտագործում են կրոնը։ Ըմբռնելով, օրինակ, ֆրանսիական դիվանագիտության խաղերը Թուրքիայում, Նալբանդյանը գրում է,— «Դեղձախտի բժիշկ Լուի Ֆիլիպը Դռանը խորհուրդ տվեց, որ նա միանգամայն անխոհեմաբար է կաթոլիկ հայերին հալածում, որ Դռան շահը ոչ թե կաթոլիկ հայերին հալածելու, այլ կաթոլիկության և եթե հնարավոր է՝ որևէ այլ կրոն խրախուսելու մեջ է՝ հայ մասսան իրար աստղ դավանաբանական մի քանի պարտիաների բաժանելու համար։ Իհարկե, Դռնից խնամքով թաքցրին մեղալի մյուս երեսը, որտեղ խորամանկ ձեռքով գրված էր, թե կաթոլիկության համեմատ անում է նաև Ֆրանսիայի բարոյական ազդեցությունը» (Ե. Լ. Ժ., հ. 4, էջ 188)։

Անգլիական և ֆրանսիական կառավարությունները իրենց ազդեցությունը հայ ժողովրդի վրա տարածելու համար ամեն կերպ աշխատում էին հայերին դավանափոխ անել։ Դրանով նրանց համար ավելի հեշտ էր լինում հայերին իրենց տնտեսական ու քաղաքական ազդեցության տակ առնել։ Այս երևույթը հատկապես ուժեղ է արտահայտվել Թուրքահայաստանում։ Թուրքա-

կան տիրապետության տակ գտնվող հայերը, որոնք, ինչպես Նալբանդյանն է գրում՝ «բոլորովին անպաշտպան էին» (նույն տեղում, էջ 188) և ենթարկվում էին փաշաների ու թուրքական իշխող դասի կամայականություններին, առավել հեշտությամբ էին ընկնում կաթոլիկ ու բողոքական եկեղեցու միսիոներների ազդեցության տակ, քանի որ «նրանք իրենց պաշտպանության տակ էին վերցնում այն քրիստոնյաներին, որոնք բողոքական կամ կաթոլիկ էին դառնում»: Հայերի կաթոլիկ կամ բողոքական դառնալն ունենում էր այն հետևանքը, որ նրանք դադարում էին իրենց հայ համարելուց ու, ընկնելով օտարերկրյա միսիոներների ազդեցության տակ, հանդես էին գալիս որպես օտարերկրյա գաղութային քաղաքականության արտահայտիչներ հայ իրականության մեջ: Նալբանդյանը դեմ էր դուրս գալիս անգլիական և ֆրանսիական ազդեցության ուժեղացմանը հայ իրականության մեջ, որովհետև տեսնում էր, որ այն բացասաբար է անդրադառնում հայ ժողովրդի համախմբման ու ազգային-ազատագրական պայքարի վրա, հայ ազգի ինքնորոշման վրա:

Մերկացնելով կաթոլիկ ու բողոքական հոգևորականության էությունը և հայ ժողովրդին ցույց տալով նրանց իսկական դեմքը, Նալբանդյանը, դրանով իսկ, ձգտում էր ետ պահել հայերին բողոքական ու կաթոլիկ հոգևորականության ազդեցությունից:

Այսպիսով, հայ լուսավորչական, կաթոլիկ ու բողոքական հոգևորականության Նալբանդյանի քննադատությունը ցույց է տալիս, որ նա որոշակիորեն կանգնած է այն տեսակետի վրա, թե հոգևորականությունն ամենուրեք ու բոլոր ժամանակներում ծանրացած է եղել ժողովրդի վզին ու հանդես է եկել նրան շահագործողի դերում, որ հոգևորականությունը կաշկանդել է ժողովուրդների ազատության ձգտումն ու միշտ և ամենուրեք հանդիսացել է խավարամտության հենարան: Ըստ Նալբանդյանի, բոլոր հոգևորականները, սկսած Եգիպտոսի քուրմերից, վերջացրած քվակերների քրիստոնեական աղանդով, միայն ձևով են տարբերվել, բստ էության նրանք նույնն են: Նրանք միշտ էլ անջատ են եղել ժողովրդից, բռնացել են նրա վրա, կաշկանդել են ժողովուրդների միտքը և ստրկացրել են նրան թե՛ ֆիզիկապես, թե՛ բարոյապես: Այդ կապակցությամբ Նալբանդյանը գրում է. «Եգիպտական քուրմերից մինչև քվեքրըը՝ կերպարանափոխությունք կան, բայց իրը նույնը կմնա, քանի որ դոքա ինքյանք ժողովրդեն անջատ մարմին մը կձևացնեն: Ազատության պահապանքը դոքա չեն, դոքա ավազակ են ուրիշի խղճի ազատության, դոքա հափշտակում են այդ ազատությունը և քամում են ազատ դատողության վերջին բարոյական զորությունը, որ առավել բացարձակաբար բռնանան յուրյանց որսի վերա: Այսպիսի ընթացքով դոքա միշտ դժբախտ մարդկության ուտիչ ցեցերը պիտի համարվին...» (նույն տեղում, էջ 306):

Նալբանդյանի պայքարը եկեղեցու հոգևորականության, կրոնի, սնահավատությունների ու նախապաշարմունքների դեմ, նրանց ռեակցիոն էության մերկացումը իր ժամանակին խոշոր դեր են խաղացել հայ ժողովրդի դեմոկրատական ուժերի՝ ֆեոդալակղերական խավերի դեմ մղած պայքարում, ուստի և արժանի են բարձր գնահատականի:

# Գիտության աշխարհում

## ՖՈՏՈՍԻՆԹԵԶԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ

Վ. ՂԱԶԱՐՅԱՆ

Բնության զարգացման երկարամյա պրոցեսում ամենանշանակալից թռիչքը, որի շնորհիվ այն ավարտել է իր մանկական շրջանը, ձևավորվել և աքանչելի կերպարանք է ստացել, կապված է կյանքի առաջացման հետ:

Կյանքի ծագումն ու զարգացումն իր հերթին մեծ չափով նպաստել է երկրի կեղևի, մթնոլորտի, ռելիեֆի, կլիմայի և այլ գործոնների վերափոխմանը: Իսկ մարդու՝ գիտակից էակի ծագումը, այդ փոփոխություններին տվել է անսովոր արագություն և ուղղվածություն, որի արդյունքները մենք տեսնում ենք ամեն օր, ամեն ժամ:

Չնայած մարդու նպատակասլաց և ստեղծարար գործունեությանը, անհնար է պատկերացնել կյանքը առանց բույսերի:

Բույսերն այն միակ օրգանիզմներն են, որոնք ընդունակ են անօրգանական տարրերից սինթեզելու էներգիայով հարուստ օրգանական միացություններ: Այս երևույթը, որը դեռ վաղուց ֆոտոսինթեզ անունն է ստացել, բնության ամենահիմնական արտադրական պրոցեսն է:

Բույսերը, որպես օրգանական նյութերի սինթեզի ելակետ օգտագործում են ջուրը և օդի ածխաթթու գազը: Այդ երկու չեզոք միացությունները քիմիապես կապակցվում են բույսի տերևների կողմից կլանված արևի ճառագայթների էներգիայով: Այդ բարդ բիոքիմիական սինթեզի շնորհիվ ստացվում է շաքար, սպիտակուց, ճարպ և այլ կարգի բազմաթիվ սննդային և հումքային պրոդուկտներ: Հետաքրքրական է գիտենալ, որ ցամաքում և ջրում ապրող բոլոր բույսերը միասին վերցրած ամեն տարի սինթեզում են ավելի քան 375 միլիարդ տոննա օրգանական բազմազան նյութեր, որոնք առատությամբ օգտագործվում են երկրի վրա ապրող միլիարդավոր կենդանիների և միկրոօրգանիզմների կողմից:

Կյանքի պահպանման հաջորդ կարևոր պայմանը թթվածնի առկայությունն է, որը նույնպես բույսերի կենսագործունեության արդյունք է: Բանն այն է, որ ֆոտոսինթեզի ժամանակ ջրի միայն մի մասն է ծախսվում օրգանական նյութերի ստացման վրա: Ջրի բաղադրիչ թթվածինը ազատ մոլեկուլների ձևով դուրս է գալիս տերևից: Յուրաքանչյուր տարի երկրի մթնոլորտը և ջրային հսկայական պանգվածները այս եղանակով ստանում են ավելի քան 400 միլիարդ տոննա թթվածին: Բույսերը ֆոտոսինթեզի պրոցեսում միաժամանակ իրար հետ միացնում են ավելի քան 150 միլիարդ տոննա ածխածին և 25 միլիարդ տոննա ջրածին: Ինչպես տեսնում ենք, մեր կանաչ խնամակալները կատարում են մի վիթխարի քիմիական գործարանի դեր, որի արտադրանքով սնվում ու բազմանում են բոլոր կենդանի էակները:

Բույսերի կողմից օրգանական նյութերի սինթեզման ընդհանուր հաշվեկշռի տեսակետից չափազանց ուշագրավ է այն հանգամանքը, որ ամեն տարի երկրի վրա կուտակվող էներգիայով հարուստ օրգանական նյութերի ավելի քան 90 տոկոսը բաժին է ընկնում օվկիանոսային և ծովային բույսերին՝ այն էլ գլխավորապես պլանկտոնային փոքրիկ ջրիմուռներին: Ցամաքային բույսերը տալիս են սինթեզվող նյութերի ոչ ավելի, քան 10 տոկոսը: Ըստ որում բույսերը կլանում են մեր մոլորակին հասնող արևի էներգիայի մեկ 166-րդ մասը: Այդ հսկայական էներգիայի մի փոքր բաժինն է ծախսվում ֆոտոսինթեզի համար, մնացած հիմնական մասն օգտագործվում է արմատներից տերևները բարձրացող ջրի գոլորշիացման վրա:

Ժամանակակից հասարակության զարգացումը սակայն պայմանավորված չէ միայն մեզ շրջապատող բույսերի կենսագործունեությամբ: Բու-

սական աշխարհն իր գոյության միլիոնավոր տարիների ընթացքում երկրի ընդերքում կուտակել և պահպանել է հսկայական էներգիայի աղբյուրներ՝ նավթ, քարածուխ, գազ, տորֆ և այլն: Այսօր արտադրողական ուժերի մակարդակի գլխավոր ցուցանիշներից մեկն այն է, թե ինչպիսի արդյունավետությամբ են օգտագործվում բույսերի կողմից այժմ և միլիոնավոր տարիներ առաջ սինթեզված էներգիայի այդ հարուստ աղբյուրները:

Արդի գիտության կարևորագույն խնդիրներից մեկն է էներգիայի նոր աղբյուրների հայտնագործումը, որովհետև բնության ընդերքում կուտակված էներգիայի պաշարների օգտագործումը տարեցտարի աճում է, իսկ նրանց կուտակումն ընթանում է շատ դանդաղ: Այս տեսակետից մարդկությանը հսկայական ծառայություն կարող է մատուցել ֆոտոսինթեզի պրոբլեմի լուծումը: Նրա ներքին գաղտնիքների պարզաբանումը և արհեստական վերարտադրությունը հնարավորություն կտա միլիոնավոր մարդկանց ազատելու գյուղատնտեսությունից և փոխադրելու արդյունաբերության այլ բնագավառներ: Մյուս կողմից, ֆոտոսինթեզի ներքին մեխանիզմի հայտնագործումը հնարավորություն կտա բույսերի օրինակով և նման վարպետությամբ օգտագործելու արևի ճառագայթների անսպառ էներգիան՝ քիմիական նոր միացություններ ստանալու նպատակով: Բացի դրանից, ֆոտոսինթեզի գաղտնիքի պարզաբանումը լայն ճանապարհ կբացի արևի էներգիայի օգնությամբ ջուրը տարրալուծելու ջրածնի և թթվածնի, որոնք էներգիայի անսպառ աղբյուր են:

Դժվար է այժմ լրիվ պատկերացնել, թե բնության երկարատև պատմության ընթացքում ստեղծված այդ պրոցեսի արհեստական վերարտադրումը ինչպիսի հեղաշրջում կառաջացնի սննդի, էներգետիկայի, քիմիայի և արդյունաբերության մյուս բնագավառներում: Այդ է պատճառը, որ այժմ ֆոտոսինթեզը դարձել է գիտության ամենակարևորագույն, այսպես կոչված, առաջնագույն պրոբլեմը, որի ֆիզիոլոգիական, քիմիական, բիոքիմիական և ֆիզիկական բնույթի ուսումնասիրման վրա տարբեր երկրներում կենտրոնացված են մեծ թվով գիտական ուժեր և ծախսվում են հսկայական միջոցներ:

***

Ֆոտոսինթեզի ուսումնասիրման պատմությունը սկսվում է դեռ նախանցյալ դարի երկրորդ կեսից, անգլիացի գիտնական Պրիստլեի աշխատություններով: Նա առաջին անգամ ցույց տվեց, որ բույսերն այն միակ օրգանիզմներն են, որոնք ընդունակ են արտադրելու թթվածին և նրանով հարստացնելու երկրի մթնոլորտը: Դրանից յոթ տարի հետո, Ինգենհաուզի աշխատասիրություններով հաստատվեց, որ բուսական օրգանիզմներն իրենց այդ կարևոր ֆունկցիան կատարում են միայն արևի ճառագայթների ներգործությամբ: Հետագայում պարզվեց, որ ֆոտոսինթեզի դրսևորման համար անհրաժեշտ է նաև մի այլ գործոն՝ ածխաթթու գազ: Այդ արժեքավոր աշխատությունների շնորհիվ միաժամանակ հնարավոր դարձավ բացատրել Վան Հելմոնտի երկարամյա և մինչ այդ առեղծվածային թվացող փորձը: Նա սովորական դույլի մեջ մի քանի տարիների ընթացքում աճեցրել էր կզալի մեծության մի ծառ և ի պարմանս բոլորի ապացուցել, որ այդ ժամանակամիջոցում դույլում եղած հողի քաշը պակասել է շատ աննշան չափով: Այստեղից պարզ դարձավ, որ բույսի սննդառության աղբյուր են եղել անձրևաջուրը, օդի ածխաթթու գազը և ամեն օր կանաչ տերևների վրա սփռվող արևի կենարար ճառագայթները: Միաժամանակ պարզվեց, որ ֆոտոսինթեզն ընթանում է բույսերի կանաչ պիգմենտի՝ քլորոֆիլի անմիջական մասնակցությամբ, որն ընդունակ է որսալու արևի ճառագայթները և նրա էներգիան օգտագործելու ջրի տարրալուծման, նրանից անջատված ջրածնի և օդից տերևների մեջ թափանցող ածխաթթու գազի քիմիական միացման, այսպես կոչված՝ ածխաջրատների (շաքարների) սինթեզման համար:

Սկսած անցյալ դարի առաջին կեսից հսկայական ջանքեր են գործադրվել ֆոտոսինթեզի ներքին էության խորքերը թափանցելու համար:

Չնայած ֆոտոսինթեզի վերաբերյալ կուտակված մեծ թվով արժեքավոր տվյալներին, որոնք լույս են սփռել նրա բազմաթիվ կողմերի վրա, այնուամենայնիվ, մենք դեռ լրիվ չգիտենք, թե ինչպես է ընթանում այդ հանելուկային պրոցեսը, և այն շարունակում է մարտահրավեր նետել մեզ: Վերջին տասնամյակներում, մեկը մյուսի հետևից գիտնականները լուծել են բույսերի և մարդու համար կենսական նշանակություն ունեցող այդ պրոցեսի բազմաթիվ հանգուցային հարցեր: Ամենից առաջ ճշտված է, որ ֆոտոսինթեզը իրականացվում է առնվազն երկու որակապես տարբեր, իրար հաջորդող՝ լուսաքիմիական և մթային ռեակցիաներով: Վերջինս, չնայած տեղի է ունենում նաև ցերեկվա ժամերին, այնուամենայնիվ նրա դրսևորման համար լույսի առկայությունը անհրաժեշտ չէ:

Մթային ռեակցիան հայտնաբերված է բույսերին կարճ ընդհատումներով լույս և մթություն տալով: Ցույց է տրված, որ կանաչ տերևը, կլանելով ընդամենը 0,0001 վայրկյանի լույս, այնուհետև շարունակում է արտադրել թթվածին մթության պայմաններում, ավելի քան 0,02 վայրկյանում: Հետագա հետազոտությունները հաստատեցին, որ այդ երկու իրար հաջորդող ֆոտոսինթետիկ ռեակցիաներն իրացվում են բույսի ներքին, երկու տարբեր գործոնների անմիջական մասնակցությամբ: Լուսային ռեակցիան ընթանում է բույսի կանաչ գունավորում ունեցող նյութի՝ արևի ճառագայթների կլանիչի՝ քլորոֆիլի, իսկ մյուսը՝ քլորոֆիլակիր բջջի ֆերմենտների օգնությամբ:

Տիմիրյազևի կատարած ուսումնասիրություններն այս բնագավառում խոշոր ավանդ մուծեցին գիտության մեջ: «Քլորոֆիլի հատիկը դա այն կետն է, այն ֆոկուսը երկրի վրա,— գրում է Ա. Տիմիրյազևը,— որի մեջ արևի ճառագայթների կենդանի ուժը վերափոխվում է քիմիական լարվածության»: Կանաչ պիգմենտների այդ հատկությունը Տիմիրյազևն անվանում է ֆոտոսենսիբիլիզացիոն (զգայունացող) ունակություն, որն արտահայտվում է քլորոֆիլի այն հատկությամբ, որ կլանելով արևի էներգիան՝ այն վերափոխում է քիմիականի հենց իր քլորոֆիլի քիմիական վերափոխման ճանապարհով:

Տիմիրյազևի հետագա հետազոտություններով ապացուցվեց, որ քլորոֆիլն անհավասար չափով է կլանում արևի սպեկտրի տարբեր ճառագայթները: Այն արևի լույսից ագահաբար կլանում է ամենաշատ էներգիայով հարուստ կարմիր ճառագայթները, անդրադարձնելով կամ իր միջով բաց թողնելով էներգիայով աղքատիկ՝ հիմնականում կանաչ ճառագայթները:

Ծովերում և օվկիանոսներում ապրող ջրիմուռներից շատերը քլորոֆիլի փոխարեն ձեռք են բերել այլ գույնի պիգմենտներ: Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ այդ բույսերի գունավորումը թելադրվում է նրանց գոյության պայմաններով: Բանն այն է, որ արևի սպեկտրի կանաչ ճառագայթներ տարբեր թափանցելիություն ունեն ջրի տարբեր խորություններում: Մեծ խորությունների են հասնում հիմնականում կարճալիքային ճառագայթները (կանաչ, կապույտ և այլն), իսկ մակերեսային շերտերի՝ ինչպես կարճ, այնպես էլ երկարալիք ճառագայթները: Դրա շնորհիվ ջրի վերին շերտում մեծ է նաև լույսի ինտենսիվությունը: Այս է պատճառը, որ տարբեր խորություններում ապրող ջրիմուռները երկարատև էվոլյուցիայի ընթացքում ձեռք են բերել հնարավորին չափ շատ լույս կլանելու պիգմենտավորում: Այսպես, օրինակ, խորքերում ապրող բույսերն, ունենալով կարմիր պիգմենտ, ամբողջությամբ կլանում են իրենց հասնող կանաչ և կապույտ ճառագայթները, իսկ վերնաշերտերում ապրող ջրիմուռները, ցամաքային բույսերի նման ունենալով կանաչ պիգմենտ, կլանում են գլխավորապես կարմիր, նարնջագույն և կապույտ ճառագայթները: Այսպիսով, բույսերը երկարատև էվոլյուցիայի ընթացքում ստանում են այնպիսի պիգմենտավորում, որն առավելագույն չափով նպաստում է ֆոտոսինթեզի ինտենսիվության բարձրացմանը:

Քլորոֆիլի մյուս կարևոր հատկությունն այն է, որ անընդհատ ենթարկվում է քայքայման և ինքնավերականգնման: Գոյություն ունի ուղղակի կապ քլորոֆիլի այս հատկության և բույսի ֆոտոսինթետիկ ակտիվության միջև: ՀՍՍՌ գիտությունների ակադեմիայի բուսաբանական ինստիտուտի բույսերի ֆիզիոլոգիայի լաբորատորիայում ռադիոակտիվ իզոտոպների օգնությամբ կատարված փորձերը ցույց են տվել՝ որքան ուժեղ է ընթանում քլորոֆիլի մոլեկուլների քայքայման և վերականգնման պրոցեսը բույսերի տերևներում, այնքան բարձր է ֆոտոսինթեզի ակտիվությունը:

Քլորոֆիլի ուսումնասիրության և բնույթի պարզաբանման բնագավառում շրջադարձային էր 1960 թվականը, երբ հնարավոր եղավ քիմիական ճանապարհով ստանալ պարմանալի հատկություններով օժտված այդ նյութը: Այժմ գիտության ջանքերն ուղղված են այն բանին, որպեսզի արհեստական եղանակով ստացվող քլորոֆիլի օգնությամբ ստեղծվեն լուսազգաց հարմարանքներ արևի էներգիայի կլանման և քիմիական սինթետիկ ռեակցիաների համար:

***

Գիտությանը վաղուց հայտնի է, որ բույսերի կենսագործունեության պրոցեսում սինթեզված յուրաքանչյուր գրամ-ատոմ շաքարի օքսիդացման ժամանակ կենդանի օրգանիզմում արտադրվում է 112 մեծ կալորիա էներգիա: Սա ցույց է տալիս, որ բույսի մեջ մեկ գրամ-ատոմ շաքար սինթեզելու համար պահանջվում է նույնքան էներգիա:

Նիլս Բորը և Ալբերտ Էյնշտեյնը 1913 թվականին հայտնագործեցին, որ տարբեր մոլեկուլների կողմից լույսի կլանումը կատարվում է առանձին բաժինների ձևով, այսպես կոչված, քվանտներով: Մեկ գրամ-ատոմ քլորոֆիլն արեգակի կարմիր ճառագայթներից կլանում է 40 մեծ կալորիա: Պարզ է, որ կալորիաների այդ քանակով չի կարելի սինթեզել մեկ գրամ-ատոմ շաքար, քանի որ դրա համար պահանջվում է 112 մեծ կալորիա: Այս հիմք տվեց ենթադրելու, որ մեկ գրամ-ատոմ ածխաջուրը սինթեզվում է 4 քվանտի օգնությամբ, այսինքն 160 կալորիա էներգիայով: Հետագա ճշգրիտ անալիզները ցույց են տվել, որ այդ պրոցեսի իրականացման համար բույսը կլանում է 2 անգամ ավելի ճառագայթային էներգիա, այսինքն 8 քվանտ:

Ֆոտոսինթեզի քվանտային ելքի (քվանտների

քանակը, որի օգնությամբ մեկ մոլեկուլ ածխաթթու գազը միանում է ջրից անջատված 4 ատոմ ջրածնի հետ) որոշման համար գիտնականները դիմել են հետևյալ մեթոդին: Ճշգրիտ կերպով որոշել են տերևի կողմից կլանվող լուսային էներգիան և ֆոտոսինթեզի պրոցեսում անջատված թթվածնի քանակը: Պարզվել է, որ յուրաքանչյուր մոլեկուլ անջատված թթվածնին ընկնում է ոչ թե 4, այլ 8 քվանտ, այսինքն՝ 320 մեծ կալորիա: Այս նշանակում է, որ բույսը՝ կլանած 320 մեծ կալորիայից իր մեջ կուտակում է միայն 112-ը: Այս դեպքում ֆոտոսինթեզի օգտակար գործողության գործակիցը հավասարվում է մոտավորապես 35 տոկոսի: Որպեսզի մեզ հասկանալի դառնա բույսի ֆոտոսինթետիկ կենսագործունեության արդյունավետությունը, նշենք, որ եթե մենք կարողանայինք ինչ-ինչ միջոցներով օգտագործել արևի էներգիայի նույնիսկ 10 տոկոսը, ապա դա մեր էներգետիկայի մեջ ավելի մեծ հեղաշրջում առաջ կբերեր, քան ատոմային էներգիայի ամենալայն օգտագործումը:

Քլորոֆիլի դերը ֆոտոսինթեզի պրոցեսում, որպես քիմիական ագենտ, այժմ պատկերացվում է հետևյալ կերպ: Լույսի քվանտը, որը կլանվում է քլորոֆիլի կողմից, վերջինից դուրս է մղում էլեկտրոնը: Քլորոֆիլի մոլեկուլը զրկվելով էլեկտրոնից գրգռվում է և ձեռք է բերում քիմիական ռեակցիայի ունակություն: Որպեսզի վերականգնըվի քլորոֆիլի նախկին վիճակը, կորցրած էլեկտրոնը նա վերցնում է ջրից, որի հետևանքով ջուրը քայքայվում է, և մթնոլորտ է անցնում նրա թթվածինը: Այսպիսով, քլորոֆիլը վերականգնվում է, իսկ լույսի էներգիան կուտակվում է սինթեզված օրգանական նյութի մեջ քիմիական կապերի ձևով: Այս ցիկլն անընդհատ կրկնվում է: Քլորոֆիլի հենց այս հատկությունն է, որ հնարավորություն է տալիս նրան կատարելու ֆոտոսենսիբիլիզատորի դեր ֆոտոսինթեզի պրոցեսում:

Սակայն բացի քլորոֆիլից, օրգանական նյութի սինթեզմանը մասնակցում են նաև բջջի ֆերմենտները: Բուսական բջիջներում գործում են բազմաթիվ ֆերմենտներ, որոնք ունենալով սպիտակուցային բնույթ, խթանում են քիմիական ռեակցիաները, բայց չեն մտնում նրա վերջնական պրոդուկտների մեջ: Այդ նշանակում է, որ ամեն մի բաժին ֆերմենտ կարող է սինթեզել մեծ քանակությամբ նյութ և այդ պրոցեսում քանակապես մնալ անփոփոխ:

Բուսական և կենդանական բջիջների ֆերմենտները բազմազան են, նրանցից յուրաքանչյուրն ընդունակ է քայքայելու կամ սինթեզելու որևէ բնորոշ օրգանական նյութ: Ֆերմենտների մի մեծ խումբ արագություն է հաղորդում օքսիդացման և վերականգնման ռեակցիաներին, իր հետ միացնելով ջրածինը կամ թթվածինը և այնուհետև դրանք հանձնելով օքսիդացող կամ վերականգնող այլ նյութերի:

Կենդանի օրգանիզմների կենսագործունեության պրոցեսներում ընթացող նյութափոխանակության բոլոր պրոցեսները, այդ թվում նաև ֆոտոսինթեզը, կապված են այդ ֆերմենտների գործունեության հետ: Ֆոտոսինթեզի պրոցեսում ֆերմենտների մասնակցությունն արտահայտվում է այն բանում, որ նրանք լուսային ռեակցիաներում սինթեզված անկայուն նյութերը դարձնում են կայուն՝ ածխաջուր և թթվածին: Վերջինս դուրս է գալիս մթնոլորտ, ապահովելով կենդանիների և հենց իրենց բույսերի շնչառությունը: Շաքարի հիմնական մասը մի շարք այլ ֆերմենտների ներգործությամբ վերափոխվում է դառնալով այլ կարգի օրգանական նյութեր՝ սպիտակուցներ, ճարպեր, վիտամիններ, փայտանյութ և այլն:

Ֆերմենտները ակտիվ մասնակցում են ֆոտոսինթեզի պրոցեսում նաև որպես թթվածնի, ջրածնի, կամ էլեկտրոնների՝ այսպես կոչված փոխադրիչներ: Դրանք հեշտությամբ միանում են ջրածնի կամ թթվածնի հետ և դյուրությամբ էլ վերջիններիս վերադարձնում են այլ օքսիդացող կամ վերականգնող միացություններ: Այսպես, օրինակ, ֆոտոսինթեզի ժամանակ տարրալուծված ջրից անջատված թթվածինն անցնում է շրջապատի օդին, իսկ ջրածինը միանում է փոխադրիչին, որի միջոցով էլ ջրածինը փոխադրըվում և միանում է տերևի մեջ թափանցած ածխաթթու գազի հետ, կազմելով ածխաջուր (շաքար):

Այսպիսով, ֆոտոսինթեզն իրենից ներկայացնում է երկու խումբ իրար հաջորդող ռեակցիաներ: Առաջին խումբ ռեակցիան սկսվում է ջրի օքսիդացումից, այսինքն՝ թթվածնի անջատումը ջրից և նրա փոխանցումը մթնոլորտին: Երկրորդը՝ ջրի ջրածնի փոխադրումը և միացումը օդից կլանված ածխաթթվի հետ, որի շնորհիվ ստացվում են էներգիայով հարուստ շաքարներ:

Այժմ մեզ համար պարզ է, որ ֆոտոսինթեզի պրոցեսում մասնակցում են մի շարք գործոններ՝ արևի ճառագայթները, որպես էներգիայի աղբյուր, ջուրը՝ որպես ջրածնի աղբյուր, օդի ածխաթթու գազը, բույսի քլորոֆիլը՝ որպես արևի էներգիայի կլանիչ և փոխադրիչ քիմիական ռեակցիայի իրականացման համար և նրա մեջ մտնող մի շարք ֆերմենտներ՝ որպես թթվածնի, ջրածնի և էլեկտրոնների փոխադրիչներ: Ամենից քիչ գիտելիքներ մենք այժմ ունենք ֆոտոսինթեզին մասնակցող ֆերմենտների բնույթի, ազդեցության առանձնահատկությունների և նրանց ֆունկցիային նպաստող ֆակտորների մասին: Թեև գիտության ճանապարհը կառիվեր է, խորդ ու բորդ, կասկած չկա, որ գիտնականների ջան-



քերով ֆոտոսինթեզի գործյան հանգույցները նույնպես կհարթվեն:

Մարդկային մտքի վերջին տասնամյակների նվաճումները վկայում են, որ հեռու չէ այն օրը, երբ մարդկությունը մեծ հանդիսավորությամբ կնշի իր նոր և մեծագույն հաղթանակը բնության նկատմամբ: Կինչեն նոր գործարանների շչակներն ի լուր մարդկության, որ նրանց լայնածավալ աշխատամասերում արևի էներգիայի օգնությամբ, կանաչ բույսերի օրինակով արտադրըվում են բազմաթիվ սննդամթերքներ, որոնք այժմ հայթայթվում են անծայրածիր կանաչ դաշտերում միլիոնավոր մարդկանց քրտնաջան աշխատանքով: Դա կլինի մարդու հանճարի մեծագույն հաղթանակը, համայն մարդկության երջանկության կարևոր պայմաններից մեկը:

***

Ֆոտոսինթեզի պրոբլեմի հաջորդ կարևոր խնդիրը, նրա ղեկավարումն է մարդու կողմից: Այս բնագավառում ծավալված ուսումնասիրությունների նպատակն է ֆոտոսինթեզի արդյունավետության բարձրացումը հենց իրենց՝ բույսերի մեջ:

Ցամաքային բոլոր բույսերից օրգանական նյութերի սինթեզման ամենամեծ արդյունավետությամբ օժտված են գյուղատնտեսական կուլտուրաները: Դրանց այս առանձնահատկությունը պայմանավորված է, մի կողմից՝ այն բանով, որ երկարամյա գյուղատնտեսական պրակտիկայում մշակվել են բույսերի աճման մի շարք նպաստավոր ագրոտեխնիկական պայմաններ, մյուս կողմից՝ դարավոր ընտրության և հիբրիդիզացիայի միջոցով բարձրացել են այդ բույսերի կենսունակությունը, նույն թվում և ֆոտոսինթետիկ ակտիվությունը:

Նշանավոր բնախույզ Կ. Ա. Տիմիրյազևի տվյալների համաձայն, մեկ հեկտար տարածություն զբաղեցնող կանաչ բուսական կենսաձևեր, տարբեր ակտիվությամբ են սինթեզում օրգանական նյութերը: Այսպես, օրինակ, անտառային ծառերը տարվա ընթացքում օդից կլանում են ավելի քան 4 տոննա ածխաթթու գազ, մարգագետնային բույսերը՝ 4—5 տոննա, եգիպտացորենը՝ 15 տոննա, իսկ շաքարեղեգն՝ 340 տոննա, այսինքն՝ 85 անգամ ավելի, քան անտառային ծառերը: Բույսերի աճման և բերքատվության բարձրացման հիմնական ցուցանիշներից մեկը նրանց կողմից օդի ածխաթթու գազի կլանման ակտիվությունն է:

Ցամաքային բույսերի կողմից ածխաթթու գազի կլանումը տեղի է ունենում տերևների մակերեսին փռված միկրոսկոպային մեծություն ունեցող ճեղքերի՝ հերձանցքների միջոցով: Այդ նույն անցքերով բույսերը միաժամանակ գոլորշիացնում են արմատների կողմից կլանված ջուրը: Լույսի բացակայության, կամ ջրի պակասի դեպքում այդ հերձանցքները փակվում են, և դադարում է ֆոտոսինթեզը:

Բույսերի արմատային սիստեմի ամբողջ գործունեությունն ուղղված է այն բանին, որ տերևներն առատ քանակությամբ ստանան ջուր և այլ կարգի հանքային նյութեր, իրենց հիմնական ֆունկցիան՝ ֆոտոսինթեզ կատարելու համար: Արմատները տերևներին միաժամանակ մատակարարում են մի շարք այլ կարգի օրգանական ակտիվ միացություններ՝ ամինոթթուներ, ֆերմենտներ, սպիտակուցներ, վիտամիններ և այլն, որոնք նպաստում են տերևների աճմանը և կենսագործունեության բարձրացմանը:

Բույսերի ֆիզիոլոգների վերջին մի քանի տարիների հետազոտություններով ցույց է տրվել, որ տերևների մեջ քլորոֆիլի սինթեզը կապված է արմատների կենսագործունեության հետ: ՀՍՍՌ գիտությունների ակադեմիայի բույսերի ֆիզիոլոգիայի լաբորատորիայում այդ ուղղությամբ կատարված փորձերը հաստատեցին, որ տերևներում քլորոֆիլի սինթեզը իրականացվում է արմատներից ստացվող երկաթ պարունակող ֆերմենտների միջոցով: Երբ այդ ֆերմենտները սպանում ենք բարձր ջերմության ազդեցությամբ, ապա տերևները մնում են դեղնած և ռեդուկցված վիճակում: Այստեղից էլ հասկանալի է, որ տերևների ֆոտոսինթետիկ ունակությունը բարձրացնելու համար անհրաժեշտ է առաջին հերթին բարելավել արմատների աճման և սննդառության պայմանները: Լավ զարգացած արմատային սիստեմ ունեցող բույսերի տերևներն ստանում են առատ ջուր, հանքային էլեմենտներ, արմատներում սինթեզվող տարբեր տեսակի օրգանական ակտիվ նյութեր՝ ֆերմենտներ, ամինոթթուներ, վիտամիններ և այլն: Այս դեպքում զգալի չափով ուժեղանում է տերևների աճը, ֆոտոսինթեզը, ինչպես և ամբողջ բույսի զարգացումն ու բերքատվությունը:

Արմատային սիստեմի զարգացման և նրա գործունեության ուժեղացման նպատակով գյուղատնտեսական պրակտիկայում կիրառվում է հողի փխրեցում, պարարտացում, առատ ջրում և այլն: Բերրի հողերում բույսերի ընդերկրյա սիստեմի զարգացումը հիմնականում ընթանում է ծծող արմատների հաշվին և այս դեպքում յուրաքանչյուր տերևին ընկնում է ավելի շատ ակտիվ արմատային մասսա: Այս տեսակետից բույսերը լավագույն պայմաններում են գտնվում հիդրոպոնիկ մշակման դեպքում: Օրվա ընթացքում արմատային սիստեմը մեկ-երկու անգամ ողողվելով հանքանյութերով հարուստ ջրով, իսկ մյուս ժամերին գտնվելով թթվածնով հարուստ և

խոնավ խճի մեջ, արագ աճում և պարզանում են ծծող և նյութափոխանակություն կատարող արմատները, որոնց մասսային համապատասխան էլ ուժեղանում է, մի կողմից՝ տերևների մատակարարումը ջրով, հանքային և այլ ակտիվ նյութերով, մյուս կողմից էլ ակտիվանում է ֆոտոսինթեզն ու բարձրանում բերքատվությունը:

Ֆոտոսինթեզի ակտիվության բարձրացման կարևոր գործոններից մեկն էլ լույսն է: Լյուբիմենկոյի տվյալների համաձայն, բույսերը լույսի հանդեպ ունեցած իրենց պահանջով բաժանվում են հիմնականում 2 խմբի՝ լուսասեր և ստվերադիմացկուն: Լույսի ինտենսիվության բարձրացմանը կուգահեռ ուժեղանում է լուսասեր բույսերի ֆոտոսինթեզը (իհարկե, որոշակի սահմաններում): Ստվերադիմացկուն բույսերը, որոնք հիմնականում ապրում են անտառային ծառերի ստվերի տակ (խոտերը, թփուտները և այլն) ընդհակառակը, լույսի ուժեղացման դեպքում թուլացնում են ֆոտոսինթեզը: Գյուղատնտեսական բույսերը հիմնականում պատկանում են լուսասերների շարքին: Լուսային ռեժիմի տեսակետից նրանց մշակման ամենառացիոնալ եղանակն այն է, որ դաշտում ստեղծվի այնպիսի խտություն, որպեսզի բույսերը գտնվեն հավասար լուսային պայմաններում, առանց լույսի կորստի և փոխադարձ ստվերի:

Ֆոտոսինթեզի հաջորդ կարևոր ֆակտորն ածխաթթու գազի առկայությունն է: Ինչպես հայտնի է, վերջինիս պարունակությունը մթնոլորտում հասնում է մինչև 0,003 տոկոսի, որը բավարարում է մեր շրջապատի բույսերի նորմալ աճին և կարգացմանը: Սակայն ամենամեծ ֆոտոսինթետիկ արդյունավետություն ստացվում է այն ժամանակ, երբ ածխաթթվի պարունակությունը օդում հասցնում ենք մինչև 8 տոկոսի: Ենթադրվում է, որ երկրի վրա բույսերի ծագման ու կարգացման վաղ շրջանում ածխաթթվի պարունակությունը մթնոլորտում եղել է շատ: Այն նպաստել է փարթամ բուսականության կարգացմանը, որի շնորհիվ մենք այժմ առատությամբ օգտվում ենք երկրի ընդերքում կուտակված ածխի և նավթի պաշարներից: Ներկայումս մի շարք արդյունաբերական ձեռնարկություններին կից ստեղծվում են ջերմոցային տնտեսություններ, որտեղ արհեստական եղանակով օդը հարստացվում է ածխաթթու գազով և այդ ճանապարհով բարձրացվում բույսերի բերքատվությունը:

Ինտենսիվ ֆոտոսինթեզի հաջորդ կարևոր պայմանը ջերմությունն է: Հարավային բույսերի մոտ ֆոտոսինթեզն ինտենսիվ է բարձր ջերմության պայմաններում, իսկ հյուսիսային բույսերի մոտ այն ինտենսիվ է ցածր ջերմաստիճաններում: Բույսերի ռայոնացման հիմնական գործոններից մեկը հենց այս է:

Վերջապես հարկ կա խոսելու և ջրի մասին:

Ամենից հետաքրքրական, և առաջին հայացքից հակասական է այն հանգամանքը, որ երբ հողում պակասեցնում ենք ջրի նորմալ քանակը թեկուզ և 15—20 տոկոսով և ապա ֆոտոսինթեզը թուլանում և նույնիսկ կանգ է առնում: Հենց որ գոլորշով բարձրացող ջրի քանակը պակասում է, փակվում են հերձանքներն ու կանգ է առնում ածխաթթու գազի մուտքը դեպի տերևները: Այս է պատճառը, որ անապատային պայմաններում բույսերը մնում են գաճաճ վիճակում, մինչդեռ խոնավ ու տրոպիկ երկրներում նրանք հասնում են հսկայական մեծության:

Ջուրը բույսի կյանքում մի կողմից կատարում է շրջապատի հետ ջերմակարգավորիչի դեր և դրանով իսկ բույսերին պաշտպանում է ջերմահարվելուց և մահանալուց: Մյուս կողմից՝ նրա մեջ լուծված վիճակում բույսի վերգետնյա օրգաններին է հասցնում հանքային նյութեր, որոնք չնայած անմիջականորեն չեն մասնակցում ֆոտոսինթեզի պրոցեսին, բայց առանց նրանց չեն կարող սինթեզել բույսի կյանքի պահպանման համար անհրաժեշտ օրգանական նյութեր՝ սպիտակուցներ, ֆերմենտներ, վիտամիններ, ճարպեր և այլն: Հետևաբար հանքային էլեմենտների առկայությունը բույսերի մեջ հանդիսանում է նույնպես ֆոտոսինթեզի գլխավոր պայմաններից մեկը:

Ֆոտոսինթեզի իրականացման արտաքին գործոնների այս համառոտ թվարկումից այն տպավորությունը կարող է ստացվել, որ գիտությանն այլևս ոչինչ չի մնում անելու բույսերի ֆոտոսինթետիկ արդյունավետությունը բարձրացնելու գործում: Սակայն, թերևս հարկ կա նշելու, որ մեր գիտելիքներն այս բնագավառում նույնպես անբավարար են: Նախ և առաջ մենք չգիտենք, թե ինչու արտաքին միջավայրի միևնույն գործոնների պայմաններում բույսերի մի խումբը շատ ավելի ուժեղ ֆոտոսինթեզ է կատարում, քան մյուսը: Մենք չգիտենք նաև, թե ինչ եղանակով և ինչպես կարելի է բարձրացնել քլորոֆիլի և ֆոտոսինթետիկ ապարատի կենսագործունեությունը, և մի շարք այլ հարցերի պատասխաններ: Նշանակում է այս բնագավառում նույնպես մեծ են բիոլոգիական գիտության անելիքները, որի ամեն մի նոր քայլը նոր բարիքներ կբերի հասարակությանը:

# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ԱՆՀՐԱԺԵՇՏ ԵՎ ՀԱՎԵԼՅԱԼ ԱՐԴՅՈՒՆՔԻ ՊՐՈԲԼԵՄԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԺԱՄԱՆԱԿ

Ս. ԲԱԴԱԼՅԱՆ

Տնտեսական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր

*Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման արդի էտապում, երբ դրված է ժողովրդական տնտեսության պլանավորման կատարելագործման և կոմունիստական շինարարության մեջ ապրանքա-դրամական հարաբերությունների այնպիսի միջոցների գործիմաց ու արդյունավետ օգտագործման խնդիրը, ինչպիսիք են՝ տնտեսական հաշվարկը, փողը, գինը, ինքնարժեքը, շահույթը և այլն, սոցիալիստական արտադրական հարաբերությունների սիստեմում կարևոր նշանակություն ունի տնտեսական առանձին կատեգորիաների, մասնավորապես անհրաժեշտ և հավելյալ արդյունքի կատեգորիաների սոցիալական իմաստի, նրանց տեղի ու դերի հարցերի ճիշտ մեկնաբանումը: Դրա անհրաժեշտությունը բխում է նրանից, որ ժողովրդական տնտեսության պլանավորման և ձեռնարկությունների արտադրական գործունեության կատարելագործման շատ հարցերի լուծումը պրակտիկորեն դեռևս հենվում է տեսական ոչ բավարար պարզության վրա: Այդ ամենից առաջ վերաբերում է անհրաժեշտ և հավելյալ արդյունքի էության և կազմի հարցին:*

*Սոցիալիզմի հաղթանակով, արտադրության միջոցների մասնավոր սեփականության վերացմամբ և հասարակական սեփականության հաստատմամբ արմատապես փոխվեց անհրաժեշտ և հավելյալ արդյունքի սոցիալ-տնտեսական բնույթը, նրանց կազմը, տեղն ու դերը արտադրական հարաբերությունների սիստեմում:*

*Սոցիալիստական արտադրական հարաբերությունների պայմաններում ինչպես անհրաժեշտ, այնպես էլ հավելյալ արդյունքը պատկանում են աշխատավորներին: Եթե կապիտալիզմի ժամանակ հավելյալ արդյունքն օտարվում է նրա անմիջական արտադրողներից և այն անվճար յուրացվում է շահագործող դասակարգերի կողմից, ապա սոցիալիզմի ժամանակ, ինչպես մատնանշում էր Լենինը, «Հավելյալ արդյունքը գնում է ոչ թե սեփականատերերի դասակարգին, այլ բոլոր աշխատավորներին և միայն նրանց (Լենինյան ժողովածու II, էջ 382):*

*Սոցիալիզմը վերացրեց հավելյալ արդյունքի յուրացման մասնավոր կապիտալիստական ձևը: Արտադրության միջոցների հասարակական սեփականության բազայի վրա հանրայնացվեց հավելյալ արդյունքը, որն օգտագործվում է ամբողջ հասարակության շահերի համար: Դրանում է կայանում այն արմատական փոփոխությունը, որով որոշվում է հավելյալ արդյունքի նոր բնույթը, նրա տեղն ու դերը սոցիալիզմի ժամանակ, նրա փոխհարաբերությունը ազգային եկամտի մյուս մասի՝ անհրաժեշտ արդյունքի նկատմամբ:*

*Հավելյալ արդյունքի հանրայնացման հիման վրա սոցիալիզմը վերացրեց նրա մի մասի պարազիտային սպառումը, որի շնորհիվ անհրաժեշտ արդյունքն ազատվեց կապիտալիստական սահմանափակությունից, քանի որ անհրաժեշտ արդյունքի ծավալի ձևավորումը չի միջնորդավորվում այնպիսի կատեգորիայով, ինչպիսին աշխատուժ-ապրանքի արժեքի կատեգորիան է: Սոցիալիզմը հաղթահարում է անհրաժեշտ արդյունքի ծավալի ձևավորման նեղ շրջանակները: Մարքսը ցույց է տվել, որ կապիտալիզմի վերացմամբ անհրաժեշտ արդյունքը կընդարձակվի մինչև սպառման այն ծավալը, որը, մի կողմից թույլատրվում է հասարակության առկա արտադրողական ուժով, իսկ մյուս կողմից՝ պահանջում է անհատականության լիակատար զարգացում:*

*Սոցիալիզմի ժամանակ անհրաժեշտ արդյունքի ծավալի ընդարձակումը կապված է հավելյալ*

պորտային ծառայությունների մեթոդներն ու սկզբունքները միայն։ Դրանք կբաշխվեն ծրի՝ սպառման հասարակական ֆոնդերի հաշվին, այսինքն՝ այնպես, ինչպես այժմ բաշխվում են լուսավորության, առողջապահության և այլ ծառայությունները։

Այսպիսով, սոցիալիզմի ժամանակ անհրաժեշտ արդյունքը, անկախ նրանից, թե ինչպիսի կոնկրետ ձևերով է հանդես գալիս, թե ինչպիսի սկզբունքներով է բաշխվում և օգտագործվում, իրենից ներկայացնում է կենսամիջոցների ամբողջությունը, որն ապահովում է աշխատուժի վերարտադրությունը և նրա բազմակողմանի զարգացումը։ Ուստի նրա կազմը և ծավալը որոշվում են ոչ միայն սպառման անհատական ֆոնդով, այլև իրենց մեջ ներառում են նաև սպառման հասարակական ֆոնդերը։

Սպառման հասարակական ֆոնդերի ծագումն ու գոյությունը պայմանավորված են արտադրության միջոցների հասարակական սեփականությամբ։ Դրանց ծավալն ամեն մի տվյալ ժամանակաշրջանում որոշվում է արտադրողական ուժերի զարգացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման ձեռք բերված մակարդակով, ազգային եկամտի մեծությամբ և անհրաժեշտ ու հավելյալ արդյունքի հարաբերակցությամբ։ Այդ կապակցությամբ, կարևոր հարցերից մեկը, որը ծագում է սպառման հասարակական ֆոնդերի տնտեսական բովանդակությունը հետազոտելիս, այդ ֆոնդերի աղբյուրի հարցն է։ Շատ հեղինակներ գտնում են, որ սպառման հասարակական ֆոնդերի աղբյուրը հավելյալ արդյունքն է։ Այսպես, ՍՍՌՄ ԳԱ տնտեսագիտական ինստիտուտի հեղինակային կոլեկտիվի կողմից քաղաքատնտեսության դասագրքի չորրորդ վերամշակված ու լրացված հրատարակության մեջ ասված է. «Իբրև աղբյուր, որի հաշվին կազմավորվում են սպառման հասարակական ֆոնդերը, ծառայում են հավելյալ արդյունքի (հասարակության համար արդյունքի) այն մասը, որն ստեղծում են նյութական արտադրության աշխատողները» (էջ 735)։

Դասագրքում, սպառման հասարակական ֆոնդերի աղբյուրի վերաբերյալ այդ հարցադրումը բաժանում են նաև մի քանի այլ տնտեսագետներ (Ն. Լ. Լուշինան, Մ. Ի. Մայակը, Ե. Լ. Մանևիչը և ուրիշներ)։ Այսպես, Լուշինան գրում է. «Սպառման հասարակական ֆոնդերն ունեն կազմավորման մեկ աղբյուր— այդ աղբյուրը հավելյալ արդյունքն է» (Н. Л. Лушина, «Роль и значение общественных фондов потребления при социализме», «Высшая школа», 1962 г., стр. 27)։

Մայակը գրում է. «Սպառման հասարակական ֆոնդերը, ըստ իրենց տնտեսական էության, իրենցից ներկայացնում են հասարակական ամբողջական արդյունքի մի մասը, որը սոցիալիստական հասարակարգում ստեղծվում է ի հաշիվ հավելյալ արդյունքի» (М. И. Майак, «Использование материальных и трудовых ресурсов колхозов и повышение благосостояния колхозников на современном этапе», стр. 428), իսկ Մանևիչն ասում է. «Սոցիալիզմի ժամանակ անհրաժեշտ աշխատանքն ստեղծում է ամբողջական արդյունքի այն մասը (անհրաժեշտ արդյունք), որը սպառողական արժեքների մասսայի տեսքով, գոյամիջոցների տեսքով, ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքի հիման վրա, մտնում է նյութական արտադրության մասնակիցների անձնական սպառման մեջ» (Е. Л. Маневич, «Заработная плата и ее формы в промышленности», 1961 г., стр. 18).

Նման տեսակետները ճիշտ չեն և չեն համապատասխանում կոմունիստական շինարարության պրակտիկային, հակասում են Մարքսի այն դրույթին, որ անհրաժեշտ արդյունքի կապիտալիստական ձևի վերացումը կհասցնի նրա սահմանների ընդարձակման։ Մինչդեռ, ըստ վերոհիշյալ հեղինակների, ստացվում է, որ անհրաժեշտ արդյունքը կարող է իր արտահայտությունը գտնել միայն նյութական արտադրության ոլորտում աշխատողների ըստ աշխատանքի վարձատրման ձևի մեջ։ Այստեղ, ինչպես նկատում ենք, անտեսվում է ո՛չ միայն սոցիալիզմի ժամանակ նոր ստեղծված արդյունքը անհրաժեշտի և հավելյալի բաժանման առանձնահատկությունը, այլ անհրաժեշտ արդյունքը նույնացվում է այն արդյունքի հետ, որը մտնում է նյութական արտադրության աշխատողների սպառման անհատական ֆոնդի մեջ։ Ավելին, այդ տեսակետների համաձայն ստացվում է, որ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու հետ միասին նվազելու է անհրաժեշտ արդյունքի բաժինը և համապատասխանորեն աճելու է հավելյալ արդյունքի բաժինը։ Եթե հարցի այդպիսի մոտեցման տրամաբանությունը շարունակենք, ապա անխուսափելիորեն պետք է հանգենք այն եզրակացության, որ կոմունիստական բաշխման պայմաններում անհրաժեշտ աշխատանքը և անհրաժեշտ արդյունքը կձուլվեն հավելյալ աշխատանքի և հավելյալ արդյունքի մեջ։ Նման մոտեցումը հիմնավորված չէ և հակասում է Մարքսի այն դրույթին, որ կոմունիզմի բարձր փուլում որոշ իմաստով ամբողջ աշխատանքը կդառնա անհրաժեշտ աշխատանք։ Չպետք է մոռանալ, որ արդյունքի տնտեսական բնույթը որոշվում է ոչ թե բաշխման, այլ նրա վերջնական օգտագործման դերով։

Հանրագումարի բերելով սոցիալիզմի ժամանակ անհրաժեշտ արդյունքի մասին ասվածը, կարելի է տալ անհրաժեշտ արդյունքի հետևյալ ձևակերպումը. սոցիալիստական հասարակարգում անհրաժեշտ արդյունքն իրենից ներկայացնում է նյութական ու կուլտուրական կենսամիջոցների այն ամբողջությունը, որն ապահովում է նյութական արտադրության աշխատողի աշխատուժի նորմալ վերարտադրությունը, նրա ու նրա ընտանիքի անդամների բարեկեցությունն ու բազմակողմանի զարգացումը։

Անհրաժեշտ արդյունքը փոխհատուցվում է ինչպես ի հաշիվ սպառման անհատական ֆոնդի, որը բաշխվում է ըստ աշխատանքի քանակի և որակի, այնպես էլ սպառման հասարակական ֆոնդերի հաշվին։

Որոշելով անհրաժեշտ արդյունքի կազմն ու տնտեսական բնույթը, այժմ ցույց տանք սոցիալիստական հարաբերությունների սիստեմում հավելյալ արդյունքի դերն ու բովանդակությունը։

Սոցիալիզմի ժամանակ հավելյալ արդյունքի որոշիչ ու գլխավոր դերը հանդիսանում է ընդլայնված վերարտադրության ապահովումը։ Հասարակությունը պետք է միշտ, ինչպես կոմունիզմի օրոք, արտադրի հավելյալ արդյունք, քանի որ առանց դրա անհնարին է ընդլայնված վերարտադրությունը։

Հավելյալ արդյունքն իր մեջ մարմնացնում է նոր ստեղծված արդյունքի այն մասը, որը հանդիսանում է սոցիալիստական արտադրության աճման, ընդլայնման ու կատարելագործման աղբյուրը։ Դա է հավելյալ աղբյուրի գլխավոր ֆունկցիոնալ դերը սոցիալիզմի ժամանակ։ Սակայն, դրանով չի սահմանափակվում հավելյալ արդյունքի դերը։ Հավելյալ արդյունքը հանդես է գալիս նաև, որպես ռեզերվային և ապահովագրական ֆոնդերի աղբյուր, որոնց անհրաժեշտությունը թելադրվում է արտադրության բուն պայմաններով։

Սոցիալիզմի ժամանակ ռեզերվները զարգանալով պլանաչափորեն, կոչված են նախազգուշացնելու հնարավոր անհամամասնություններից, որոնք ծագում են պլանի իրացման ընթացքում։ Ռեզերվային ֆոնդերի ստեղծման նպատակով տնտեսական շրջանառությունից նոր ստեղծված արդյունքի մի մասի հանումը պայմանավորվում է ընդլայնված վերարտադրության ամբողջ մեխանիզմի նորմալ գործառնության պահանջով։

Ռեզերվներն իրենցից ներկայացնում են արտադրական ու սպառողական ֆոնդերի պոտենցիալ արտահայտությունը, որոնք կազմավորվում են ի հաշիվ հավելյալ արդյունքի։ Սոցիալիզմի ժամանակ հավելյալ արդյունքը հանդիսանում է ոչ միայն նյութական արտադրության ճյուղերի ընդլայնված վերարտադրության, այլև դրա հետ միասին, մի շարք ոչ-արտադրողական ոլորտների գործառնության աղբյուրը, որոնց պահանջն առաջանում է սոցիալիստական հասարակարգի զարգացման և ամրապնդման ընդհանուր շահերից։

***

Սոցիալիստական հասարակարգում, արտադրության միջոցների հանրայնացման և արտադրության նպատակի արմատական փոփոխության շնորհիվ վերացավ անտագոնիզմը անհրաժեշտ և հավելյալ արդյունքի միջև։ Սակայն ճիշտ չի լինի հանգել այն եզրակացության, որ սոցիալիզմի ժամանակ անհրաժեշտ և հավելյալ արդյունքի միջև բացակայում է ամեն մի հակասություն։ Այդ հարցին ճիշտ պատասխանելու համար անհրաժեշտ է ճիշտ գնահատել սոցիալիստական արտադրության նպատակի հետ կապված անհրաժեշտ և հավելյալ արդյունքի միջև այն փոխհարաբերությունը, որն ստեղծվում է վերարտադրության ամբողջ պրոցեսի ընթացքում։

Սոցիալիստական արտադրության նպատակը մարդկանց պահանջմունքների առավել լրիվ բավարարումն է։ Ինչպես ընդգծում էր Լենինը, կապիտալիստական հասարակարգի փոխարինումը սոցիալիստականով իրականացվում է «նրա բոլոր անդամների լիակատար բարեկեցությունն ու ազատ, բազմակողմանի զարգացումը ապահովելու համար» (Երկեր, հատ. 6, էջ 16)։ Իհարկե, դա ամենևին չի նշանակում հրաժարում կուտակումից, ընդհակառակը, ենթադրում է հավելյալ արդյունքի հաշվին օպտիմալ կուտակում՝ հասարակական հարստության ավելացման և սպառման աճի համար։ Այստեղից հետևում է, որ հավելյալ արդյունքի մեծացման սահմանները որոշվում են արտադրության աճի և ընդլայնման հասարակության իրական պահանջներով՝ մարդկանց մշտապես աճող նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարման նպատակով։

Սոցիալիզմի ժամանակ անհրաժեշտ և հավելյալ արդյունքի միջև հակասությունը արտահայտվում է նրանում, որ ազգային եկամտի տվյալ ծավալի դեպքում անհրաժեշտ արդյունքի սահմանների ընդլայնումը կարող է տեղի ունենալ հավելյալ արդյունքի կրճատման հաշվին և ընդհակառակը։ Սակայն, վերարտադրության պրոցեսը դիտելով անընդհատության մեջ, սոցիալիզմի ժամանակ անհրաժեշտ և հավելյալ արդյունքը ո՛չ միայն չեն հակադրվում մեկը մյուսին, այլ ընդհակառակը, իրենց շարժման մեջ ներդաշնակորեն զուգակցվում ու փոխադարձորեն պայմանավորում են միմյանց։ Հավելյալ արդյունքի աճը, պայմանավորելով ընդլայնված

վերարտադրությունը և արագացնելով նրա զարգացման տեմպերը, դրանով իսկ պայմաններ է ստեղծում ժողովրդական սպառման մակարդակի բարձրացման, հետևաբար, անհրաժեշտ արդյունքի ծավալի մեծացման համար։

Կապիտալիզմի պայմաններում անհրաժեշտ արդյունքի չափը որոշվում է աշխատուժի արժեքի մեծությամբ, որն ամեն մի պարագայում հանդիսանում է կոնկրետ, օբյեկտիվ մեծություն։ Այդ պայմաններում հավելյալ արդյունքը հանդես է գալիս որպես նոր ստեղծված ամբողջ արդյունքի և անհրաժեշտ արդյունքի միջև մի տարբերություն։ Սոցիալիզմի ժամանակ, քանի որ աշխատուժն ապրանք չէ, հասկանալի է, որ անհրաժեշտի և հավելյալի միջև հարաբերությունը սահմանելիս այդ չափանիշը չի կարող կիրառվել։ Կապիտալիզմի վերացմամբ հաղթահարվեցին անհրաժեշտ արդյունքի նեղ շրջանակները։ Սոցիալիստական հասարակարգում անհրաժեշտ արդյունքի չափն ու շարժումը սահմանափակված չեն որոշակի տնտեսական օրենքներով։ Այդ նշանակում է, որ արտադրության աճի հետ միասին պետք է համապատասխանորեն աճեն անհրաժեշտ արդյունքի ծավալն ու մակարդակը։ Միևնույն ժամանակ, անհրաժեշտ արդյունքի շարժումը պետք է իրագործվի այնպես, որ չնեղացվեն հասարակական արտադրության հետագա տեմպերի ապահովման կուտակման հնարավորությունները։ Հետևաբար, նոր ստեղծված արդյունքի բաշխման չափանիշը որոշելիս չպետք է ցուցաբերել միակողմանի մոտեցում, այսինքն՝ չպետք է ելնել անհրաժեշտ կամ հավելյալ արդյունքի աճման շահերից։ Սոցիալիզմի ժամանակ անհրաժեշտ և հավելյալ արդյունքի միջև սահմանվող հարաբերակցությունը պետք է արտացոլի հասարակության զարգացման տվյալ էտապում իրար հետ փոխադարձորեն կապված երկու խնդիրների լուծումը, այն է՝ ընդլայնված վերարտադրության բարձր տեմպերի ապահովումը և աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ աճը։

Անհրաժեշտ և հավելյալ արդյունքի միջև հակասությունը արտահայտվում է նրանում, երբ աշխատավարձի աճն առաջ է անցնում աշխատանքի արտադրողականության աճից։ Այդ դեպքում, ըստ էության անհրաժեշտ արդյունքի աճը կարող է տեղի ունենալ հավելյալ արդյունքի հաշվին՝ ի վնաս ամբողջ հասարակության։

Սոցիալիստական էկոնոմիկայի կարևոր օրինաչափություններից մեկն էլ այն է, որ հասարակական աշխատանքի արտադրողականության աճը պետք է առաջ անցնի աշխատավարձի աճից։ Այդ դեպքում միայն կարելի է ապահովել ինչպես արտադրության անընդհատ ընդլայնումը, այնպես էլ աշխատավորների կենսամակարդակի սիստեմատիկ բարձրացումը։

Այլ է իրավիճակը, երբ աշխատանքի արտադրողականությունը առաջ է անցնում աշխատավարձի աճից։ Այդ դեպքում աճում է հավելյալ արդյունքի մասսան, որը հնարավորություն է ընձեռում արտադրության ընդլայնման, ապրանքաշրջանառության զարգացման, փողի գնողունակության և բնակչության կենսամակարդակի բարձրացման համար։

Այլ հավասար պայմաններում, ամեն մի տրվյալ պարագայում անհրաժեշտ արդյունքի բաժնի մեծացումը նշանակում է հավելյալ արդյունքի բաժնի փոքրացում և ընդհակառակը։ Այդ հակասության դրսևորման ձևերից մեկը հանդիսանում է հակասությունը կուտակման և սպառման միջև։

Դեռևս ժողովրդական տնտեսության առաջին հնգամյա պլանի կազմման վերաբերյալ ՀամԿ(բ)Պ XV համագումարի դիրեկտիվներում ասված է. «Արտադրության և սպառման հարաբերակցության բնագավառում անհրաժեշտ է նկատի ունենալ, որ չի կարելի ելնել միաժամանակ թե՛ մեկի և թե մյուսի առավելագույն թվից, որովհետև այդ անլուծելի խնդիր է, կամ թե ելնել տվյալ ժամանակամիջոցում կուտակման միակողմանի շահից... կամ թե ելնել սպառման միակողմանի շահից... անհրաժեշտ է ելնել այդ երկու մոմենտների օպտիմալ զուգակցումից» (ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, երկրորդ մաս, Հայպետհրատ, 1955, էջ 573)։

Կուտակման և սպառման ֆոնդերի օպտիմալ զուգակցումը ենթադրում է ինչպես սոցիալիստական վերարտադրության ընդլայնման ու կատարելագործման, այնպես էլ ժողովրդի կենսամակարդակի անշեղ բարձրացման ապահովումը։

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

## ՖՐԱՆՍԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂՈՒԹԸ XX ԴԱՐՈՒՄ ԵՎ ՖՐԱՆՍԻԱՅԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՍԵԿՑԻԱՅԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

1922—25 թվականներին Ֆրանսիայում առաջացած հայկական գաղութը փաստորեն թվով երրորդն էր. առաջին հայկական գաղութը Փարիզում կազմավորվել էր դեռ XIV դարում, երբ այստեղ էր ժամանել Կիլիկիայի Լևոն VI թագավորն իր շքախմբով։ Երկրորդ գաղութը, որը կազմավորվել էր XVII դարում Մարսելում և հիմնականում բաղկացած էր Պարսկաստանի և Արևելքի այլ երկրների հետ առևտուր անող վաճառականներից, շարունակում էր իր գոյությունը և XX դարի սկզբին ուներ 520 մարդ (տե՛ս J. Mathorez: Les arméniens en France, Paris, 1922, էջ 314)։

1921—1925 թվականներին Ֆրանսիայի հայկական գաղութը խիստ մեծացավ, ընդգրկելով 50.000 մարդ (տե՛ս «Ժամանակ», Ստամբուլ, 1960 թ., հունվարի 7—12)։ Այս աճը բացատրվում է նախ և առաջ Սիրիայից, Լիբանանից, Եգիպտոսից ու Հունաստանից հայ գաղթականների ներհոսքով, ուր նրանք արտաքսվել էին Արևելյան Թուրքիայի հայրենի վայրերից՝ 1915—1918 թթ. արյունոտ դեպքերի ժամանակ։

Ինչպես հայտնի է, այդ տարիներին Օսմանյան կառավարությունն, իր գերմանական դաշնակիցների լիակատար հավանությամբ, սկսեց սիստեմատիկորեն իրականացնել Թուրքական կայսրության մեջ հայ բնակչության բնաջնջման՝ խնամքով մտածված ծրագիրը։ 1915 թվականի վեց ամսվա ընթացքում ավելի քան մեկ միլիոն հայ կոտորվեց, ըստ որում զոհերի թիվը և նրանց բնաջնջման եղանակը իր նախադեպը չունի պատմության մեջ։

Գերմանական կառավարությունը կարող էր կանխել հայ ժողովրդի ոչնչացման Թուրքերի փորձերը, բայց չցանկացավ անել այդ։ Հիմքեր կան ենթադրելու, որ գերմանացիները ողջունում, իսկ երբեմն էլ նույնիսկ խրախուսում էին հայերի բնաջնջումը Թուրքիայում։

Թե ինչու գերմանական կառավարությունը ցանկություն չուներ հայերին պաշտպան կանգնելու, դրա պատճառը պարզ կլինի, եթե հաշվի առնենք, որ հայ վաճառականությունն ու կոմպրադորական բուրժուազիան, մեծ մասամբ իր կրթությունն ստացած լինելով ֆրանսիական կոլեջներում և առևտրական կապերով կապված լինելով Արևմտյան Եվրոպայի, մասնավորապես Ֆրանսիայի հետ, լուրջ խոչընդոտ էր հանդիսանում Թուրքիայում գերմանական վաճառահանման շուկաներին և վտանգավոր մրցակից էր գերմանական կոմիվուա-

յաժորների (առևտրական գործակալների) համար։ Ավելին, Թուրքական կայսրության ներքին վիլայեթներում հանդիսանալով հիմնական առևտրական այն տարրը, որն ընդունակ էր դիմադրելու օտարերկրյա տնտեսական էքսպանսիային, հայերը դրանով իսկ խոչընդոտում էին գերմանական իմպերիալիզմի պլանների իրականացմանը Թուրքիայում։

Ահա հենց այս տեսակետից էլ հայերի կոտորածը ձեռնտու էր գերմանական իմպերիալիստներին և համապատասխանում էր նրանց շահերին։

Բացի Թուրքական իշխանությունների կոտորած մեկ միլիոն[1] հայերից, ավելի քան 600 հազար հայեր էլ տեղահան արվեցին իրենց մշտական բնակավայրերից և քշվելով Սիրիայի, Լիբանանի ու Արաբիայի անապատները՝ դանդաղ մահացման դատապարտվեցին սովից ու ծարավից։ Հազարավոր որբեր թողնվեցին բախտի քմահաճույքին։

Թուրքիայի հայ բնակչության մասսայական բնաջնջումն ու տեղահանությունը բողոքների հուժկու ալիք բարձրացրեց Եվրոպայի բոլոր երկրներում և, մանավորապես, Ֆրանսիայում։ Հայերի պաշտպանությամբ հանդես եկան այնպիսի պետական գործիչներ, ինչպիսիք էին՝ Կլեմանսոն, Բրիանը, գրող Անատոլ Ֆրանսը, ակադեմիկոսներ Լեկոնտը, Պենլվեն, Դեշանելը և Ֆրանսիայի ուրիշ շատ նշանավոր մարդիկ։ Անգլիական փիլիսոփա Հերբերտ Ադամս Հիբոնսը Թուրքիայի հայ բնակչության մասսայական բնաջնջումն անվանեց «նորագույն պատմության ամենասև էջը»։

Առաջին համաշխարհային պատերազմը վերջանալուց հետո Ֆրանսիան, որ բանվորական ուժի պակաս էր զգում, ստիպված եղավ ապաստան և աշխատանք տրամադրել Թուրքիայից փախած տասնյակ հազարավոր հայերի։

1922—1925 թվականներին Սիրիայից, Եգիպտոսից, Լիբանանից և Հունաստանից Ֆրանսիա անցան ավելի քան 45.000 հայեր, այդ թվում Մերձավոր Արևելքում կարմիր խաչի որբանոցներից՝ ավելի քան 5000 հայ որբեր։

Մինչև 1926 թվականը Ֆրանսիայում հայկական գաղութի հայերի թիվը կազմում էր ոչ ավելի, քան 45—50 հազար մարդ, իսկ 1936 թվականին, ըստ Ֆրանսիայի բնակչության 1936 թվականի մարդահամարի արդյունքների, հասել էր արդեն 70.000-ի։

Ֆրանսիայում հայկական գաղութը բաղկացած էր (ներկայումս էլ բաղկացած է) երեք մասից. ա) Հյուսիսային Ֆրանսիայի հայկական գաղութ, կենտրոնը Փարիզ (Մելոն և Ռուան), որտեղ 1939 թվականին ապրում էին ավելի քան 25 հազար հայ. բ) Կենտրոնական Ֆրանսիայի հայկական գաղութ, կենտրոնը Լիոն, որը (Գրենոբլ, Վալանս, Սենտ-Էտիեն և Լանսե քաղաքների հետ միասին) ավելի քան 15 հազար հայ բնակչություն ուներ. գ) Հարավային Ֆրանսիայի հայկական գաղութ, կենտրոնը Մարսել, որի հայ բնակչությունը (Սեն-Լուի, Սեն-Անտուան և այլ արվարձանների հետ միասին) 1936 թվականին կազմում էր ավելի քան 31 հազար մարդ (Մարսելյան ուղեցույց, 1938 թվականի համար, կազմեց Օ. Վարժապետյան, Մարսել, 1938 թ., էջ 9)։

Իր սոցիալական կազմով Ֆրանսիայում հայ բնակչության երկու երրորդ մասը արհեստավորներ և զանազան պրոֆեսիաների բանվորներ էին, իսկ մեկ

---

[1] Ըստ այլ տեղեկությունների 1915—1918 թթ. Թուրքիայում հայերի մասսայական բնաջնջման զոհերի թիվը մեկ ու կես միլիոնից ավելի է։



երրորդը՝ մանր առևտրականներ ու ազատ զբաղմունքի տեր մարդիկ, այդ թվում նաև ինտելիգենցիայի որոշ մասի ներկայացուցիչներ։

Պետք է նշել, որ 1922—1925 թվականներին Մերձավոր Արևելքից 45 հազար հայ փախստականների Ֆրանսիա տեղափոխվելը մեծապես նպաստեց ֆրանսիական էկոնոմիկայի, մասնավորապես ծանր մետալուրգիայի աճմանը։ Տարիներ շարունակ այստեղ լեռնահանքային արդյունաբերությունը բանվորական ուժի, հատկապես հանքափորների կարիք ուներ։ Ֆրանսիացիներն իրենք ամեննին էլ հաճույքով չէին գնում քարածխի հանքերում աշխատելու, որի հետևանքով հյուսիս-արևմտյան և Հյուսիսային Ֆրանսիայի լեռնագործների ընդհանուր թվի ավելի քան երկու երրորդը կազմում էին լեհերը, իտալացիները, բելգիացիները և հայերը։ 1926 թվականին Ֆրանսիայի մետաղամշակման և մեքենաշինական արդյունաբերության մեջ աշխատող 60 հազար օտարերկրացիների ընդհանուր թվի 6,3 տոկոսը հայեր էին։

Ֆրանսիայի ծանր արդյունաբերության մեջ աշխատող 13.330 հայերից 1143 հոգի աշխատում էին հանքահորերում, 2000-ը՝ մետաղամշակման գործարաններում, 3922-ը սևագործներ էին, 572 մարդ աշխատում էին երկաթուղիների և ավտոուղիների շինարարության մեջ և 5693 մարդ՝ արդյունաբերության այլ բնագավառներում (M. Hubert, La population de la France pendant la guerre, Paris, 1946, էջ 830)։

Ֆրանսիայի Շնեյդեր-Կրեզո խոշորագույն գործարանում ավելի քան 500 հայեր աշխատում էին որպես խառատներ, փականագործներ և օժանդակ բանվորներ։ Զգալի թվով հայ բանվորներ աշխատում էին Հարավային Ֆրանսիայի ձեռնարկություններում, սակայն, ի տարբերություն այլ օտարերկրացի բանվորների, հայերը մեծ մասամբ արհմիությունների անդամներ չէին ու չէին մասնակցում տնտեսական պայքարին և աննշան մասնակցություն ունեին գործադուլներին։ Հայ բանվորների անկազմակերպ լինելը ձեռնտու էր ձեռնարկատերերին, որոնք հանգամանքից օգտվելով ավելի խիստ էին շահագործում այդ էժան բանվորական ուժը։ Սովորաբար հայ բանվորների աշխատանքը 15—20 տոկոսով ավելի ցածր էր վարձատրվում, քան տեղական պրոֆմիության անդամներինը։

Հայերը էական դեր էին խաղում Ֆրանսիայի ո՛չ միայն արդյունաբերության, այլև գյուղատնտեսության ու առևտրի բնագավառում։ Այսպես, էն դեպարտամենտում, որի բնակչության հիմնական զբաղմունքը հողագործությունն է, հայերի երկու երրորդը զբաղվում էր ջերմապահությամբ ու գործարանային աշխատանքով, իսկ մեկ երրորդը՝ առևտրական գործերով։ Բացի դրանից, հայերի մի մասն աշխատում էր մետաքսագործական արհեստանոցներում։ Ֆրանսիական գիտնական Աբել Դերուան այդ դեպարտամենտում բնակվող հայերին բնութագրում է որպես «լուրջ և բարեխիղճ աշխատողներ»։

Ձեռնարկատերերի կողմից կատաղորեն շահագործվող հայ բանվորների դրությունն ավելի էր ծանրանում նրանով, որ հայերին, ինչպես և Ֆրանսիայում ապրող ուրիշ օտարերկրացիների, արգելվում էր որևէ քաղաքական կազմակերպության մասնակցել, անկախ նրանից, թե ինչ օրիենտացիայի կազմակերպություն է։ Արգելվում էր նաև, այսպես կոչված, «Կարմիր արհմիությունների» անդամ լինել։

Բուրժուական Ֆրանսիայի կառավարող շրջանները կրակից էլ ավելի շատ վախենում էին իրենց երկրի բանվոր դասակարգի և առավել ևս այլազգիների

միավորումից: Դեռ 19-րդ դարի կեսերին Ֆրանսիայում հրապարակվել էին մի
շարք դեկրետներ և օրենքներ, որոնք սահմանում էին Ֆրանսիայում ապրող
օտարերկրացիների իրավունքներն ու պարտականությունները:

Ի լրումն այս ամենի, 1938 թ. մայիսի 2-ի կառավարական դեկրետով
մտցվեց օտարերկրացիների և Ֆրանսիա ժամանած գաղթականների, այսպես
կոչված, «անօրինականների» և «անցանկալիների» բաժանում: Այստեղ առա-
ջին հերթին մտնում էին այն քաղաքական փախստականներն ու հրեաները,
որոնք փախել էին ֆաշիստական Գերմանիայի և նրա օկուպացրած երկրների
հալածանքներից: Դեկրետով սրանց համար հիմնվեցին համակենտրոնացման
ճամբարներ:

Ֆրանսիայի կոմունիստական պարտիան միշտ էլ պայքարել է, որպեսզի
երկրում ապրող օտարերկրացիներին տրվեն ֆրանսիացիներին հավասար քա-
ղաքացիական իրավունքներ, վերացվեն 1935—1938 թթ. ամոթալի դեկրետ-
ները, որոնք սահմանափակում են անհատի աշխատանքի և գոյության իրա-
վունքները: Ֆրանսիայում ապրող օտարերկրացիների այս վիճակը հրամայա-
բար պահանջում էր, որ հայկական գաղութի աշխատավոր մասսաները հա-
մախմբվեին որևէ քաղաքական կազմակերպության մեջ, որն ունակ լիներ հետև-
վողականորեն պաշտպանելու հայկական գաղութի քաղաքացիական իրավունք-
ները և ազգային շահերը: Այդպիսի կազմակերպություն դարձավ Ֆրանսիայի
կոմպարտիայի հայկական սեկցիան:

## ՖԿՊ ՀԱՅԿԱԿԱՆ ՍԵԿՑԻԱՅԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

Այստեղ մենք հնարավորություն չունենք մանրամասն անդրադառնալու
այն դերին, որը Ֆրանսիայի կոմպարտիայի հայկական սեկցիան 23 տարվա
ընթացքում խաղացել է ֆրանսահայ աշխատավոր բնակչության կյանքում:
Բայց կարելի է միանգամայն որոշակի ասել, որ այդ սեկցիայի ամբողջ գոր-
ծունեությունը, նրա մարտիկների ու հերոսների արիությունը դասակարգային
մարտերի ժամանակ և, մանավանդ, Հարավային ու Կենտրոնական Ֆրան-
սիայում դիմադրության շարժման ժամանակաշրջանում, ցույց են տալիս
ֆրանսահայ կոմունիստների անսահման նվիրվածությունը բանվոր դասակար-
գի և աշխատավոր ժողովրդի գործին, նրանց ջերմ սերը սովետական հայրե-
նիքի նկատմամբ և կատարյալ հավատարմությունը պրոլետարական ինտեր-
նացիոնալիզմի իդեալներին ու դասակարգային համերաշխությունը ֆրանսիա-
կան ժողովրդի հետ:

Սովորաբար, երբ խոսք է լինում դիմադրության շարժման մեջ հայ կոմու-
նիստների խաղացած դերի մասին, շատերը նկատի են ունենում գլխավորա-
պես նրանց միայն ռազմական ուղղությամբ գործադրած ջանքերը, այն է՝ նը-
րանց մասնակցությունը մարտական գործողություններին. ինչ խոսք, որ նրանք
մեծ դեր են խաղացել 1944 թվականին Հարավային ու Կենտրոնական Ֆրան-
սիան ազատագրելու գործում: Սակայն հայ կոմունիստների դերը պետք է դի-
տել ավելի լայնորեն, Ֆրանսիայի բանվոր դասակարգի և նրա փառապանծ
ավանգարդի՝ Ֆրանսիայի կոմպարտիայի երկարամյա պայքարի լույսի տակ:

Առանց հաշվի առնելու հայ կոմունիստների բազմակողմանի գործունեու-
թյունը Ֆրանսիայում 1923—1939 թվականներին, առանց հաշվի առնելու այն
յուրահատուկ պայմանները, որոնցում մղվում էր պայքարը, չի կարելի ըստ



ժության հասկանալ ՖԿՊ հայկական սեկցիայի գործունեության վերջին փու-
լը՝ դիմադրության շարժման մեջ, Ֆրանսիայի ազատագրության համար մղ-
ված պայքարին նրա մասնակցությունը 1944 թվականի ամռանը:

Ֆրանսիայի կոմպարտիայի հայկական սեկցիան հիմնադրվել է Ֆրան-
սիայի կոմպարտիայի կազմակերպումից անմիջապես հետո:

Սեկցիայի առաջին կոմբջիջները երևան եկան Փարիզում, 1923 թվականի
աշնանը, Ֆրանսիայի հայկական գաղութի հիմնական քաղաքական հոսանք-
ների, մասնավորապես դաշնակների, հնչակյանների ու ռամկավարների միջև
մղվող դասակարգային բարդ պայքարի իրադրության մեջ:

Ֆրանսիայի կոմպարտիայի հայկական սեկցիայի կազմակերպիչները ե-
ղան հայ գաղութի այն ժամանակվա ականավոր հասարակական-քաղաքական
գործիչներ՝ Գուրգեն Թահմազյանը, Միսակ Տեր-Միքայելյանը, Երվանդ Քամ-
չյանը, Թորոս Սողիկյանը, Երվանդ Ջյուհերյանը, Պարույր Բոդոսյանը և Բագ-
րատ Ավագյանը: Նրանցից ոմանք կոմունիստների շարքերն անցան հնչակյան
պարտիայից, վերջինիս քաղաքական սնանկացումից հետո:

ՖԿՊ հայկական սեկցիան ուներ սկզբնական կազմակերպությունների լայն
ցանց. դրանք այդ տարիներին կոչվում էին կոմբջիջներ: Այս կազմակերպու-
թյունների թիվը տարեցտարի անընդհատ մեծանում էր: Եթե 1923 թվականին
բջիջներ կային միայն Փարիզում, որտեղ հայ բանվորների թիվը հասնում էր
10 հազարի, ապա 1924 և 1925 թվականներին կոմբջիջների թիվը հասավ 20-ի,
ընդ որում այդպիսիք ստեղծվեցին Ֆրանսիայի զանազան քաղաքներում՝
Գրասում, Սեն-Շամոյում, Վալանսում, Բոլենում և այլուր (Հայկական ՍՍՌ
Կենտրոնական պետական արխիվ, ֆ. 40/113, ցուց. 3, գործ 373, էջ 77—86):

1924 թվականի նոյեմբերին ստեղծվեց Հարավային Ֆրանսիայի հայկա-
կան սեկցիան, իսկ նույն տարվա դեկտեմբերին սեկցիա ստեղծվեց նաև կենտ-
րոնական Ֆրանսիայում:

ՖԿՊ հայկական սեկցիան իր պարտիական օրգանի՝ «Բանվոր—Փարիզ»-ի
միջոցով (որի առաջին համարը լույս տեսավ 1924 թ. հունիսի 1-ին) նշանա-
կալից աշխատանք կատարեց հայ աշխատավորական լայն մասսաներին
սեկցիայի շարքերն ընդգրկելու ուղղությամբ:

1924 թվականի սեպտեմբերին հայ կոմունիստներն առաջին անգամ մաս-
նակցեցին այն հակապատերազմական մասսայական ցույցին, որ կազմակերպել
էր Ֆրանսիայի կոմպարտիան: Բուրժուական Ֆրանսիայի ռեակցիոն շրջաննե-
րին լրջորեն անհանգստացնում էր օտարազգի փախստականների մասնակցու-
թյունն այդ ցույցին: Եվ ոչ միայն Ֆրանսիայի բուրժուաները, այլև Ֆրանսիայի
հայկական գաղութի հայ ազգային բուրժուազիայի ներկայացուցիչները փոր-
ձեցին հայ աշխատավորներին հեռու պահել երկրի քաղաքական կյանքին մաս-
նակցելու փորձերից, ասելով, թե դրանով կհարուցեն «երկրի հյուրասեր տե-
րերի» զայրույթը:

Ռամկավարների պարտիայի օրգան «Ապագա» թերթը իր «Գործողության
վտանգավոր ձև» խորագրով առաջնորդող հոդվածում շոշափելով վերոհիշյալ
ցույցին հայ կոմունիստների մասնակցության հարցը, գրում էր. «Վերջերս
Փարիզի արվարձան Կարտիում կազմակերպված հակապատերազմական ցույցին
մի քանի հայախոս բոլշևիկների վրդովեցուցիչ մասնակցությունը, ինչպես նաև
այդ առթիվ արված փուչ ու փքուն հայտարարությունները մեզ ստիպում են
հասարակության ուշադրությունը մի անգամ ևս դարձնել գործողությունների

այդ վտանգավոր ձևի վրա, որի հետևանքները կարող են կործանարար ազդեցություն ունենալ Ֆրանսիայում ապաստան գտած բոլոր հայերի ճակատագրի վրա»: Այնուհետև թերթը տալիս է Ֆրանսիական «Հայասեր» մինիստր պ. Շոտանի հայտարարությունն այն մասին, որ «...Եթե էմիգրանտներն իրենց հանգիստ պահեն և զգուշանան այն ամենից, ինչ կարող է խառնակություն առաջացնել Ֆրանսիայում, այդ դեպքում նրանք մեզ մոտ կարող են հանգիստ ապրել»:

Եվ թերթը, իհարկե, հավանություն տալով «Հայասեր» մինիստրի հայտարարությանը, եզրակացնում է. «Շոտանի այս հայտարարությունն ուղղված է ինչպես այլազգի ռևոլյուցիոներների, այնպես էլ հայ ռևոլյուցիոներների դեմ: Հայտարարությունը պարզ ու որոշակի է և արդարացի:

Այն բանից հետո, երբ հույների առաջ փակվել են բոլոր դռները, Ֆրանսիայի հյուրասիրությունը վայելող հայերին մնում է միայն գնահատել ֆրանսիացիների մեծահոգությունը, ամենևին չմիջամտել նրանց ներքին գործերին և ապրել համեստ, ինչպես վայել է հյուրերին» («Ապագա», Փարիզ, 1924 թ., 21 սեպտեմբեր):

Ֆրանսիայի հայ հոգևորականությունը ևս չհապաղեց լծվել հայ աշխատավորությանը հայկական սեկցիայի մեջ մտնելուց ետ պահելու տխրահռչակ կոմպանիային: Այսպես, եպիսկոպոս Փալաքյանը 1925 թվականի հոկտեմբերի 16-ին հանդես գալով ծխական հայերի առաջ, հայտարարեց. «Հարկավոր չէ մտնել կոմունիստական կուսակցության և պրոֆմիությունների մեջ: Նա, ով ուզում է այդ, թող գնա Երևան» («Բանվոր—Փարիզ», 1924 թ., 20 դեկտեմբերի):

ՖԿՊ հայկական սեկցիայի ստեղծմանը մեծ օգնություն ցույց տվեց նաև Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմը: Իր խորհուրդներով ու ցուցումներով Ֆրանսիայի հայ կոմունիստներին մեծ օգնություն ցույց տվեց նաև Սովետական Միության կոմունիստական պարտիայի և կառավարության ականավոր գործիչ Ա. Մյասնիկյանը (Մարտունի): «Հայկական քաղաքական կուսակցությունները արտասահմանում» խորագրով իր հիանալի աշխատության մեջ նա հանգամանորեն վերլուծում է Ֆրանսիայի հայկական գաղութի դրությունը, հրատապ խնդիրներ դնում հայ աշխատավորների առաջ, մերկացնում դաշնակավանտյուրիստների դավաճանական դերը, նրանց մտադրությունը՝ պառակտելու հայ և ֆրանսիացի բանվորների դասակարգային միասնությունը՝ ընդհանուր թշնամու՝ բուրժուազիայի դեմ մղվող պայքարում: Նա անսահման սիրով ու հավանությամբ է արտահայտվում ՖԿՊ այն ժամանակ նոր միայն ակիզբ առած հայկական սեկցիայի գործունեության մասին, նշում է նրա թերությունները, արժեքավոր ցուցումներ տալիս՝ Ֆրանսիայի հայ աշխատավորական մասսաներին նրա շարքերը ներգրավելու համար:

Հայտնի է, որ Ա. Մյասնիկյանը, լինելով Անդրֆեդերացիայի կառավարության նախագահ, շատ ժամանակ էր հատկացնում արտասահմանյան հայերին վերաբերող հարցերին: Նա հետաքրքրությամբ հետևում էր արտասահմանյան հայկական գաղութների հասարակական-քաղաքական կյանքի զարգացմանը, ստանում և կարդում էր արտասահմանյան հայ մամուլը, անկախ այն բանից, թե ինչ քաղաքական օրիենտացիա ունեին դրանք, և որոշել էր պատրաստել մի ծավալուն աշխատություն՝ արտասահմանյան հայերի քաղաքական պարտիաների ծագման ու գործունեության մասին: Անժամանակ մահը, սակայն, նրան զրկեց այդ մտադրությունն իրականացնելու հնարավորությունից:



Ամեն տարի նոյեմբերի 29-ի օրը, Հայաստանում սովետական կարգեր հաստատվելու տարեդարձի կապակցությամբ Ֆրանսիայում հազարավոր հայեր արտահայտում էին իրենց նվիրվածությունն ու սերը հայրենիքին, երկրի բազմաթիվ քաղաքներում կազմակերպելով մասսայական միտինգներ, հանդիսավոր նիստեր ու ցույցեր, դրանով իսկ հարուցելով դաշնակ պարագլուխների անզոր կատաղությունը:

Հայ կոմունիստների պայքարը Ֆրանսիայում առանց զոհերի անցնել չէր կարող: Դաշնակ մարդասպանների ձեռքով ընկան սեկցիայի մի քանի տասնյակ ակտիվիստներ, այդ թվում սեկցիայի կազմակերպիչներից մեկը՝ 1920 թվականից ՖԿՊ անդամ Երվանդ Կամչյանը, որին դաշնակներն սպանեցին Մարսելում, 1924 թվականին: 1926 թվականին դաշնակ մարդասպանները Լիոնում գազանաբար սպանեցին 1923 թվականից սեկցիայի անդամ Մխիթար Բաղդասարյանին: 1933 թվականին Գրենոբլում նրանց ձեռքով ընկավ հայրենասեր Մանուկ Մարուքյանը, որի միակ մեղքն այն էր, որ բազմիցս իր հիացմունքն էր արտահայտել Սովետական Հայաստանի սոցիալիստական շինարարության հաջողությունների առթիվ:

Սակայն դաշնակ վարձկանների ոչ տեռորը, ոչ ահաբեկումը չէին կարող հայ գաղութի աշխատավորներին ետ պահել երկրի քաղաքական կյանքին մասնակցելուց: Հետագա տարիներին, այն է՝ 1933—1938 թթ., հայկական սեկցիայի գործունեությունն ավելի ևս ակտիվացավ: Հայ կոմունիստների շարքերում մենք տեսնում ենք արդեն ոչ միայն բանվորների, այլև ազգային ինտելիգենցիայի ներկայացուցիչների: Հայ կոմունիստների դասակարգային գիտակցությունը բարձրացնելու նպատակով ստեղծվում են քաղաքական անգրագիտության վերացման դպրոցներ: Սեկցիայի գործունեությունն զգալիորեն աշխուժանում է ժողովրդական ճակատի կառավարության ստեղծման ժամանակաշրջանում և, մանավանդ, 1936—38 թթ. Իսպանիայում քաղաքացիական պատերազմի ժամանակ:

Ինչպես հայտնի է, միջազգային պրոլետարական համերաշխության ամենաերևելի արտահայտություններից մեկն էր փառապանծ ինտերնացիոնալ բրիգադաների ստեղծումը, որոնք բաղկացած էին աշխարհի 54 երկրների ժողովուրդների ներկայացուցիչներից: 30 հազար կամավորներ իրենց հերոսությամբ մեծարժեք ներդրում արին իսպանական ժողովրդի այն պայքարում, որ մղում էր նա իր ազատության և անկախության համար:

Մեզ հայտնի է, որ ավելի քան հարյուր հայ կոմունիստներ են մասնակցել XIII և XIV ինտերնացիոնալ բրիգադաներում, ինչպես և ռեսպուբլիկական բանակի 5-րդ լեգենդար գնդում:

Ֆրանսիական կոմպարտիան և Ֆրանսիայի հակաֆաշիստական կազմակերպությունները ինտերնացիոնալ բրիգադաներն ուղարկեցին ավելի քան 8000 կամավոր, որոնց մեջ կային և հայեր:

Ֆրանսիայի հայկական պրոգրեսիվ մամուլում բազմիցս հիշատակվել են այն հայերի անունները, որոնք հերոսաբար կռվել են իսպանական ժողովրդի ազատության համար: Նրանցից շատերն այդ պայքարում ընկել են՝ իրենց անունները թողնելով պատմությանը: Դրանց շարքում առաջին հերթին պետք է հիշատակել հայ կոմունիստ, ՖԿՊ անդամ Գրիգոր Արոյանի անունը:

թյունների մոտ երկու հազար հեկտար հողատարածությունները։ Ոռոգման լա-
վագույն սիստեմի ստեղծման գործում կարևոր նշանակություն ունի նաև մանր
գետակների, լճակների, ջրավազանների, ինչպես նաև հեղեղների ջրերի օգ-
տագործումը։ Ջրային այդ ռեզերվներն օգտագործելու դեպքում կարելի է ոռո-
գելի դարձնել գրեթե 1,5 հազար հեկտար տարածություն ևս։

Տարիներ շարունակ շրջանի ներսում անասնաբուծության զարգացման
առաջադրանքները հավասարապես կիրառվել են բոլոր կոլտնտեսություննե-
րում, հաշվի չառնելով դրանցից յուրաքանչյուրի հնարավորությունները։ Դրա
հետևանքով ստեղծվել են խոշոր և մանր ֆերմաներ, որոնք շահութաբեր չեն։
Հետևաբար անհրաժեշտ է հրաժարվել բոլոր տնտեսություններում անասուն-
ների բոլոր տեսակների բուծումը պլանավորելուց և յուրաքանչյուր տնտեսու-
թյունում կենտրոնացնել ու զարգացնել այնպիսի ճյուղեր, որոնք տվյալ պայ-
մաններում առավել բարձր արդյունք են տալիս։ Հայտնի է, որ որքան մեծ են
ֆերմաները, այնքան բարձր են տնտեսական արդյունքները։

Մեր տնտեսությունների ինտենսիվացման համար առանձնապես կարևոր
նշանակություն ունի հողային ֆոնդի ճիշտ օգտագործումը։ Այստեղ հողերի
որակը բնորոշող ցուցանիշներից մեկը տեղի բարձրությունն է։ Հողերի մոտ
53 տոկոսը գտնվում է ծովի մակերևույթից 1500—2000 մետր բարձրության
վրա, իսկ 8 տոկոսն ավելի բարձրադիր է, որտեղ բույսերի վեգետացիայի
շրջանը շատ կարճ է լինում, այդ պատճառով էլ հացահատիկը չի հասունա-
նում և ցրտահարվում է։ Բացի այդ, հողերի մոտ 13 տոկոսը քարքարոտ է,
հատկապես նախալեռնային և լեռնային ենթագոտիների կոլտնտեսություն-
ներում, որոնք լիարժեք չեն։

Հողատարածությունների մյուս առանձնահատկությունը դաշտերի փոք-
րությունն է։ Նման պայմաններում մեքենաներն ու գործիքներն անարտադրո-
ղաբար են օգտագործվում։ Ահա թե ինչու մեր վարչության համար գյուղա-
տնտեսության զարգացման կարևոր հարցերից մեկը մեծ մասսիվային հողա-
կտորների ստեղծումն է։ Բայանդուր, Հալիձոր, Շինուհայր, Խոտ, Քարահունջ,
Տաթև, Սվարանց, Տանձատափ, Մալդաշ, Բարձրավան, Աղբուլաղ, Նոր Առա-
ջաձոր գյուղերի կոլտնտեսությունների դաշտերի ուսումնասիրությունը ցույց
է տվել, որ ամբողջ հողատարածության 45,5 տոկոսն է միայն բաղկացած 4
հեկտար և դրանից մեծ հողակտորներից։ Մնացածը շատ մանրատված հողա-
տարածություններ են։

Ջրաշինարարության և հողաշինարարության կոմպլեքս միջոցառումների
կիրառմամբ հետագա տարիներում գրեթե տնտեսությունների վարելահողերը
կավելանան 8948 հեկտարով, որի շնորհիվ ընդհանուր հողատարածության
մեջ կաճի վարելահողերի տեսակարար կշիռը, 1965 թվականին կազմելով
23,5, 1970 թվականին՝ 26,6, իսկ 1980 թվականին՝ 34,5 տոկոս։

Բերքատվության առաջադրանքի հաջող կատարման համար մեզ մոտ,
ցանքատարածությունների ընդարձակման հետ միասին, կկիրառվի նաև դաշ-
տերի արդյունավետ պարարտացումը քիմիական և օրգանական նյութերով՝
տնտեսությունների ագրոքիմիական քարտեզներին համապատասխան։ Այս
տարի դաշտ կտեղափոխվի 40 հազար տոննա օրգանական և 5613 տոննա
հանքային պարարտանյութ։ Իսկ հետագայում, հատկապես մեծ չափով կա-
վելանա դաշտերի քիմիական պարարտացումը, որի շնորհիվ հեռանկարում
նախատեսվում է յուրաքանչյուր հեկտարից ստանալ հացահատիկ՝ 19, ծխա-



խոտ՝ 25, կարտոֆիլ՝ 300, բանջարեղեն՝ 270, շաքարի ճակնդեղ՝ 300 ցենտ-
ներ։ Դա կնպաստի համախառն բերքի ավելացմանը։ Գյուղատնտեսության
ինտենսիվացման շնորհիվ նախատեսվում է հեռանկարում, մեծ չափով զար-
գացնել հատկապես անասնաբուծությունը։

Անասնաբուծության ինտենսիվացման գործում կազմակերպական ու զոո-
տեխնիկական կոմպլեքս միջոցառումների կիրառման հետ միասին շատ բան
կարվի անասնաբուծության վարման կուլտուրան բարձրացնելու ուղղությամբ։
Կբարելավվի հոտի կառուցվածքը։ Շրջանի Խնձորեսկ, Խնածախ և մյուս առա-
ջավոր կոլտնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ նախիրում կովերի տե-
սակարար կշիռը առկա 33-ից 55 տոկոսի հասցնելու դեպքում կաթի ար-
տադրությունը նախրի յուրաքանչյուր 100 գլխի հաշվով կավելանա 68, մսինը՝
մոտ 12 տոկոսով։ Շատ բան կարվի նաև ոչխարների հոտի կառուցվածքը բա-
րելավելու ուղղությամբ։ Խնձորեսկ գյուղի «Լենինյան ուղի» կոլտնտեսության
փորձը ցույց է տալիս, որ հոտում մայրական կազմը 50-ից 70 տոկոսի հաս-
ցնելու դեպքում բրդի արտադրությունը կավելանա 6, մսինը՝ 24, կաթինը՝
40, իսկ այդ մթերքների համախառն արտադրանքը՝ հոտը սպասարկող յուրա-
քանչյուր աշխատողի հաշվով, մոտ 10 տոկոսով։ Հոտի մայրական կազմը 70
տոկոսի հասցնելու դեպքում ոչխարաբուծության համախառն արտադրանքի
մեջ մսի տեսակարար կշիռը կաճի, կազմելով 48,7, բրդինը՝ 44,2 և կաթինը՝
7,1 տոկոս։ Ոչխարաբուծությունը կդառնա ամենաշահութաբեր ճյուղը։

Գյուղատնտեսության ինտենսիվացման կարևոր ռեզերվներից մեկն էլ
արտադրության մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումն է, առաջավոր տեխնի-
կայով արտադրության բոլոր ճյուղերի հետագա հագեցումը։ Գյուղատնտեսա-
կան աշխատանքների մեքենայացումն զգալի չափով կնպաստի աշխատանքի
արտադրողականության բարձրացմանը։ Կոլտնտեսությունում մեքենայացված
են միայն հացահատիկային կուլտուրաների վար ու ցանքի և բերքահավաքի
50—55 տոկոսը, անասնաբուծության մեջ՝ ոչխարների խուզը, իսկ անասնա-
բուծական մի քանի ֆերմաներում՝ նաև աղբի հեռացումը։ Մեքենայացման
նման ցածր մակարդակն է բերքատվության և անասնաբուծության ցածր մթե-
րատվության պատճառներից մեկը։

Շրջանի առաջավոր տնտեսությունների մշակած տեխնոլոգիական քար-
տերի համաձայն կբարձրանա շրջանի գյուղատնտեսական աշխատանքների մե-
քենայացման մակարդակը։ Տնտեսությունների մեքենայական պարկերը կհա-
րստանան եգիպտացորեն հավաքող կոմբայններով, կախովի վարի գութան-
ներով, պլանտաժի գութաններով, պարարտանյութեր ցրող և այլ նորագույն
մեքենաներով։ Պարկի նման կազմը հնարավորություն կտա ավելացնելու մե-
քենայացված աշխատատար պրոցեսները։ Կմեքենայացվեն նաև անասունների
խնամքի և օգտագործման պրոցեսները։

Առ այսօր Գորիսի շրջանի կոլտնտեսություններում անբավարար է աշ-
խատանքի արտադրողականության մակարդակը։ Շատ կոլտնտեսություններում
գյուղատնտեսական մթերքների արտադրության վրա ծախսվում են շատ աշ-
խատանք և նյութական ու դրամական զգալի միջոցներ։ Այսպես, 1962 թվա-
կանին 25 կոլտնտեսություններից 15-ում մեկ ցենտներ հացահատիկի ար-
տադրության վրա ծախսվել է 15 աշխօր, կամ, առաջավոր տնտեսությունների
համեմատությամբ, 7—9 անգամ ավելի, 5 կոլտնտեսություններում՝ ծխախո-
տի մեկ ցենտների վրա ծախսել են 98 աշխօր, իսկ առաջավոր տնտեսություն-

*ներում՝ 32, կամ 3 անգամ պակաս, 9 կոլտնտեսություններում մեկ ցենտներ կաթի արտադրության վրա ծախսվել է 72 աշխօր, որը երեք անգամ ավելի է առաջավոր տնտեսությունների ծախսածից։ 1962 թվականին շրջանի կոլտնտեսություններում մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը եղել է 15 ռուբլի, որը խիստ բարձր է ռեսպուբլիկայի միջին ցուցանիշից։ Իսկ 9 կոլտնտեսություններում այն կազմել է 23 ռուբլի։ Հացահատիկի մեկ ցենտների ինքնարժեքը եղել է 110 ռուբլի, իսկ 14 կոլտնտեսություններում՝ 150—160 ռուբլի, որը խիստ բարձր է։ Այդ բացատրվում է նրանով, որ շրջանի կոլտնտեսություններում ցածր են դաշտերի բերքատվությունն ու անասունների մթերատվությունը, բարձր աշխատանքի ծախսումները։*

*Գյուղատնտեսության ինտենսիվացման ռեզերվների լրիվ օգտագործման շնորհիվ հնարավոր կլինի բարձրացնել գյուղատնտեսության մակարդակը։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման շնորհիվ կավելանա նաև ապրանքային արտադրանքը։ Կոլտնտեսություններում ապրանքային հացը կկազմի 6804 տոննա կամ հացի համախառն արտադրանքի 19,8 տոկոսը, 1958 թվականի 6,8 տոկոսի դիմաց, պտուղը՝ 1300 տոննա կամ 19 տոկոսը, խաղողը՝ 3500 տոննա կամ 35 տոկոսը, միսը՝ 8 հազար տոննա կամ 75 տոկոսը, կաթը՝ 23 հազար տոննա կամ 68,8 տոկոսը, ձուն՝ 23 միլիոն հատ կամ 58,4 տոկոսը։ Այս ամենի շնորհիվ 13,5 անգամ կավելանան կոլտնտեսությունների դրամական եկամուտները, զգալիորեն կբարելավվեն կոլտնտեսականների նյութական պայմանները։*

*Ահա թե ինչպիսի հեռանկարներ են բացում կոլտնտեսային գյուղացիության առաջ տնտեսության ինտենսիվացումը, մասնագիտացումը, հողագործության լայն քիմիացումը։ Պարտիայի ծրագրած այդ ուղին կոլտնտեսային աշխատավորությանը տանում է դեպի նոր կյանքի բարձունքները։*

ՔՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
ՀԿՊ Գորիսի գյուղական արտադրական
կոմիտեի քարտուղար

# ՄԻ ՀՈՒՇԱՐՁԱՆԻ ՃԱԿԱՏԱԳԻՐԸ

Հայկական լեռնաշխարհը հարուստ է նախորդ սերունդների կյանքն ու գործունեությունը պատկերող բազմապիսի հուշարձաններով: Դրանք մեր ժողովրդի, նրա նախնիների թողած մշակույթի գանձերն են և նրանց ստեղծագործ աշխատանքի ու պայքարի պերճախոս վկաները: Նրանցից շատերը կանգուն են, մի մասը կիսավեր, բայց բոլորն էլ հավասարապես արժանի են ուշադրության ու խնամքի: Սովետական մարդիկ հարգանքով, երախտագիտությամբ են վերաբերվում ու խնամքով պահպանում նախնիների թողած, նրանց հիշատակը հավերժացնող հուշարձանները: Այլ կերպ չի կարող լինել, քանի որ «Ավերակների փոշիներից է կազմվում այն շաղախը, որը միացնում է ներկա սերունդի սրտերը նախահարց հետ» (Րաֆֆի): Երախտապարտ սովետական մարդը մեծ հետաքրքրությամբ ցանկանում է իմանալ նաև այդ հուշարձանների տակ թաղված գաղտնիքները: Շնորհակալ շատ բան է արված այդ ուղղությամբ: Սակայն, չնայած դրան, այնուամենայնիվ, մեր ռեսպուբլիկայի սահմաններում, անգամ մեր ոչ շատ հեռավոր անցյալի հետ առնչվող, առանձին հուշարձաններ կան, որոնց պատմությունը դեռևս մնում է թաղված անհայտության մշուշի մեջ:

Ուշադրության արժանի այդպիսի հուշարձանների թվին է պատկանում Փամբակի գեղատեսիլ գոգահովտում, Սպիտակ և Սարալ գյուղերի դիմաց, հղկված սև քարից կառուցված բուրգը: Սպիտակի, Ջաջուռի, Պուշկինի բարձրադիր լեռնանցքներից իջնող և Կիրովականից Փամբակի հովիտը ճեղքող մայրուղիների խաչմերուկում բարձրացող այդ բուրգի մոտով ամեն օր հարյուրավոր մարդիկ են անցնում՝ ոմանք չեն նկատում, ոմանք նկատում, դիտում ու անցնում են առանց որոշակի տեղեկություն իմանալու այդ համեստ հուշարձանի մասին: Բայց այն ունի իր պատմությունը: Մինչ այդ պատմությունը շարադրելը, հենց սկզբից ասենք, որ այն 19-րդ դարի արշալույսին շահական Պարսկաստանի և սուլթանական Թուրքիայի դաժան լծից Հայաստանի ազատագրության համար մղված կռիվներում ընկած ռուսական բանակի զինվորների առաջին եղբայրական հուշարձանն է հայկական հողում: Հայ ժողովրդի զավակների արյան հետ այստեղ թափվել է ռուս, վրացի, ադրբեջանցի և եղբայրական մյուս ժողովուրդների զավակների արյունը: Փամբակ գետի ափին բարձրացող բուրգը դրա խորհրդանիշն է:

Ժամանակի ընթացքում այդ բուրգի հետ շատ բան է պատահել: Մի անգամ նա ավերվել է պարսկական բռնադատիչների ձեռքով, իսկ երկրորդ անգամ՝ 1918 թվականի մայիսին, թուրքական հրոսակները բուրգի վրայից պոկել տարել են մարմարյա հուշատախտակը: Հենց այդ ժամանակից էլ այն դարձել է «անանուն»: Ճիշտ է, հայոց հողը իր ծոցում պահում է հուշարձանի տակ հանգչող քաջերի նվիրական աճյունները, բայց այդ քիչ է: Հայրենիքի, ժողովրդի ազատության պայքարի ճանապարհին ընկած քաջերը չեն կարող անհայտության մեջ մնալ: Նրանց անձի ու գործերի մասին պետք է գիտենան սերունդները:

Անցյալ տարի Սովետական Վրաստանի պետական կենտրոնական պատմական արխիվում աշխատելու ժամանակ մեր ուշադրությունը գրավեց «Խիզախ մայոր Մոնտրեզորի հուշարձանի վերականգնման մասին» գործը: Այն իր սկիզբն է առել 1835 թ. սեպտեմբերին և բաղկացած է 77 թերթից: Ժամանակի ընթացքում դեղնած այդ թղթերն էլ իրենց մեջ «թաքցնում են» վերը նշված հուշարձանի պատմությունը: Նորահայտ նյութերի թվում են Վրաստանի գերագույն կառավարիչ և ռուսական զորքերի կովկասյան կորպուսի գլխավոր հրամանատար գեներալ Ցիցիանովի՝ ցարին ուղղված զեկուցագրերը, ինչպես նաև պաշտոնական անձանց և ժամանակակիցների վկայությունները 1804 թվականին Հայաստանում տեղի ունեցած իրադարձությունների ու այս հուշարձանի տակ հանգչող մարդկանց գործերի մասին և հուշարձանի նախագիծը:

***

1801 թվականին Վրաստանի հետ Ռուսաստանին միացվեցին նաև Հյուսիսային Հայաստանի որոշ տերիտորիաներ, այդ թվում նաև Փամբակի Գոգահովիտը՝ Ղարաքիլիսա (այժմ Կիրովական) կենտրոնով: Այնտեղ եկան ռուսական ջոկատներ, որոնց կազմում կային նաև շատ հայ զինվորականներ: Ավելի ռեալ դարձավ հայ ժողովրդի երազը՝ Ռուսաստանի օգնությամբ ազատագրել իրենց հայրենիքն ու ժողովուրդը պարսկական ու թուրքական բռնակալների դարավոր դաժան լծից: Գոտեպնդված Ռուսաստանից սպասվող օգնությամբ, Հայաստանի տարբեր վայրերում, օտար կեղեքիչների դեմ, նորից ծայր առան ժողովրդական զինված ելույթները: Պարսկական խաները հայերին որակելով «ներքին թշնամի», նոր, ավելի բիրտ հալածանքների են ենթարկում նրանց:

Ռուսաստանի հովանավորության տակ անցնելու մասին Երևանի Մահմադ խանի արած կեղծ հավաստիացումները և հայերի նկատմամբ նրա

թյան ընդլայնմամբ ամենայն հավանականությամբ կկրճատվի անասնաբուծական մթերքների արտադրությունը և դրա հետ կապված նյութերի՝ անասնապահության, կաթնատնտեսության, թռչնաբուծության և ձկնորսության ծավալը:

Մի խոսքով, հեղինակը մեզ հանձնարարում է վերադառնալ նախնադարյան ժամանակաշրջանին, ժխտում է արդի քաղաքակրթության նվաճումները, այդ թվում նաև այն հաջողությունները, որ ձեռք են բերվել բերասնման ու մասսայական հիվանդությունների դեմ մղվող պայքարում: Այսպիսով, մեր աչքի առաջ կրկին հառնում են առնում այդ հարցի վերաբերյալ ժան ժակ Ռուսսոյի վաղուց հերքված հայացքները: Հիրավի, ո՞ւմ հայտնի չեն այն զգալի հաջողությունները, որ գիտությունն այսօր ձեռք է բերել ապիտակուցների, ճարպերի ու ածխաջրերի և, հատկապես, վիտամինների ուսումնասիրության բնագավառում: Մասնավորապես մեզ զարմացնում է, որ հեղինակն անտեսում է վիտամինագիտության այնպիսի խոշորագույն նվաճումը, ինչպես բեր-բերի, պելագրա, լնդախտ և այլ հիվանդությունների վերացումը, որոնք առաջ միլիոնավոր զոհեր էին խլում, իսկ այժմ նկատվում են միայն քույլ զարգացած երկրներում, այն էլ հազվադեպ: Այդ և նման փաստերի առկայության դեպքում մի՞թե կարելի է գործն այնպես պատկերել, թե մարդկությունը ոչ միայն որևէ հաջողություն չունի այդ բնագավառում, այլև հաշտվում է վնասաբեր մսակերության և սննդամթերքները ջերմային եղանակով մշակելու հետ:

Իր մենագրության 56-րդ էջում հեղինակն այն միտքն է հայտնում, թե մարդկային օրգանիզմը մեքենա է, բայց ավելի բարդ կառուցվածքով. երբ մեքենան զրկվում է խնամքից, ապա ժամանակի ընթացքում արագորեն փչանում է և անպետքանում: Հազիվ թե կարելի է համաձայնել մարդկային օրգանիզմի և մեքենայի նման համեմատության հետ: Դեռ 30 տարի առաջ սննդագիտության բնագավառի խոշորագույն ներկայացուցիչներ՝ Գ. Շերմանը և Կ. Շերմանլենֆորդը նշել են, որ այդպիսի նմանեցումը մոլորություն է. մարդկային օրգանիզմը որակապես ավելի կազմակերպված և բարձրագույն կարգի մի ամբողջություն է, որի համար ֆիզիկայի ու մեխանիկայի օրենքները միշտ չէ, որ պարտադիր են: Այստեղ հաճախ գործում են կենսաբանական առանձնահատուկ օրենքները:

Փորձելով օգտագործել կլինիկական նյութերն ու վիճակագրությունը, հեղինակն իր գրքի 57-րդ էջում հայտարարում է. «Մենք մինչև հիմա չանացել ենք քույլերի առողջությունն ամրապնդել հավի բուլիոնով, ձվով, լյարդով, կաթով, սպիտակ հացով և այլն: Սակայն 10 հազար դեպքից ոչ մեկում մեզ չի հաջողվել դրան հասնել: Պատճառն այն է, որ մենք անտեսում ենք հումակերությունը»: Նրա կարծիքով, երբ գիտությունն օգտագործի բուսական սննդամիջոցների հումակերության ընձեռած բոլոր հնարավորությունները, ապա մարդկության հաջորդ սերունդները կարող են հասնել երկարակեցության՝ 200—250 տարվա սահմաններում: Իմիջիայլոց, գրքում հաղորդվում է, թե մինչև մսեղեն սննդին անցնելը մարդկությունն արդեն հասել էր երկարակեցության 100—150 տարվա սահմաններում և թե դրա նվազումը տեղի ունեցավ անցած հազարամյակում՝ մսի և եփած կերակուրների գործածության հետևանքով:

Հեղինակի այս պնդումները ոչնչով չեն հիմնավորված իրականում: Փաստերը վկայում են, որ մի շարք երկրներում հասել են այնպիսի դրության, որ կյանքի միջին տևողությունը 30 տարուց հասել է 70-ի (ՍՍՌՄ, ԱՄՆ, Շվեդիա, Դանիա և այլն):

Հասարակական սննդի խելացի և ռացիոնալ կազմակերպումը, անշուշտ, մեծ օգուտ է հասարակությանը, որը շահագրգռված է խելամտորեն ծախսել սննդի ռեսուրսները և առավելագույն օգտավետությամբ յուրացնել նրանց պոտենցիալ էներգիան ու որակական հատկությունները: Ցավոք սրտի, դա միշտ չէ, որ հաջողվում է: Ուստի իրավացի է հեղինակը, երբ շեշտում է, որ այժմ պատշաճ խնամքով չեն վերաբերվում սննդամիջոցներին: Հանրահայտ է, որ մի շարք երկրների բնակչության 10—15 տոկոսը սննդամիջոցները օգտագործում է շռայլորեն, հաշվի չառնելով օրգանիզմի կենսական պահանջները, որն առաջ է բերում ոչ միայն նարպակալում, այլև նյութափոխանակության պրոցեսների խանգարում, ստամոքսային մասսայական հիվանդություններ: Արդի գիտությունը փորձեր է անում սնման այդ սխալ պրակտիկան վերացնելու ուղղությամբ:

Բացի վերը նշված սխալ մեկնաբանություններից, գիրքը տառապում է նաև մի շարք այլ թերություններով: Մենագրության հիմնական թուլությունն այն է, որ նրա հեղինակը միասնական աշխարհայացք չունի սոցիալ-տնտեսական ու կենսաբանական հարցերում: Նա տեսական խոր վերլուծման չի ենթարկում բնակչության սնման պատմական պրոցեսը: Մի շարք դեպքերում նա մոտենում է այդ պրոցեսի մատերիալիստական ըմբռնմանը, մի շարք դեպքերում էլ այն քննում է իր սուբյեկտիվ կոնցեպցիայի տեսակետից:

Համարձակորեն կարելի է ասել, որ մսի գործածությունը հանդիսացել է մարդկության առաջադիմության վճռական գործոններից մեկը: Մարդը հնարավորություն ստացավ մսի մեջ



գտնելու ո՛չ միայն խտացված էներգետիկ նյութ, այլև բարձրարժեք քիմիական միացություններ՝ օրգանիզմում սպիտակուցներ, ֆերմենտներ, հորմոններ և այլ ակտիվ նյութեր սինթեզելու համար: Այսպիսով, թե՛ մսեղեն սննդին, թե՛ հում մթերքները եփելուն անցնելը պետք է դիտել որպես բնապատմական պրոցես:

Անվիճելի է էնգելսի այն ենթադրությունը, թե՝ «ձևավորվող մարդը որքան ավելի էր հեռանում բուսական թագավորությունից, այնքան ավելի էր նա վեր բարձրանում նաև կենդանիներից»: Իսկ «Հումակերություն» մենագրությունից ստացվում է այն տպավորությունը, թե այդ կախված է եղել մարդկանց կամքից ու ցանկությունից և ոչ թե սոցիալ-տնտեսական պատճառներից:

էնգելսի մտքի ճշտությունը հաստատում է նաև բուսական և մսեղեն սննդի մարսողության պրոցեսի ցուցանիշների զուգորդումը: Մսի գործածության դեպքում կրճատվում է մարսողության տևողությունը, բարձրանում է սննդի յուրացման աստիճանը, ակտիվանում է օրգանիզմի կենսագործունեությունը, մարդն ավելի մեծ կենսունակություն և դիմադրողականություն է ցուցաբերում արտաքին միջավայրի վնասակար գործոնների նկատմամբ: Ֆ. էնգելսի արտահայտությամբ «Մսեղեն կերակուրն ամենից ավելի էական ազդեցություն ունեցավ ուղեղի վրա, որը դրա շնորհիվ առաջվա համեմատությամբ շատ ավելի մեծ քանակությամբ ստացավ այն նյութերը, որոնք անհրաժեշտ են նրա սնման ու զարգացման համար» (Ֆ. էնգելս, Բնության դիալեկտիկա, էջ 193):

Այսպես, ուրեմն, բուսական սննդի հետ միասին, մսի գործածությունը չափազանց նպաստեց մարդու ֆիզիկական ու մտավոր ունակությունների ձևավորմանն ու դրսևորմանը: Միսը մարդու սննդի ռեսուրսները հարստացրեց կենսաբանորեն ակտիվ այնպիսի սննդամթերքներով, ինչպիսիք են՝ կաթն ու կաթնաթթվային մթերքները: Այս դրույթների ճշտությունն այսօր ընդունել է համաշխարհային սննդագիտությունը: Հենց այդ է պատճառը, որ մեր երկրում բացառիկ ուշադրություն է հատկացվում մսի, մրգամթերքների և կաթի արտադրության աճին:

Մարդու սնման հետևյալ էտապը, անշուշտ, պետք է համարել եփած սննդի գործածությունը (հենց մսեղեն սննդի յուրացումը կապված է եղել կրակի օգտագործման և կենդանիների ընտելացման հետ): Եփումը մեծ չափով կրճատեց աղե-ստամոքսային տրակտում սննդի քայքայման ու յուրացման տևողությունը: Այս տեսակետից ուշագրավ է էնգելսի արտահայտած այն միտքը, որ մսի ու կաթի առատ սնունդը պակաս դեր չի կատարել իրենց ժամանակին առաջավոր այնպիսի ռասաների հաջող զարգացման գործում, ինչպիսիք են՝ արիացիներն ու սեմիտները: Այսպիսով, միսը, սննդի ջերմային վերամշակումը արմատական ազդեցություն գործեցին մարդու վրա, բարբարոսությունից քաղաքակրթությանն անցնելու ժամանակաշրջանում:

Չնայած Ա. Տեր-ովի մենագրության վերոհիշյալ ստվերոտ կողմերին, այնտեղ կան նաև ուշագրավ սույթներ: Այսպես, օրինակ, ճիշտ է, որ բժշկության ներկայացուցիչները հաճախ չեն օգտագործում բուժիչ սննդի հսկայական հնարավորությունները և կողմնորոշվում են դեպի սինթետիկ պրեպարատները, որոնք շատ դեպքերում դառնում են ալերգիական հիվանդությունների պատճառ: Մինչդեռ բուժիչ սնունդն ավելի մասսայական մաշտաբներով ու նպատակասլաց օգտագործելու դեպքում կարելի էր հասնել ոչ պակաս հաջողությունների հիվանդների բուժման և մի շարք հիվանդությունների կանխման, ինչպես նաև կյանքի երկարացման գործում:

Մենագրության հեղինակը կանգ է առնում նաև տեխնիկայի զարգացման այս էտապում զգալի քանակությամբ զտված պրեպարատների (շաքար, կոնցենտրատներ և այլն) կամ պապիտամինացված մթերքների արտադրության վրա, այդ համարելով բացասական երևույթ՝ բնակչությանը կենսաբանորեն լիարժեք սննդամթերքներով ապահովելու տեսակետից: Մենք համամիտ չենք հեղինակի այս տեսակետին ևս ու գտնում ենք, որ ներկայումս զտված սննդամթերքների որոշ տեսակների արտադրությունը չի կարելի բացասական համարել, քանի որ գործնականում բազմազան, խառը սննդի օգտագործումը որոշ չափով վերացնում է հիշյալ մթերքների գործածության հետ կապված թերությունը:

Նույնն էլ պետք է ասել սննդահումքի ապավիտամինացման մասին, երբ այն տեխնիկական վերամշակման է ենթարկվում: Վիտամինների մասսայական, արդյունաբերական արտադրության բնագավառում ձեռք բերած հաջողությունները արդի հասարակությանը հնարավորություն են տալիս պատշաճ կերպով կարգավորելու սընդահումքին տեխնիկայի պատճառած տրավման (ալրի, բուսական հումքի ապավիտամինացում և այլն): Միաժամանակ պետք է նշել, որ սինթետիկ վիտամիններով սննդամթերքների հարստացումը հնարավոր է հասարակական սնունդը գիտական սկզբունքներով կազմակերպելու պայմաններում:

Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՈՎ

Երևանի բժշկական ինստիտուտի սննդի հիգիենայի կաֆեդրայի վարիչ, դոցենտ

# ԽԻԶԱԽՆԵՐԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ*

Վերջին տարիներում Անդրկովկասի երեք ռեսպուբլիկաներում զգալի թվով գրքեր, բրոշյուրներ և գիտական հոդվածներ են հրապարակվել Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի կոմերիտմիության պատմության տարբեր էտապների վերաբերյալ: Սակայն մինչև այժմ հրապարակի վրա դեռևս չկար Անդրկովկասի կոմերիտմիության պատմության որևէ շրջանի վերաբերյալ ամփոփ մի աշխատություն:

Այս տարի Հայկական ՍՍՌ գիտությունների ակադեմիայի հրատարակչությունը ռուսերեն լեզվով հրատարակել է Հ. Ա. Ավետիսյանի՝ Անդրկովկասի կոմերիտմիությունը սովետական կարգերի հաղթանակի և ամրապնդման համար մղված պայքարում (1917—1921 թթ.), ստվարածավալ աշխատությունը, որի հեղինակը փորձ է արել հանգամանորեն շարադրելու Անդրկովկասի կոմերիտմիության նշված ժամանակաշրջանի պատմությունը: Ակներև է, որ հեղինակը բարեխղճորեն ուսումնասիրել է արխիվներում և հրապարակի վրա եղած բազմազան աղբյուրներ:

Գրախոսվող գիրքը բաղկացած է նախաբանից և չորս գլուխներից, վերջաբանից, ծանոթագրություններից և անվանացանկից:

Առաջին գլխում լուսաբանվում են 1917—1918 թվականներին Անդրկովկասում ծագած երիտասարդական ռևոլյուցիոն շարժումները, որոնք մի շարք կողմերով սերտորեն առնչվում էին Ռուսաստանի երիտասարդական ռևոլյուցիոն կազմակերպությունների գործունեության հետ: Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից հետո, կարճ ժամանակամիջոցում Բաքվում, Թիֆլիսում, Երևանում, Քութայիսում, Էջմիածնում, Բաթումիում, Ղարաքիլիսայում և այլուր առաջացան երիտասարդական, աշակերտական կազմակերպություններ, որոնք իրենց գործունեությամբ դիմակայում էին հին կարգերին:

Սակայն այդ շարժման սկզբից ևեթ երկրամասի բուրժուա-նացիոնալիստական պարտիաները ջանքեր չխնայեցին իրենց բանակում հավաքագրելու երիտասարդական ուժերին: Բոլշևիկները ևս համառ պայքար ծավալեցին երիտասարդության ռևոլյուցիոն կորովը ուղղելու աշխատավորության վերջնական ազատագրման գործին:

Պարտիայի վարած զինված ապստամբության միջոցով իշխանությունը վերցնելու կուրսը, երիտասարդական ռևոլյուցիոն շարժման նոր փուլի սկիզբը դարձավ: Գնալով Անդրկովկասում բորբոքվեց ռևոլյուցիոն կրակը, որին ակտիվորեն մասնակցում էր երիտասարդությունը: Հետզհետե երիտասարդության շրջանում ուժեղացրին իրենց գործունեությունը Երևանի, Ալեքսանդրապոլի, Ղարաքիլիսայի, Նոր Բայազեդի և Հայաստանի այլ վայրերի բոլշևիկյան կազմակերպությունները: Ստեղծվեցին երիտասարդական խմբեր Հաղպատ, Որնակ և այլ գյուղերում, Սանահին ու Ախթալա երկաթուղային կայարաններում:

Որպես անմիջական արձագանք Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի, Բաքվում հոկտեմբերի 31-ին հայտարարվեց սովետական իշխանություն. հենց այս հաղթանակն էլ նպաստավոր պայմաններ ստեղծեց Բաքվում և նրա շրջակայքում արագորեն ծավալելու երիտասարդական ռևոլյուցիոն շարժումը: 1918 թվականի մարտին բացվեց Բաքվի բանվոր-երիտասարդության ինտերնացիոնալիստական միության համաքաղաքային կոնֆերանսը, որը նոր խնդիրներ առաջադրեց երիտասարդական կազմակերպություններին:

Սկզբից ևեթ Անդրկովկասի երիտասարդությունը ջերմորեն ընդունեց մեծ Հոկտեմբերի ազատարար լուրը: Նրա ազդեցությամբ ուժեղացավ նաև Սպարտակի գործունեությունը Քութաիսիում: Թիֆլիսում ստեղծվեց Սպարտակյան նոր կազմակերպություն իր շրջանային ճյուղավորումներով: Եվ վերջապես 1917 թվականի դեկտեմբերին Ղ. Ղուկասյանի և Ա. Խանջյանի գլխավորությամբ Երևանում ստեղծվեց աշակերտական

* Г. А. Аветисян «Комсомол Закавказья в борьбе за победу и упрочение Советской власти», Ереван, 1964 г., стр. 487.



մարքսիստական միություն, որն ուներ իր կանոնադրությունն ու ծրագիրը և ծավալուն աշխատանք էր տանում երիտասարդության շրջանում:

Աշխատության երկրորդ գլուխն ընդգրկում է Անդրկովկասի կոմունիստական երիտասարդական շարժման վիճակը 1917 թվականի ընթացքում: Հեղինակը բավականին հանգամանորեն շարադրում է Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո երիտասարդության կյանքում տեղի ունեցած բնորոշ տեղաշարժերը:

1918 թվականի հոկտեմբերի 29-ին բացվեց Համառուսաստանյան բանվորա-գյուղացիական երիտասարդական միությունների առաջին համագումարը, որը կարևոր իրադարձություն էր մեր երկրի երիտասարդության կյանքում: Պատմական այդ ակտով դրվեց մեկ միասնական կոմունիստական երիտասարդական միության հիմքը: Դրանից հետո ինչպես Ռուսաստանում, այնպես էլ Անդրկովկասում, ավելի աշխուժացան երիտասարդական կազմակերպությունները, որոնց համար ուղենիշ հանդիսացավ կոմունիստական պարտիայի 8-րդ համագումարի՝ Երիտասարդության շրջանում տարվող աշխատանքի մասին որոշումը և այն հրահանգը, որում հստակ կերպով սահմանված է մեր պարտիայի և կոմերիտմիության փոխհարաբերության հարցը:

1919 թվականի մարտի 31-ին կայացավ Թիֆլիսի Սպարտակ կազմակերպության համաքաղաքային կոնֆերենցիան, որին որպես պատգամավոր Հայաստանից մասնակցում էր Ղ. Ղուկասյանը:

Վերոհիշյալ ժամանակաշրջանում Անդրկովկասի մի շարք վայրերում կյանքի կոչված երիտասարդական ռևոլյուցիոն կազմակերպություններն սկսեցին ձևավորվել կազմակերպորեն: Երևանում ևս 1919 թվականի ապրիլի վերջին Ղ. Ղուկասյանի, Ա. Խանջյանի, Ա. Բուդաղյանի և այլոց ջանքերով հիմնադրվեց Սպարտակ կոմունիստական երիտասարդական կազմակերպությունը, որը 1919 թվականի մայիսի 1-ին հրապարակեց իր Սպարտակ թերթի առաջին համարը: Շատ չուտով այդ կազմակերպության ճյուղերն ստեղծվեցին Նոր Բայազեդում, Ալեքսանդրապոլում, Դիլիջանում, Աշտարակում, Ղարսում և մի քանի այլ վայրերում:

Այնուհետև հեղինակը մանրամասն շարադրում է Բաքվի երիտասարդական կազմակերպությունների 1919 թվականին ծավալած գործունեությունը: Այստեղ կազմակերպության ակտիվ գործիչներն էին՝ Օ. Շատունովսկայան, Ս. Աղամիրովը, Բ. Բարխաշովը և ուրիշներ: 1919 թվականի մայիսի 25-ին կայացավ Բաքվի և նրա շրջանների բանվոր երիտասարդության ինտերնացիոնալիստական միության կոնֆերենցիան, որն ընտրեց կենտրոնական կոմիտե: Այսպիսով, գրեթե միաժամանակ Անդրկովկասում առաջացան ու ձևավորվեցին երիտասարդական կոմունիստական կազմակերպություններ:

Երիտասարդական կոմունիստական կազմակերպությունները ձևավորվեցին բուրժուա-նացիոնալիստական պարտիաների տիրապետության մռայլ պայմաններում: Այդ պարտիաները դաժան պայքար էին մղում այն ամենի դեմ, ինչ կոմունիստական էր, առաջավոր և ռևոլյուցիոն: Նրանք փորձում էին տեռորի օգնությամբ կասեցնել նոր կյանքի ընթացքը: 1919 թվականի օգոստոսին բանտարկվեցին Երևանի Սպարտակ կազմակերպության գրեթե բոլոր անդամները:

Անդրկովկասում երիտասարդական կոմունիստական միասնական կազմակերպության փաստական հիմնադրումը տեղի ունեցավ 1919 թվականի սեպտեմբերի 22-ին Բաքվում հրավիրված երիտասարդական կազմակերպությունների կոնֆերանսում: Այստեղ առաջին անգամ ընտրվեց Ռուսաստանի կոմունիստական երիտասարդական միության Անդրկովկասյան մարզային կոմիտե և վերստուգիչ հանձնաժողով:

Աշխատության երրորդ գլխում հեղինակը մեզ ծանոթացնում է 1920—21 թթ. Անդրկովկասում սովետական կարգերի հաստատման համար կոմերիտմիության մղած հերոսական պայքարին: Պարտիական կազմակերպությունների գլխավորությամբ Անդրկովկասի ռևոլյուցիոն երիտասարդությունը փայլուն էջեր գրեց սովետների հաղթանակի տարեգրքում: Ադրբեջանում, Վրաստանում, Հայաստանում երիտասարդական կոմունիստական կազմակերպություններն ակտիվորեն մասնակցեցին այն պայքարին, որն աշխատավորությունը մղեց նացիոնալիստական-բուրժուական կարգերի տապալման նպատակով: Այդ պայքարում կոմերիտմիությունը շատ զոհեր տվեց, բայց և կոփվեց երիտասարդության ռևոլյուցիոն կամքը և նրա ստեղծագործական ոգին:

1920 թվականի օգոստոսի 25-ին կայացավ Վրաստանի կոմերիտմիության առաջին համագումարը: Սակայն մենշևիկյան կառավարության հրամանով ընդհատվեցին համագումարի նիստերը և բանտարկվեցին նրա ակտիվ գործիչները (Բ. Ձնելաձե և ուրիշներ), որոնք մեղադրվում էին մենշևիկյան ռեժիմի դեմ զինված ապստամբություն հրահրելու մեջ:

Անդրկովկասի կոմերիտմիության համար կարևոր իրադարձություն էր 1920 թ. սեպտեմբերին կայացած Արևելքի երիտասարդության առաջին համագումարը, և դրանից հետո կայացած Ռուսաստանի կոմունիստական երիտասարդության միության երրորդ համագումարը, որտեղ ծրագրային ճառով հանդես եկավ Վ. Ի. Լենինը: Հեղինակը պատշաճ լրջությամբ դրվատում է այդ

# ՇՈՂԱՐՁԱԿ ԿՅԱՆՔ

Գրքերն էլ մարդկանց նման իրենց բախտն ունեն։ Գրքեր կան, որոնք տարիներով մնում են գրադարակների վրա և նրանց կողքով անցնում են բազմահազար հետաքրքրասեր ընթերցողներ։ Ինչո՞ւ։ Հավանաբար այն պատճառով, որ նրանց էջերում չի տրոփում մարդկային կենդանի սիրտը, կամ մարախլապատ է բանականության լուսատու ջահը։

Բայց կան գրքեր, որոնք օժտված են հոգեկան մագնիսականությամբ և գրավում են ընթերցողին առաջին իսկ հայացքից։ Իսկ ընթերցումից հետո և հաճախ մինչև կյանքի վերջը դուք ընկերանում եք նրանց հեղինակներին և հաճախ մնում նրանց կախարդական հրապույրի ազդեցության տակ։ Այդպիսին է և վերջերս Մոսկվայում լույս տեսած Ա. Մ. Իտկինայի՝ Ռևոլյուցիոնեr, fiրապարակախոս, դիվանագետ գրքույկը[1], որի մասին կխոսենք ստորև։

Ցարական գեներալի դուստր Ալեքսանդրա Միխայլովնա Դոմոնտովիչին չէին հրապուրում հարստությունը, շքայլանքն ու փառքը։ Պատանի հասակից նրան հուզում էր թշվառների վիճակը և կեղեքվողների ցավը։ Նրա չափից ավելի նրբազգաց հոգին լի էր կարեկցանքով բոլոր տառապյալների հանդեպ։ Այդ էր պատճառը, որ նա ընտրեց ռևոլյուցիոների փշոտ ուղին։

Դեռ պատանեկան տարիներին նա մասնակցում էր իրենց տանը կազմակերպվող հետաքրքրական զրույցներին, որոնք նվիրված էին գրականությանը, երաժշտությանը, թատրոնին. ընթերցում էր տարբեր լեզուներով գրքեր, ամսագրեր։ Խուսափում էր իրենց տանը կազմակերպվող խնջույքներից. նրա մտերիմ ընկերներն էին ծառաները. սիրում էր ժամերով լսել նրանց պատմությունններն ու հեքիաթները։

Մարիա Իվանովնա Ստրախովան ոչ միայն նրա առաջին ուսուցչուհին էր, այլև այն անձնավորությունը, որը սերմանում և զարգացնում էր նրա հոգում ատելությունն անարդարության և անհավասարության նկատմամբ։

Դեռևս ինը տարեկան հասակում ականատես լինելով «Նարոդնայա վոլյայի» ղեկավարներ՝ Սոֆյա Պերովսկայայի, Անդրեյ Ժելյաբովի, Նիկոլայ Կիբալչիչի և մյուսների ահասարսուռ մահապատժին, փոքրիկ Շուրան վերջնականապես ատեց տիրող կարգերը։

Նա ոգևորվում էր Վիկտոր Հյուգոյի վեպերի հերոսներով։ Նրա երևակայությունը բորբոքում էին Թշվառների կրքոտ էջերը, Փարիզի ռևոլյուցիոն ռոմանտիկայով ներծծված պատկերները, բարիկադների վրա հանուն ազատության մարտընչող հերոս ժողովուրդը, Ժորժ Զանդի, Հենրիկ Իբսենի ստեղծագործություններում կերտված կանանց կերպարները, որոնք կանգնում են ինքնուրույն կյանքի ճանապարհին, ըմբոստանալով հասարակության նախապաշարումների դեմ։ Այս ամենը նոր հովերով էին օրորում խոհուն և կենսատենչ Ալեքսանդրային։

Հաճախ էր լինում նա Ֆինլանդիայում՝ պապի մոտ, որն ուներ հարուստ գրադարան, ուր առանց ընտրության կարդում էր ռոմաններ, ճանապարհորդական նկարագրություններ, ռուս և արտասահմանյան կլասիկներին, պատմական և քաղաքական գրականություն։

Ավարտելով գիմնազիան, տասնվեցամյա Շուրան ստացավ ուսուցչի իրավունք։ «Նա իր գեղեցկությամբ թովիչ էր. մուգ հոնքերի կամարի տակ կապուտակյա շողարձակ աչքեր, շագանակագույն մազեր, նրբանուրբ շուրթեր, գերող և սլացիկ կազմվածք։ Նա ուներ հստակ և հաճելի ձայն։ Մարդկանց նկատմամբ նրա վերաբերմունքը պարզ էր, անմիջական»։

Եվ ահա Միխայիլ Դոմոնտովիչն իր 18-ամյա Ալեքսանդրայի հետ գալիս է Թիֆլիս։ Այստեղ էլ Ալեքսանդրա Միխայլովնան մտերմական կապեր է հաստատում աքսորականի որդի, երիտասարդ սպա Վլադիմիր Կոլոնտայի հետ, որին ծանոթ էր դեռ Պետերբուրգից։ Այդ 1891 թվականն էր,— հիշում է հետագայում Ալեքսանդրա Միխայլովնան։— Անհոգ երիտասարդության շրջապատում Կոլոնտայն աչքի էր ընկնում ո՛չ միայն ուրախ կատակների, զվարճալիքների և խաղերի հնարամտությամբ, ո՛չ միայն նրանով, որ կարող էր շատ լավ մազուրկա պարել, այլ նրանով, որ ես կարող էի նրա հետ խոսել ինձ համար «ամենակարևորի» մասին. ինչպե՞ս պետք է ապրել, ի՞նչ պետք է անել, որպեսզի ռուս ժողովուրդն ազատ լինի։ Այդ հարցերն այնկոծում էին ինձ, ես փնտրում էի կյանքի ճանապարհը։ Կոլոնտայը պատմում էր աքսորում անցրած իր մանկության, ցարական ոստիկանության հալածանքների մասին։ Ես ագահաբար լսում էի։ Ես սիրեցի նրա մոր ու քրոջ աշխատանքով ծանրաբեռնված կյանքը։ Ես կամենում էի ինքս աշխատել և ոչ թե պարահանդեսներ ու թատրոններ գնալ։ Այդ ամենը վերջացավ նրանով, որ մենք բուռն սիրեցինք իրար։



Սակայն Շուրայի ծնողներն արգելեցին նրա և Վլադիմիրի ամուսնությունը։ Եվ այդ էր պատճառը, որ նրան ուղարկեցին Բեռլին՝ քրոջ մոտ։ Այստեղ նա առաջին անգամ տեսավ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմունիստական պարտիայի մանիֆեստը։ Մարքսի անունը նա բազմիցս լսել էր Ռուսաստանում։ Հափշտակված նա կարդաց այդ երկը։ Դրանից հետո նա ընթերցեց Ֆ. Էնգելսի՝ Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը։ Այս գրքով էլ սկսվեց նրա նոր, մարքսիստական կրթությունը։ Որոշ ժամանակ հետո գալով Փարիզ, նա սկսեց բնագրերով կարդալ սոցիալիստ-ուտոպիստներ՝ Շ. Ֆուրիեի և Սեն-Սիմոնի երկերը, Ֆրանսիայի ռևոլյուցիոն պատմությունը։ Միաժամանակ հաբազատներից գաղտնի մասնակցում էր սոցիալիստների հավաքներին։ Որքա՜ն նոր և ճշմարիտ միտք է արտահայտում Շ. Ֆուրիեն, երբ ընդգծում էր, որ հասարակական պրոգրեսի չափանիշը կանանց ազատագրման աստիճանն է։ Այս թեզը նա հետագայում պետք է պրոպագանդեր իր աշխատություններում։

Արտասահմանից վերադառնալով հայրենիք, նա գիշերները լուսացնում էր քաղաքական գրքեր կարդալով։ Դեռ ավելին, նա հաճախում էր մասնավոր կուրսեր, ուր սիրված էր կուրսանտներից։ Երկու չարիքից պետք է ընտրել փոքրագույնը, հաճախ ասում էր նրա մայրը. ավելի լավ է ամուսնանա Կոլոնտայի հետ, քան թե հրապուրվի վտանգավոր գաղափարներով։

Ձեռք բերելով ռևոլյուցիոն գործունեության փորձ, Ալեքսանդրա Միխայլովնան ակտիվ մասնակցում էր հասարակական-քաղաքական պայքարին, որում նա հոգեկան հանգիստ էր գտնում։

1898 թվականին նա մեկնեց Շվեյցարիա, թեև նրան շատ ծանր էր բաժանվել սիրելի որդուց և ամուսնուց։ Երբ Ալեքսանդրա Միխայլովնան ներգրավվեց ռևոլյուցիոն շարժման հորձանուտը, խորապես զգաց իր և ամուսնու գաղափարական հակասությունը։ Եվ ահա հոգեկան խոր տառապանքներից հետո նրանք անջատվեցին։ Սակայն այս անջատման ընթացքում նրա հոգեկան

---

[1] *А. М. Иткина,* Революционер, трибун, дипломат, М., 1964 г., стр. 127.

ֆյումտերը ասել է. Շվեդիայի համար երջանկություն է, որ պատերազմի տարիներին տիկին Կոլոնտայն էր Սովետական Միության ներկայացուցիչը։ Այո, Ա. Կոլոնտայը որպես աշխարհի առաջին և ամենատաղանդավոր դիվանագետը Եվրոպա տարավ սոցիալիստական աշխարհի ամենահաղթ դիվանագիտության ճկունությունը, նրա անխոցելի տակտը և գաղափարական համոզվածությունը։

Ռևոլյուցիային սիրահարված Ա. Մ. Կոլոնտայը կոմունիզմի անվեհեր մարտիկն էր, որն իր աշխատություններում հատկապես ընդգծում էր այն միտքը, թե սերը մեծագույն ստեղծագործական ուժ է, որը հարստացնում է մարդու հոգեկան աշխարհը և մարդկայնացնում է նրան։ Սակայն մեծագույն կրքոտությամբ պրոպագանդելով նոր մարդու սիրո և ընտանեկան հարաբերությունների գաղափարը, նա որոշ ժամանակ թույլ տվեց սխալ, ակամա դառնալով, այսպես կոչված, «ազատ սիրո» քարոզողը մեզ մոտ։ Սակայն Լենինի՝ Կ. Ցետկինի հետ այդ թեմայի շուրջ ունեցած զգաստացնող և համոզիչ զրույցից հետո, նա կանգնեց ճիշտ ուղու վրա, հրաժարվելով սիրո բուրժուական ըմբռնումից։

Նրա կյանքի բոլոր էջերը լի են վառ սխրանքներով, միահյուսված բոցավառ հրապարակախոսի անսպառ ջանքերով, որոնցից մեզ է հառնում կենսախինդ, ուրախ, միշտ դեպի պայծառ ապագան նայող նրա լուսավառ հայացքը։

Մահից դեռ երկու օր առաջ նա լի էր ստեղծագործական տենչով։ «Աշխարհը շարժվում է, նոր կյանքն է ստեղծվում, և կյանքը կանգ չի առնում։ Ես սիրում եմ ոչ միայն նայել իմ անցած ուղուն, այլև ընդառաջ գնալ գեղեցիկ ապագային, որտեղ բոլորը կապրեն երջանիկ»։

Ա. Իտկինայի այս գրքույկը գրված է գրական պատշաճ վարպետությամբ, Ա. Կոլոնտայի նկատմամբ տածած ջերմագին սիրով և նրա ապրած մեծ իրադարձությունների դարաշրջանի խոր գիտակի շնորհքով։ Հայ ընթերցողը անհամբեր սպասում է այս հրապուրիչ գրքույկի թարգմանությանը։

Ձ. ԱՍԱՏՐՅԱՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.։

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24

ՎՖ 06482 Պատվեր 3134 Տիրաժ 8550 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 30/X 1964 թ.։

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյանի փ. № 51։

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՆԱՎԹԱՅԻՆ ԲԾԵՐԻ ԴԵՄ

Գերմանական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում մշակվել է ծովի կամ գետի ջրերի մակերեսից նավթը հեռացնելու եղանակ։ Կավանման հողի, ցեմենտի և քիմիկատների հատուկ խառնուրդը ցըրվում է ջրի մակերեսին։ Լողացող նավթը կպչում է գուղձերին, ցեմենտը նավթի հետ արագորեն խորասուզվում, և ջուրը մաքրվում է։

## ՀԱԲԵՐ ԾԽԵԼՈՒ ԴԵՄ

Հատուկ հաբերը թույլ են տալիս ազատվելու ծխելու սովորությունից։ Այդ դեղամիջոցը իր մեջ պարունակում է այնպիսի նյութեր, որոնք շատ նման են ծխախոտի մեջ եղածներին։ Սահմանափակ դոզայով այդ նյութերը անվնաս են։ Այդ դեղամիջոցը առաջ է բերում զզվանք ծխախոտի և ծխախոտի ծխի նկատմամբ։ Հաբերը փորձարկվել են հարյուր ծխողների վրա, որոնցից մոտ 70-ը ծխելը թողել են։

## ՈՐՏԵ՞Ղ Է ՄԻԱՑՈՒՄԸ

Ֆիզիկայի ինստիտուտում գիտնականները նախագծել են ավտոմատ, որը ազդանշան է տալիս հեռախոսալարերի մեկուսացման վնասվածքների մասին։ Սարքն աշխատում է սառը կատոդի լամպերով և տրանզիստորներով։ Ձայնային և լուսային ազդանշանները այդ սարքը հաղորդում է նախքան մեկուսացման քայքայվելը։ Այն ցույց է տալիս, թե 20 լարերից որն է կարիք զգում նորոգման (Բուլղարիա)։

## ՏԻԵԶԵՐՔԻՆ ԽԱՆԳԱՐՈՒՄ Է ԿՈՍՄԵՏԻԿԱՆ

Որոշ արտասահմանյան լաբորատորիաներում, որոնք ստեղծված են հրթիռային և ավիացիոն ձեռնարկություններում, աշխատակցուհիներին արգելված է դիմափոշի գործածել և շպարվել։ Այդ լաբորատորիաներում դիմափոշու մանրագույն մասնիկների առկայությունը խանգարում է տեղադրված սարքերի ճշգրիտ աշխատանքին։

## ԷԼԵԿՏՐԱՔԱՐՇ ՊԼԱՍՏԻԿԱՅԻՑ

Պլզենի Վ. Ի. Լենինի անվան մեքենաշինական գործարանում պատրաստվել է վեց առնիանոց փոփոխական հոսանքի էլեկտրաքարշի նախատիպը։ Էլեկտրաքարշը հագեցված է փոփոխական հոսանքի կրեմնիումի համուղղիչներով։ Նրա առավելագույն արագությունը ժամում 160 կմ է։ Էլեկտրաքարշի իրանը պատրաստված է շերտավոր պլաստիկայից (Չեխոսլովակիա)։

## ԱՍՏՂԱԴԻՏԱՐԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԾԻ ՄՈՏ

Բանդունգի մոտակայքում գտնվում է Բոսշայի աստղադիտարանը, որը գտնվում է հասարակածից 7 աստիճան հարավ։ Այն չափազանց հարմար է համաստեղությունները և աստղային կուտակումները, որոնք վատ են դիտվում հյուսիսային կիսագնդում, ուսումնասիրելու համար։ Աստղադիտարանը սարքավորված է երկակի հեռադիտակներով, որոնց մի մասը նախատեսված է վիզուալ դիտումների, իսկ մյուս մասը՝ լուսանկարելու համար (Ինդոնեզիա)։

## ԿՈՄԲԻՆԱՑՎԱԾ ՇԱՐՔԱՑԱՆ

Կոմբինացված պնևմատիկ շարքացանը նախատեսված է հեռաշար կուլտուրաների համար և հաջողությամբ կիրառվում է եգիպտացորենի, լոբու, սոյայի, շաքարի ճակնդեղի սերմերը ցանելիս։ Մեքենան կարող է կատարել հարթ տեղանքում վեց շարք ցանքս, իսկ խորդուբորդ վայրերում՝ չորս շարք։ Շարքացանն ապահովում է սերմի հավասարաչափ բաշխումը, նրա արագությունը մեկ ժամում 12 կմ է (Ռումինիա)։

## ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ

Թանկագին ընկերնե՛ր.

Շատ կարճ ժամանակ է մեզ բաժանում այն օրվանից, երբ դուք ձեր սեղանի վրա կունենաք մեր ամսագրի 1965 թվականի առաջին համարը:

Ինչպիսի՞ն կուզեիք լիներ այն:

Ամսագրում քննարկված շատ հարցեր թելադրված են ձեր կողմից: Նրա էջերում տեղ են գտել ձեր առաջարկությունններն ու նամակները, բանավեճերին մասնակցել են ձեզնից շատերը:

Համոզված ենք, որ գալիք տարում ևս ձեր օգնությամբ ամսագիրը կդառնա ավելի հետաքրքրական ու բովանդակալից, առավել ցայտուն ու բազմակողմանի կլուսաբանի մեր կյանքի հրատապ հարցերը:

Ամսագրի խմբագրության կոլեկտիվը միայն ձեր մասնակցությամբ և օգնությամբ ի վիճակի կլինի ավելի օգտակար և այժմեական պլան կազմել 1965 թվականի համար: Այդ նպատակով և սպասում ենք ձեր խոհերին ու առաջարկներին՝ տպագրվող նյութերի վերաբերյալ: Ի՞նչ կցանկանայիք կարդալ ամսագրի գալիք տարվա համարներում: Ո՞ր բաժիններն ու խորագրերը կուզեիք պահպանվեն: Ինչպիսի թեմաներով հոդվածներ, ակնարկներ, հրապարակումներ կցանկանայիք կարդալ: Մեր ո՞ր հեղինակներին կուզենայիք հաճախակի հանդիպել ամսագրի էջերում: Ի՞նչ կառաջարկեիք նոր մարդու գաղափարական վարգացման վերաբերյալ:

Սպասում ենք ձեր նամակներին:

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ